# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՓԵՏՐՎԱՐ 1978

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



**СТАТЬИ**



**ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА**



**ВОПРОСЫ ЭКОНОМИКИ**



**ПРОБЛЕМЫ ВОСПИТАНИЯ НОВОГО ЧЕЛОВЕКА**



**ОБЗОР ПЕЧАТИ**







# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ, ՀԱՄԿԽ-Ի ԵՎ ՀԱՄԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ
# Ն Ա Մ Ա Կ Ը

**Կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, Սովետական Միության աշխատավորներին**

## 1978 ԹՎԱԿԱՆԻ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՈՒ ԳԵՐԱԿԱՏԱՐՄԱՆ ՀԱՄԱՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ ԾԱՎԱԼԵԼՈՒ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐՆ ՈՒԺԵՂԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Մեր հայրենիքը թևակոխեց իր հերոսական հեղափոխական պատմության յոթերորդ տասնամյակը։ Մեծ Հոկտեմբերի 60-ամյակը ակնառու իրադարձություն եղավ երկրի, ամբողջ առաջադեմ մարդկության կյանքում։ Ընդունվեց ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը՝ զարգացած սոցիալիզմի Սահմանադրությունը, որի մեջ վավերագրված են սովետական ժողովրդի ակնառու նվաճումները, հետագա զարգացում ստացել ժողովրդապետության լենինյան սկզբունքները։*

*Հաջողությամբ իրականացվում են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները։ Հնգամյակի առաջին երկու տարում մեր երկիրը բոլոր ուղղություններով առաջ շարժվեց։ Ազգային եկամուտը ավելացավ 9 տոկոսով, արդյունաբերական արտադրության աճը կազմեց 10,8 տոկոս։ Հացահատիկի տարեկան միջին բերքը հասավ 209,6 միլիոն տոննայի՝ իններորդ հնգամյակի 181,6 միլիոն տոննայի դիմաց։ Ավելի լրիվ են բավարարվում բնակչության նյութական և հոգևոր պահանջմունքները, բարելավվել են գրեթե 22 միլիոն մարդու բնակարանային պայմանները, կառուցվել են շատ դպրոցներ, մանկական, բժշկական և կուլտուր-կենցաղային հիմնարկություններ։*

*Է՛լ ավելի է բարձրացել Սովետական Միության միջազգային հեղինակությունը։ Ամրապնդվել են համաշխարհային սոցիալիզմի դիրքերը, որը ավելի ու ավելի վառ և համոզիչ կերպով է բացահայտում իր մեծ առավելությունները։*

*Ձեռք բերված հաջողությունները կոմունիստական կուսակցության լենին-*

յան քաղաքականության հետևողական իրականացման, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության անձնվեր աշխատանքի արգասիքն են:

Ընկերնե՛ր: Սկսվել է տասներորդ հնգամյակի երրորդ տարին: ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը հավանություն տվեց և ՍՍՀՄ Գերագույն սովետը հաստատեց տնտեսական ու սոցիալական զարգացման 1978 թվականի պետական պլանը: Պլանը նախատեսում է էկոնոմիկայի նշանակալի աճ, ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացում, երկրի պաշտպանունակության ամրապնդում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթում տրված է հնգամյակի երկու տարում ժողովրդական տնտեսության զարգացման խոր վերլուծությունը, նշված են թերությունները վերացնելու և նեղ տեղերը հաղթահարելու ուղիները, սահմանված են կուսակցության և ամբողջ ժողովրդի հերթական խնդիրները:

Առաջադրված խնդիրները լուծելու, 1978 թվականի պլանը, ամբողջությամբ վերցրած, տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար մենք ունենք բոլոր պայմանները՝ հզոր ինդուստրիա և խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն, գիտատեխնիկական հսկայական պոտենցիալ, պատրաստված կադրեր: Ժողովրդական տնտեսությունն ունի նշանակալի ռեզերվներ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը դիմում են կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, բոլոր աշխատավորներին՝ կոչ անելով է՛լ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, ավելի ակտիվորեն ներգրավվել արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքների հասնելու համար մղվող համաժողովրդական պայքարի մեջ:

Եկեք, ընկերներ, տնտեսաբար նայենք, թե ինչպես ավելի լավ կազմակերպենք աշխատանքը նոր տարում, ինչպես ավելի լրիվ օգտագործենք ռեզերվները, դրա համար ինչ պետք է անի յուրաքանչյուրը իր աշխատատեղում, արտադրամասում, կառույցում, դաշտում, ֆերմայում, կոնստրուկտորական բյուրոյում:

Գլխավորն է՝ տարվա առաջին օրերից ապահովել աշխատանքի ռիտմը, պետական պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարումը յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, շրջանի, քաղաքի, մարզի, երկրամասի և հանրապետության կողմից: Չէ՞ որ քաջ հայտնի է, որ եթե պլանը վիժեցրել է թեկուզ մի ձեռնարկություն, եթե արտադրանքը չի մատակարարվել պահանջված անվանացանկով և տեսականիով, ապա դա կարող է խափանումներ առաջացնել հարակից ձեռնարկությունների աշխատանքում և, վերջին հաշվով, հասցնել մեծ ու անփոխհատուցելի կորուստների: Այստեղ անելիքներ շատ կան: Դեռևս ոչ բոլոր աշխատողներն են կատարում հերթափոխային առաջադրանքները: Հնգամյակի առաջին երկու տարում արդյունաբերության մեջ յուրաքանչյուր տասնմեկերորդ ձեռնարկություն չի կատարել իրացման պլանը, նրանք պակաս են տվել 4 միլիարդ ռուբլու արտադրանք: Միշտ չէ, որ ապահովվում է արտադրության ռիթմիկությունը:

Փորձը համոզում է, որ կարելի է աշխատել առանց ետ մնացողների: Այդ բանին հասել են մասնավորապես Ռոստովի մարզում, որտեղ չկան արտադրանքի իրացման, նոր տեխնիկայի ներդրման պլանները չկատարող ձեռնարկություններ: Ռոստովցիները կանգ չեն առնում ձեռք բերվածի վրա և ձգտում են չունենալ ոչ միայն ետ մնացող ձեռնարկություններ, այլև բրիգադներ, տեղամասեր ու արտադրամասեր: Երկրում նման օրինակները ավելի ու ավելի շատանում են:

Ուրախալի է, որ նախատեսված պլանների գերակատարման շարժումը



առավել լայն թափ է ստանում: Հոբելյանական տարում ավելի քան 7,5 միլիոն աշխատավորներ, արտադրամասերի, տեղամասերի, հերթափոխությունների և բրիգադների 150 հազար կոլեկտիվներ, մոտավորապես հինգ հազար ձեռնարկություններ մինչև 1977 թվականի նոյեմբերի 7-ը կատարեցին հնգամյակի երկու տարվա առաջադրանքները: Մրցության առաջավորների թվումն են մետալուրգներ Մ. Իլյինը, Պ. Սատանինը և Ի. Տերեշչենկոն, ածխահատներ Ա. Կոլեսնիկովը, Գ. Սմիռնովը և Մ. Ջիխը, հանքագործ Ն. Կուլեշը, դարբին Դ. Կարցևը, ատամնահատ Ա. Խրամցովը, խառատ Ա. Ռեկյավիչուսը, հորատման վարպետ Գ. Լևինը, ֆլոտատոր Ն. Մուլակաևան, շինարարներ Ն. Զլոբինը և Վ. Սերիկովը, վարորդ Ն. Միրչևը, ջուլհակուհիներ Վ. Գոլուբևան և Վ. Պլետնյովան, հողագործներ Մ. Կլեպիկովը, Ն. Պերևերզևան և Յու. Պիտրան, բամբակագործ Թ. Ախունովան, ճակնդեղագործ Ս. Վիշտակը, կարտոֆիլագործ Ն. Շերստնևը, անասնապահներ Լ. Պեյպսը և Ա. Գրիգորևը և իրենց գործի հազարավոր այլ հիանալի վարպետներ:

Փառք ու պատիվ առաջավոր կոլեկտիվներին, աշխատանքի հերոսներին, արտադրության նորարարներին:

Մոսկվայի առաջավոր կոլեկտիվները հանդես են եկել նախաձեռնությամբ՝ հնգամյակի երեք տարվա առաջադրանքները կատարել մինչև ՍՍՀՄ նոր Սահմանադրության առաջին տարեդարձը: 1978 թվականի համար բարձր պարտավորություններ են ստանձնել անվանի ածխահատները, Նովոլիպեցկի մետալուրգները, Իվանովոյի տեքստիլագործները և շատ ուրիշներ:

Առաջավոր կոլեկտիվների և աշխատողների, սոցիալիստական մրցության դրոշակակիրների, աշխատանքի նոր, առավել առաջավոր ձևերի ու մեթոդների հեղինակների հայրենասիրական նախաձեռնությունը արժանի է բարձր գնահատականի ու պաշտպանության, իսկ նրանց փորձը՝ լայն տարածման:

Ոչ մի ետ մնացող կողքիդ՝ ահա կոլեկտիվ աշխատանքի մարտական նշանաբանը, ահա մեր ժամանակի թելադրանքը:

Ակտիվորեն ներգրավվել արդյունավետության և որակի համար մղվող համաժողովրդական պայքարի մեջ՝ նշանակում է օգտագործել բոլոր հնարավորությունները աշխատանքի ամենաբարձր արտադրողականության հասնելու համար: Աշխատանքի արտադրողականության, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման հարցերի կոմպլեքսային լուծման արժեքավոր փորձ է կուտակել, օրինակ, Վոլգյան ավտոմոբիլի գործարանի կոլեկտիվը: Այստեղ լայնորեն կիրառվում են տեխնիկապես հիմնավորված արտադրական նորմաներ, աշխատանքի կազմակերպման բրիգադային մեթոդը, հերթափոխային առաջադրանքների կատարման և ավտոմոբիլների ռիթմիկ թողարկման համար նյութական ու բարոյական խրախուսման արդյունավետ սիստեմ: Մշտապես բարելավվում են բանվորների աշխատանքի պայմանները: Այս ամենն էլ կոլեկտիվ հնարավորություն է ընձեռում՝ հասնել բարձր ցուցանիշների:

Լավ արդյունքների են հասել Նորիլսկի լեռնամետալուրգիական կոմբինատի, «Գլավտյումեննեֆտեգազ», Վոսկրեսենսկի «Մինուդոբրենիա» միավորումների, Դեդովսկի մանվածքագործվածքային ֆաբրիկայի, «Մոսկվայի էլեկտրալամպերի գործարան» միավորման կոլեկտիվները:

Մեծ արդյունք է տալիս ձեռնարկություններում Շչոկինյան մեթոդի կիրառումը:

Բերքահավաքի ընթացքում բարձր արտադրողական աշխատանքի օրինակ ցույց տվեցին Ստավրոպոլի երկրամասի Իպատովոյի շրջանի հողագործները: Կիրառելով նոր տեխնոլոգիա, նրանք ապահովեցին մեքենաների բարձր արդյունավետ օգտագործումը, հացահատիկային կուլտուրաների հունձը ավարտեցին 4 օրում, լասերի հավաքումը՝ 9 օրում, զգալիորեն բարձրացրին դաշտային աշխատանքների որակը, ավելացրին հացահատիկի արտադրությունը:

Աշխատանքի բարձր արտադրողականության հասնելու համար հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել նոր տեխնիկայի ներդրման և աշխատանքի գիտական կազմակերպման, պլանների կատարմանը, ձեռքի աշխատանքի

*տադրանքի օգտագործման ասպարեզում, որի առավել մեծ կարիքն է զգում այսօր ժողովրդական տնտեսությունը:*

*Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ ժողովրդական տնտեսության մեջ դեռևս շատ են և փաստորեն չեն նվազում մետաղի մնացուկները: Միլիոնավոր տոննաներով մետաղ է «մեռցվել» անավարտ շինարարության, չտեղակայված սարքավորումների, ծանրացված կոնստրուկցիաների մեջ: Մեծ են խոտանից առաջացող կորուստները:*

*Հսկայական նշանակություն ունի Չելյաբինսկի մարզի ձեռնարկությունների, գիտահետազոտական և կոնստրուկտորական կազմակերպությունների փորձի տարածումը. այստեղ պլանաչափ աշխատանք է կատարվում մետաղի խնայողության, դրա որակի բարձրացման, մեքենաների, սարքավորումների մետաղատարության նվազեցման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման նպատակով: Ընդօրինակելու շատ բան է տալիս Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի կոլեկտիվը. նա մշակել և արմատավորում է արտադրության սակավամնացուկ տեխնոլոգիան, որը հնարավորություն է ընձեռում տարեկան տասնյակ հազարավոր տոննաներով մետաղ տնտեսել:*

*Առավել հրատապ է վառելիքա-էներգետիկ ռեսուրսների խնայողաբար ծախսման հարցը: Դրա օրինակը ցույց են տալիս Կեմերովոյի մարզի աշխատավորները: Վերջին տարիներս այստեղ նորմաների համեմատությամբ խնայվել է մոտավորապես 2,5 միլիոն տոննա պայմանական վառելիք:*

*Միևնույն ժամանակ երկրում մոտավորապես երեք հազար ձեռնարկություններ ու կազմակերպություններ տալիս են վառելիքի գերածախս, ավելի քան 2,6 հազարը՝ էլեկտրաէներգիայի գերածախս: Ամբողջությամբ վերցրած՝ կորչում են այնքան վառելիքային ռեսուրսներ, որոնք կբավարարեին մի քանի խոշոր քաղաքների տարեկան պահանջմունքը:*

*Մեծ արդյունք կարող է տալ մետաղի և մյուս նյութերի երկրորդային ռեսուրսների ավելի լավ օգտագործումը:*

*Խիստ հրատապ է մնում գյուղատնտեսության մեջ կորուստների կրճատման պրոբլեմը: Ամեն տարի բերքահավաքի, փոխադրման, վերամշակման և պահպանման ժամանակ կորչում են մեծ քանակությամբ հացահատիկ, կարտոֆիլ, բանջարեղեն և միրգ: Դեռևս շատ են անասունների անկումները: Կորչում է մեծ քանակությամբ հանքային պարարտանյութ:*

*Նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը հնարավորություն է ընձեռում անշեղորեն իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, ավելացնել սոցիալիստական կուտակումները: Աշխատավորական կոլեկտիվների մեծամասնությունը հաստատակամորեն աշխատում է այդ նպատակով: Սակայն զգալի թվով արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության ծախքերը դեռևս բարձր են, չեն կատարվում ինքնարժեքի իջեցման պլանները: 1977 թվականի ինն ամսում հիշյալ ձեռնարկությունները պլանային ինքնարժեքի դիմաց ունեցել են 1,5 միլիարդ ռուբլու գերածախս: Դա առավել մեծ չափով վերաբերում է քիմիական, ածխային, թեթև արդյունաբերությանը: Մի շարք դեպքերում չարդարացված տարբերություններ կան միատեսակ արտադրանքի արտադրության վրա կատարվող ծախսումների մեջ: Լրիվ չեն կատարվում շինմոնտաժային աշխատանքների ինքնարժեքի իջեցման առաջադրանքները, իսկ հաճախ էլ հաստատված նախահաշիվների համեմատությամբ կատարվում է զգալի գերածախս:*

*Կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, ժողովրդական վերահսկողության մարմինները պետք է ուժեղացնեն պայքարը խնայողության ու տնտեսման համար, բարելավել ինքնարժեքի իջեցման աշխատանքը բոլոր ձեռնարկություններում ու կառույցներում, յուրաքանչյուր աշխատատեղում: Հարկավոր է զարգացնել մրցությունը խնայողության անձնական և կոլեկտիվ հաշիվների հիման վրա, տարածել լենինգրադցիների նախաձեռնությունը, որոնք որոշել են 1978 թվականին երկու օր աշխատել տնտեսված հումքով և նյութերով: Անհրաժեշտ է բոլոր աշխատավորական կոլեկտիվներում բարձր մակարդակով անցկացնել*



*հումքի, նյութերի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների օգտագործման արդյունավետության համամիութենական հասարակական ստուգատեսը:*

*Խնայողություն անել ամեն ինչում, մեծ և փոքր բաներում, իջեցնել ինքնարժեքը, իսպառ վերացնել վատնումների և շռայլումների փաստերը՝ սա է սոցիալիստական տնտեսավարման անկապտելի պահանջը, բոլոր աշխատավորների պարտքը:*

**Բարձր արդյունավետության և որակի հասնելը անխզելիորեն կապված է կապիտալ շինարարությունը արմատապես բարելավելու, արտադրական օբյեկտների գործարկումն արագացնելու հետ:** *Մենք շատ ենք կառուցում և անվիճելի հաջողություններ ունենք այդ գործում: Բարձր կազմակերպվածության, ստեղծագործական աշխատանքի օրինակներ են ցույց տալիս Բայկալ—Ամուր մայրուղու, ԿԱՄԱԶԻ, «Ատոմմաշի», Բաշկիրիայի նավթաքիմիական ձեռնարկությունների և շինարարական այլ կազմակերպությունների շինարարները: Կառույցներում անընդհատ մեծանում է այն կոլեկտիվների թիվը, որոնք հասնում են բարձր արտադրողականության՝ ապահովելով լավ որակ:*

*Սակայն հնգամյակի անցած երկու տարում թերակատարվել են արտադրական շատ կարողությունների գործարկման պլանները, մեծացել են թերավարտ շինարարության և չտեղադրված սարքավորումների ծավալները:*

*Օրինակ, երկար տարիներ կառուցվում է Պերմի սինթետիկ կաուչուկի գործարանը: Երկու տարի առաջ պլանավորվում էր գործարկել Խոլբոլջինսկի բաց ածխահանքի կարողությունները Բուրյաթական ԻՍՍՀ-ում, Պերվոմայսկի քիմիական գործարանի կարողությունները Խարկովի մարզում: Բայց մինչև օրս դրանք այդպես էլ շահագործման չեն հանձնվել: Ետ է մնում գյուղական և մելիորատիվ շինարարությունը ՌՍՖՍՀ-ի Ոչ-սևահողային գոտում:*

*Շինարարները, նախագծային, մոնտաժային և պլանավորող կազմակերպությունների աշխատողները պետք է ջանքերը, միջոցներն ու ռեսուրսները կենտրոնացնեն նախ և առաջ գործարկվելիք օբյեկտներում, առավել ակտիվորեն վերակառուցեն ձեռնարկությունները, հասնեն շինարարության արագացման և նրա ինքնարժեքի իջեցման: Ավելի լայնորեն արմատավորեն բրիգադային կապալի մեթոդը: Այն ամենը, ինչ նախատեսված է 1978 թվականի ժամանակին և որակով: Համար և հնգամյակի պլանով, պետք է կառուցվի*

**Ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացումը պահանջում է լրջորեն բարելավել տրանսպորտային սիստեմի աշխատանքը:** *Այժմ տրանսպորտի զարգացման համար հատկացվում են լրացուցիչ ռեսուրսներ, դրա հետ մեկտեղ բեռնափոխադրումների հետ կապված որոշակի դժվարությունները հաճախ առաջանում են ոչ միայն տրանսպորտային միջոցների պակասի հետևանքով, այլև այնպիսի պատճառներով, որոնք կարելի է վերացնել առանց մեծ ծախսումների: Անհրաժեշտ է կրճատել դատարկ վագերի, բեռնման և բեռնաթափման համար ժամանակի կորուստները, հասնել տրանսպորտի բոլոր տեսակների բեռնամբարձության լրիվ օգտագործման:*

*Առաջին հերթին դա վերաբերում է երկաթուղային տրանսպորտին: Օրինակ, անհամաչափ է աշխատում Հյուսիսկովկասյան երկաթուղին: Այն չի կատարում բեռնաշրջանառության, մի շարք կարևորագույն բեռների առաքման պլանը: Դրա հետևանքով խափանումներ կան բեռները սպառողներին հասցնելու գործում, շատ ձեռնարկություններում մեծացել են պատրաստի արտադրանքի գերնորմատիվային պաշարները:*

*Անարդյունավետ է շահագործվում բեռնատար ավտոմոբիլների զգալի մասը: Այսպես, Կենտրոնական սևահողային տերիտորիալ ավտոտրանսպորտային վարչությունում պարապուրդ են տալիս մեքենաների մոտավորապես 40 տոկոսը և յուրաքանչյուր երկրորդ կցաթափքը: Ավտոմոբիլները օրվա ընթացքում օգտագործվում են ինը ժամից մի փոքր ավելի, որից մոտավորապես երկու ժամը պարապուրդ են տալիս բեռնման ու բեռնաթափման ընթացքում, վազքի ավելի քան մեկ երրորդը կատարում են դատարկ: Այդ վարչության ավտոտնտեսությունների մեծ մասը չի կատարում փոխադրումների սահմանված պլանները:*

նարկությունների և հիմնարկությունների գործունեության բոլոր կողմերի վրա, մշտապես հոգալու մարդկանց կոմունիստական դաստիարակության մասին, համերաշխ աշխատանքի և ստեղծագործական որոնման մթնոլորտի ստեղծման մասին:

Գործի շահերը պահանջում են, որ կուսակցական մարմինները, ժողովրդական դեպուտատների սովետները ուժեղացնեն կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման ստուգումն ու կազմակերպումը, հաստատեն ղեկավարման լենինյան ոճը, զարգացնեն քննադատությունն ու ինքնաքննադատությունը՝ որպես թերությունների վերացման և կադրերի դաստիարակության ներգործուն միջոց:

Թանկագին ընկերնե՛ր:

1978 թվականին երկրի առջև ծառացած մեծ ու բարդ խնդիրների իրականացման համար պահանջվում է մոբիլիզացնել ուժերը, գիտելիքներն ու կարողությունները, է՛լ ավելի բարձրացնել աշխատավորների աշխատանքային և քաղաքական ակտիվությունը: «Անհրաժեշտ է,— ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— պահպանել, ամրապնդել հոբելյանական մրցության աշխատանքային ավյունն ու ռիթմը: Այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, վաղը՝ ավելի լավ, քան այսօր: Սա է օրվա լոզունգը: Իսկ ավելի լավ՝ նշանակում է շեշտը դնել որակի վրա, արդյունավետության վրա, աշխատանքի արտադրողականության աճի վրա: Հենց այստեղ է սոցիալիստական պարտավորությունների, ինչպես և ընդհանրապես մեր ամբողջ տնտեսական գործունեության միջուկը»:

Բարելավել սոցիալիստական մրցության կազմակերպումը, բարձրացնել նրա ներգործունությունը՝ այս է կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ պարտքը: Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումներով, տասներորդ հնգամյակում համամիութենական սոցիալիստական մրցության մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումով, անհրաժեշտ է հասնել այն բանին, որ պարտավորությունները և հանդիպական պլանները լինեն մոբիլիզացնող, հաշվի առնեն եղած ռեզերվները: Մրցողների առաջին շարքերում կոչված են ընթանալ կոմունիստական աշխատանքի հարվածայինները: Սոցիալիստական մրցության մեծ վերելքի պայմաններում ավելի է բարձրանում կառավարման բոլոր օղակների աշխատողների, արտադրական միավորումների և ձեռնարկությունների ղեկավարների պատասխանատվությունը սոցիալիստական պարտավորությունների և հանդիպական պլանների կատարման բոլոր պայմանների ստեղծման համար: Հարկավոր է բարձրացնել մրցության հրապարակայնությունը, պատվով և հարգանքով շրջապատել առաջավորներին և նորարարներին, լայնորեն տարածել և արմատավորել նրանց փորձն ու նվաճումները:

Կարևոր է խորապես վերլուծել պարտավորությունների թերակատարման պատճառները, մրցության բոլոր մասնակիցներին օգնել դուրս գալու է՛լ ավելի բարձր բնագծեր, այդ նպատակով առավել լայնորեն օգտագործել վարպետ-դաստիարակների շարժումը, կոմունիստական աշխատանքի դպրոցները, տնտեսագիտական կրթության սիստեմը, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները:

Թանկագին ընկերնե՛ր:

Մեր երկիրը գտնվում է տասներորդ հնգամյա պլանի կատարման կարևոր փուլում: Թող 1978 թվականը բոլոր սովետական մարդկանց համար դառնա հարվածային աշխատանքի, նոր հաջողությունների, նոր հաղթանակների տարի:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը դիմում են հերոսական բանվոր դասակարգին՝ կոչ անելով այսուհետև ևս ընթանալ համաժողովրդական սոցիալիստական մրցության ավանգարդում, ցույց տալ բարձրարտադրողական աշխատանքի, ժողովրդական բարիքի նկատմամբ հոգատար, սրտացավ վերաբերմունքի օրինակ, լինել բարձր գաղափարայնության և կազմակերպվածության տիպար:

Մենք դիմում ենք մեր փառապանծ կոլտնտեսային գյուղացիությանը, գյուղի բոլոր աշխատավորներին. ակտիվորեն ներգրավվեցեք գյուղատնտեսական կուլտուրաների առավել բարձր բերքատվության և անասնապահության մթերատվության հասնելու համար ծավալված շարժման մեջ, ավելացրեք գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրությունը՝ բնակչության և ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքների ավելի լրիվ բավարարման համար:

Մենք դիմում ենք սովետական մտավորականությանը, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի աշխատողներին. հասեք գիտատեխնիկական առաջընթացի արագացման, մեծացրեք ձեր ներդրումը ժողովրդական տնտեսության զարգացման մեջ: Թող հնգամյակի աշխատանքային ռիթմին միաձուլվեն ինժեների և գյուղատնտեսի ստեղծագործական աշխատանքը, գիտնականի որոնումը, մանկավարժի և բժշկի փորձն ու գիտելիքները, գրողի երգն ու ոգեշունչ տողը:

Մենք դիմում ենք ձեզ, թանկագին սովետական կանայք՝ արտադրության մեջ ձեր աշխատանքը, ընտանիքի, երեխաների դաստիարակության նկատմամբ ձեր մայրական հոգատարությունը ընդհանուր երախտագիտության և հարգանքի են արժանացել: Է՛լ ավելի ակտիվորեն մասնակցեք հասարակական կյանքին և ստեղծարար աշխատանքին:

Մենք դիմում ենք կոմերիտականներին, երկրի ամբողջ երիտասարդությանը՝ լենինյան կոմերիտմիության 60-ամյակը նշանավորեցեք նոր հաջողություններով: Ըստ արժանվույն շարունակեցեք ավագ սերունդների փառավոր ավանդույթները, համառորեն տիրապետեցեք գիտելիքներին և պրոֆեսիոնալ վարպետությանը, ակտիվորեն աշխատեցեք արտադրության մեջ: հնգամյակի հարվածային կառույցներում:

Կոմունիստների պարտքն է՝ միշտ և ամեն ինչում լինել առջևում, գլխավորել արդյունավետության և որակի բարձրացման համար մղվող պայքարը, հասնել ընդհանուր վերելքի, հանդես գալ որպես մասսաների ակտիվ կազմակերպիչներ և դաստիարակներ:

***

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն, ՀամԼԿԵՄ Կենտկոմը հաստատ վստահություն են հայտնում, որ կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը, մեր մեծ հայրենիքի բոլոր աշխատավորները, սերտորեն համախմբված լենինյան կուսակցության շուրջը, է՛լ ավելի լայնորեն կծավալեն սոցիալիստական մրցությունը 1978 թվականի առաջադրանքների կատարման ու գերակատարման համար, նոր հաջողությունների կհասնեն ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների իրականացման գործում:

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄ
ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴ
ՀԱՄԿԽ
ՀԱՄԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄ

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐ ԵՎ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆ ՏՎՈՂ ՈՒԺԸ

**Ի. ԿԱՊԻՏՈՆՈՎ**
ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար

*ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԸ, կոմունիզմի ճանապարհին ձեռք բերած իր բոլոր նվաճումները սովետական ժողովուրդն անխզելիորեն կապում է լենինյան կուսակցության՝ քաղաքական փորձված առաջնորդի, մասսաների կազմակերպչի ու դաստիարակի, հեղափոխական-վերափոխիչ գործունեության հետ:*

*Կոմունիստական կուսակցության վիթխարի հեղինակության, աշխատավորների կողմից նրա պատմական ծառայությունների միահամուռ ճանաչման նոր վկայությունն էին ՍՍՀՄ Սահմանադրության համաժողովրդական քննարկումն ու ընդունումը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի տոնակատարությունը: Դա կուսակցության ու ժողովրդի անխորտակելի միասնության, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նկատմամբ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության անսահման վստահության ամենավառ ցուցադրումն էր, Կենտկոմ, որը գլխավորում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը՝ արդիականության քաղաքական ու պետական ականավոր գործիչը, լենինյան մեծ գործի հավատարիմ շարունակողը, կոմունիստական իդեալների հաղթանակի, աշխարհի խաղաղության ու սոցիալական առաջընթացի անխոնջ մարտիկը:*

*Սոցիալիստական պետության ստեղծման ու զարգացման, նոր կյանքի կառուցման գործում կոմունիստական կուսակցության պատմական նշանակությունը, ուղղություն տվող և կազմակերպող դերը լայնորեն ու համոզիչ կերպով բացահայտված են ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ Կենտրոնական կոմիտեի մայիսյան և հոկտեմբերյան (1977) պլենումներում, ՍՍՀՄ Գերագույն սովետի արտահերթ յոթերորդ նստաշրջանում և մեծ Հոկտեմբերի 60-րդ տարեդարձին նվիրված հանդիսավոր նիստում տված զեկուցումներում:*

*Կոմունիստական համոզվածությամբ ու լավատեսությամբ, ժողովրդի ստեղծագործական անսպառ ուժի նկատմամբ անհողդողդ հավատով տոգորված այդ զեկուցումները բովանդակում են տեսական հիմնավոր ընդհանրացումներ ու եզրահանգումներ, տալիս են արդի հասարակական զարգացման բարդ պրոցեսների, գիտական կոմունիզմի հրատապ պրոբլեմների համակողմանի վեր-*



*լուծությունը, լուսաբանում զարգացած սոցիալիզմի փուլի կուսակցական, պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները: Այս ամենը հիշյալ փաստաթղթերը դասում են ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի խոշոր երկերի շարքը:*

*Սովետական հասարակության ու պետության մեջ ՍՄԿԿ-ի ունեցած իրական տեղը, նրա կատարած պատասխանատու ֆունկցիաներն ու խնդիրները հստակորեն արձանագրված են Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության (Հիմնական օրենքի) մեջ: ՍՍՀՄ Սահմանադրության 6-րդ հոդվածն ազդարարում է.*

*«Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է: ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին:*

*Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կոմունիստական կուսակցությունը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին ու արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի մեծ, ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար նրա պայքարին:*

*Բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ Սահմանադրության շրջանակներում»:*

*ՍՍՀՄ նոր Սահմանադրության այս դրույթն արժանացավ սովետական մարդկանց ջերմ պաշտպանությանն ու հավանությանը: Սոցիալիստական համագործակցության երկրների աշխատավորները, բարի կամքի տեր բոլոր մարդիկ ի դեմս Սովետական Միության կոմունիստական կուսակցության տեսնում են ազատության, դեմոկրատիայի, աշխատանքի մարդկանց կենսական շահերի և ամբողջ աշխարհի խաղաղության համար մղվող պայքարի դրոշակակրին: Այսօր է՛լ ավելի մեծ ուժով են հնչում Վ. Ի. Լենինի թևավոր խոսքերը՝ կուսակցությունը «մեր դարաշրջանի միտքն է, խիղճն ու պատիվը»:*

*Արտասահմանում մեր դասակարգային հակառակորդները այլ կերպ ընկալեցին սովետական հասարակության մեջ ՍՄԿԿ դերի սահմանադրական ամրապնդումը: Բուրժուական գաղափարախոսներն ամեն կերպ աղմկում են, որ դա, իբր, ոչ այլ ինչ է, քան կուսակցության դիկտատուրայի, պետության նկատմամբ նրա առաջնության հռչակում: Եվ այդպիսի աղմկարարությունը, ինչպես և նրա պատճառները, նորություն չեն մեզ համար: Իմպերիալիզմի ջատագովները կցանկանային խափանել կոմունիստական ու բանվորական կուսակցությունների դերը, նրանց հակադրել աշխատավորական մասսաներին և դրանով իսկ թուլացնել սոցիալիզմի ուժերը, մեռցնել մեր կոմունիստական իդեալները:*

*Սակայն այդպիսի փորձերը ոչինչ չեն հանգեցրել անցյալում, ձախողման են դատապարտված նաև այժմ: Ինչպես պատկերավոր ու դիպուկ ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «կուսակցությանն ու ժողովրդին իրար հակադրելու փորձ անել, «կուսակցության դիկտատուրայի» մասին դատողություններ անել, դա նույնն է, թե փորձ անել հակադրելու, ասենք, մարդու սիրտը նրա մնացած ամբողջ օրգանիզմին»:*

## 1

*Մեծ Հոկտեմբերի ժամանակներից ի վեր սովետական ժողովուրդն անցել է հարյուրամյակների հավասար ուղի: Նա է ստեղծել պատմության մեջ առաջին սոցիալիստական պետությունը, պաշտպանել նրան թշնամիների դեմ մղած դաժան մարտերում, երկիրը դարավոր հետամնացությունից բարձրացրել տնտեսական, սոցիալական ու կուլտուրական առաջընթացի գագաթները: Այդ նվաճումները, որ հզոր ազդեցություն են թողել աշխարհի նորացման, պատմական զարգացման ամբողջ ընթացքի վրա, արդյունք են այն բանի, որ մասսաներին ղեկավարում են բանվոր դասակարգն ու նրա մարքս-լենինյան կուսակցությունը:*

*Հեղափոխական պայքարի փորձը, արդի իրականությունը ակնհայտորեն*

հաստատում են պրոլետարիատի համաշխարհային-պատմական առաքելության և կոմունիստական կուսակցության դերի մասին մարքս-լենինյան եզրահանգումների ճշմարտացիությունը։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գրել են, որ «ունևոր դասակարգերի միավորված իշխանության դեմ բանվոր դասակարգը կարող է գործել ինչպես մի դասակարգ, որը նոր է համախմբվել քաղաքական հատուկ կուսակցության մեջ, կուսակցություն, որ կանգնած է ունևոր դասակարգերի ստեղծած բոլոր հին կուսակցությունների դեմհանդիման», որ «քաղաքական կուսակցության մեջ բանվոր դասակարգի այդ համախմբումն անհրաժեշտ է՝ ապահովելու սոցիալական հեղափոխության հաղթանակը, հասնելու նրա վերջնական նպատակին՝ դասակարգերի ոչնչացմանը...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 427)։ Մեր հեղափոխական տեսության հիմնադիրները միանգամայն որոշակիորեն նշում էին, որ կուսակցության ղեկավարումը օբյեկտիվ պահանջ է բանվոր դասակարգի պայքարի բոլոր փուլերի համար, ընդհուպ մինչև անդասակարգ հասարակության կառուցումը, այսինքն՝ մինչև կոմունիզմի լիակատար հաղթանակը։

Վ. Ի. Լենինը ստեղծագործաբար զարգացրեց ու հարստացրեց մարքսիզմի գաղափարները բանվոր դասակարգի և նրա ավանգարդի դերի մասին նոր՝ իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի պայմանների համեմատ։ Նա մշակեց կուռ ուսմունք նոր տիպի կուսակցության, նրա քաղաքական, գաղափարախոսական ու կազմակերպական հիմունքների մասին։ «Դաստիարակելով բանվորական կուսակցությունը,— նշել է նա,— մարքսիզմը դաստիարակում է պրոլետարիատի ավանգարդը, որն ընդունակ է գրավելու իշխանությունը և ամբողջ ժողովրդին դեպի սոցիալիզմ առաջնորդելու, կազմակերպելու և ուղղություն տալու նոր հասարակարգին, լինելու բոլոր աշխատավորների ու շահագործվողների ուսուցիչը, ղեկավարը, առաջնորդը՝ նրանց հասարակական կյանքն առանց բուրժուազիայի և բուրժուազիայի դեմ կազմակերպելու գործում» (Երկեր, հ. 25, էջ 521)։

Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայությունն այն է, որ նա ստեղծեց այդպիսի կուսակցություն։ Վերջինս անցավ երեք հեղափոխությունների քուրայով, դիմացավ խիստ կատաղի դասակարգային մարտերի բոլոր փորձություններին, անցման ժամանակաշրջանի դժվարություններին, ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում և երկիրը դուրս բերեց կոմունիզմի կառուցման լայն ճանապարհ։ Մեր կուսակցությունը, անսասան հավատարիմ մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական ուսմունքին և քաղաքական վիթխարի փորձով հարստացած, անփոփոխ կերպով հանդես է գալիս որպես ժողովրդի շահերի ճանաչված արտահայտիչ, նրա բոլոր հաղթանակների ոգեշնչող ու կազմակերպիչ։

Կուսակցության ղեկավար դերի բարձրացումը սոցիալիստական հասարակության առաջընթացի կարևորագույն օրինաչափություն է։ Այդ են վկայում սոցիալիստական ու կոմունիստական շինարարության ողջ պրակտիկան, մեր կուսակցության և սոցիալիզմի երկրների եղբայրական կուսակցությունների գործունեության փորձը։ «Կուսակցության ղեկավար դերի աճը,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մի պրոցես է, որ անցնում է մեր սոցիալիստական հասարակության միջով, սերտորեն կապված է նրա ամբողջ զարգացման հետ և արտացոլում է նրա օբյեկտիվ պահանջները»։

ՍՄԿԿ ծրագրում, համագումարների որոշումներում, համակուսակցական այլ փաստաթղթերում սահմանված են այն գործոնները, որոնք պայմանավորում են կուսակցության դերի մշտական բարձրացման անհրաժեշտությունը։ Դա ամենից առաջ կոմունիստական շինարարության մասշտաբների աճն ու խնդիրների բարդությունն է, բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության ու հասարակական-քաղաքական ակտիվության զարգացումը, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա խորացումը, գիտական կոմունիզմի տեսության մշակման ու պրոպագանդման հարաճուն նշանակությունը, լայն մասսաների կողմից այդ տեսության յուրացումը։ Դա նաև միջազգային գործոն է, կոմունիստական շինարարության արտաքին քա-



ղաքական պայմանների ավելի ու ավելի լիակատար հաշվառման անհրաժեշտություն։

ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ կուսակցության դերի բարձրացումը, հասարակական կյանքի բոլոր ոլորտների վրա նրա ներգործության ուժեղացումը, լինելով մեր զարգացման օբյեկտիվ պահանջը, կատարվում են ամենևին էլ ոչ ինքնաբերաբար, այլ բուն կուսակցության գիտակից, նպատակաուղղված գործողությունների շնորհիվ։

Կոմունիստական կուսակցության կարևորագույն ֆունկցիան հասարակության զարգացման գլխավոր հեռանկարի, ներքին ու արտաքին քաղաքականության ճիշտ գծի սահմանումն է։ Մշակելով դրանք, կուսակցությունը հաշվի է առնում հասունացած խնդիրները, ձեռք բերված արդյունքները և եղած ռեզերվները, նշում է սոցիալիզմի բոլոր առավելությունների արդյունավետ օգտագործման ուղիներ։ ՍՄԿԿ քաղաքականությանն առանձնահատուկ կենսունակություն է հաղորդում այն, որ նրանում խտացված կերպով արտացոլված են աշխատավորների շահերն ու ձգտումները, նրանց կենսական պահանջները։ Մեր օրերում գնալով ավելի ու ավելի է հաստատվում լենինյան այն միտքը, որ բանվոր դասակարգի, նրա կուսակցության քաղաքական գաղափարները համաժողովրդական բնույթ են կրում։

Կուսակցության քաղաքականությունն աչքի է ընկնում հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր զարգացման խնդիրների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցմամբ, նպատակաուղղվածությամբ ու ռեալիզմով, խիստ հետևողականությամբ, հեռանկարային ու ընթացիկ խնդիրների հմուտ զուգորդմամբ։

Կուսակցության քաղաքականության վիթխարի ստեղծարար ուժն այն է, որ այդ քաղաքականությունը կառուցվում է մարքսիզմ-լենինիզմի ամուր հիմքի վրա։ ՍՄԿԿ-ն հեղափոխական տեսությունը դիտում է որպես գործողության ղեկավար սկզբունք, որպես կոմունիստական հիմունքներով կյանքի ճանաչման ու վերակառուցման զորեղ միջոց։ Ուշադրությամբ ընդհանրացնելով նոր երևույթները, մասսաների փորձը՝ կոմունիստական կուսակցությունը շարունակում է զարգացնել տեսությունը, այն հարստացնում արժեքավոր եզրահանգումներով ու դրույթներով։

Մարքսիզմ-լենինիզմի կենդանի ոգին նրա սերտ, մշտական կապն է
պրակտիկայի, իրական կյանքի հետ, խիստ գիտական մոտեցումը իրականու-
թյան հանդեպ։ Խոսելով այդ մասին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշել է. «Որպես
հասարակական մտքի մեծ նվաճում մենք պահպանում ենք հասարակության
ու դասակարգային պայքարի, պատմության զարգացման օրենքների, սոցիա-
լիստական հեղափոխության ու սոցիալիզմի կառուցման ուղիների մասին եղած
բոլոր այն գիտելիքները, որ մեզ տվել են Մարքսը, Էնգելսը, Լենինը։ Բայց
պահպանում ենք ոչ այնպես, ինչպես արխիվարիուսներն են պահում հին թըղ-
թերը, այլ այնպես, ինչպես պատշաճ է այդ մեծ ուսմունքի ժառանգորդներին՝
գիտելիքների անգին կապիտալը կիրառելով քաղաքական պրակտիկայի մեջ,
մշտապես զարգացնելով ու բազմապատկելով մեզ հասած տեսական հարստու-
թյունը։ Մարքս-լենինյան ուսմունքն առանց զարգացնելու մենք չենք կարող
առաջ շարժվել»։

Կուսակցության տեսական միտքն առանձնապես բեղմնավոր է գործել այն
ժամանակաշրջանում, որի սկիզբը դրեց ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան
(1964 թ.) պլենումը։ Կուսակցության XXIII, XXIV և XXV համագումարների
փաստաթղթերում, Կենտրոնական կոմիտեի պլենումների, նրա քաղբյուրոյի
որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սո-
վետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում
խորապես մշակվեցին կուսակցության ու ժողովրդի ամբողջ գործունեության
համար կենսականորեն կարևոր նշանակություն ունեցող պրոբլեմներ։

Կուսակցությունը մշակել է զարգացած սոցիալիզմի՝ որպես կոմունիստա-
կան հասարակության ձևավորման օրինաչափ փուլի, ամբողջական կոնցեպ-
ցիա, բացահայտել է ուղիներ ու միջոցներ կոմունիզմի նյութատեխնիկական
բազայի ստեղծման, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները տըն-

*տեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ միավորելու, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման, նոր մարդու ձևավորման համար։ ՍՄԿԿ գործունեության մեջ հսկայական տեղ են գրավում միջազգային հարաբերությունների, համաշխարհային հեղափոխական պրոցեսի ներկա փուլի կարևորագույն պրոբլեմների մարքս-լենինյան տեսության մշակումը։ Սա նշանակում է, որ կուսակցությունը տեսության լույսով է լուսավորում արդի պայմաններում նոր հասարակության կառուցման բոլոր հանգուցային հարցերը։*

*ՍՄԿԿ-ն հեղափոխական գործողության կուսակցություն է։ Նրա արմատական, բնորոշ գիծն այն է, որ նա քաղաքական կուրսի մշակումը երբեք չի անջատում դրա գործնական իրացումից։ Նա կարողանում է իր դրոշի շուրջը համախմբել աշխատավորության ամենալայն մասսաներին, ոտքի հանել նրանց և պայքարի տանել ծրագրված նպատակներին հասնելու համար։ ՍՄԿԿ-ն անփոփոխ կերպով ղեկավարվում է լենինյան այն ցուցումով, թե կազմակերպչական գործունեությունը «կազմում է և պետք է կազմի կուսակցության գործունեության գլխավոր բովանդակությունը»։*

*Թե որքան մեծ է կուսակցության կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի ներգործունությունը, ակնառու վկայում են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների, աշխատավորության ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կենսագործման համար մղվող պայքարի հաջողությունները։ Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի և քարտուղարության մշակած կազմակերպական-քաղաքական միջոցառումներն ապահովում են տնտեսական ու կուլտուրական շինարարության վճռական տեղամասերում կուսակցության ու ժողովրդի ջանքերի ժամանակին կենտրոնացումը, նպաստում կուսակցական, պետական ու տնտեսական բոլոր մարմինների գործունեության ակտիվացմանը։ Այս տեսակետից ոգեշնչող ու մոբիլիզացնող մեծ դեր են խաղում ՍՄԿԿ Կենտկոմի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի նամակներն ու ողջույնները՝ ուղղված կազմակերպություններին, կոլեկտիվներին և արտադրության նորարարներին, որոնք բարձրարտադրողական աշխատանքի, գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման օրինակներ են ցույց տալիս։*

*Կազմակերպչական աշխատանքում կուսակցությունն առաջնակարգ նշանակություն է տալիս նրան, որ ժամանակին նկատեն ու պաշտպանեն այն ամենը, ինչը նոր է, առաջադիմական, ինչը արդյունք է մասսաների կենդանի ստեղծագործության, որ նպաստեն օգտակար նախաձեռնությունների, աշխատանքի և գործի կազմակերպման լավագույն օրինակների ըստ ամենայնի ներդրմանը։*

*Ժողովրդատնտեսական մեծ արդյունք են տալիս, օրինակ, ՍՄԿԿ Կենտկոմի հավանությանն արժանացած և մասսայական տարածում գտած նախաձեռնությունները. մոսկվացիներինը— «Որակի հնգամյակին՝ աշխատանքային երաշխիք», ռոստովցիներինը— «Աշխատել առանց ետ մնացողների», լվովցիներինը— արտադրության որակի կառավարման համալիր սիստեմ ստեղծելու վերաբերյալ, զապորոժցիներինը— արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման հիման վրա աշխատանքային ռեսուրսների օգտագործումը բարելավելու վերաբերյալ։*

*Դա ակնառու կերպով դրսևորվեց նաև Ստավրոպոլի երկրամասի Իպատովի շրջանի աշխատավորների փորձի լայն տարածման մեջ, փորձ, որն արժանացել է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հավանությանը։ Հացահատիկային կուլտուրաների մասսայական հնձի ժամանակ երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում իպատովցիների օրինակով ստեղծվել և գործում էին բերքահավաք-տրանսպորտային շուրջ 50 հազար կոմպլեքս ու ջոկատ։ Աշխատանքի կազմակերպման նոր ձևը, որը հնարավորություն էր ընձեռնում արդյունավետ օգտագործել ունեցած ամբողջ տեխնիկան, հաջողությամբ կիրառվեց նաև ճակնդեղի, եգիպտացորենի, բամբակի, կարտոֆիլի և այլ կուլտուրաների բերքահավաքի ժամանակ։ Դրա շնորհիվ այս տարվա բերքահավաքի կամպանիան անցավ ավելի կազմակերպված, չնայած եղանակի բարդ պայմաններին։*



*Կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն անդադրում հոգում են, որ բոլոր կուսակցական կազմակերպությունների և նրանց ղեկավար մարմինների գործունեության մակարդակը, մասսաների շրջանում նրանց ծավալած կազմակերպչական և գաղափարադաստիարակչական աշխատանքի ձևերն ու մեթոդները մշտապես համապատասխանեն ժամանակի պահանջներին, հասարակական զարգացման նոր պայմաններին, լուծվող խնդիրների բնույթին։*

*Ղեկավարման հաջողության կարևոր նախադրյալն աշխատանքի լենինյան ոճն է, ստեղծագործական ոճը, որը խորթ է սուբյեկտիվիզմին և ներթափանցված է հասարակական բոլոր պրոցեսների նկատմամբ գիտական մոտեցմամբ։*

*Լենինյան ոճի անբաժանելի գծերն են քննադատության և ինքնաքննադատության ըստ ամենայնի զարգացումը, ընդունված որոշումների ամենօրյա վերահսկողությունն ու կատարման ստուգումը։ Եվ կուսակցությունն անում է ամեն բան, որպեսզի այդպիսի ոճը ներդրվի կուսակցական, պետական ու տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում։*

*Կուսակցական ղեկավարման հանգուցային օղակը, հուժկու լծակը, որի օգնությամբ նա հասարակության մեջ ներազդում է բոլոր գործերի վրա, եղել և մնում է նրա կադրային քաղաքականությունը։ Եվ եթե նոր կյանքի կառուցման բոլոր փուլերում մեր կուսակցությունը հաջողությամբ լուծել և լուծում է ամենաբարդ ու դժվարին խնդիրները, եթե կարողանում է միավորել, համոզել ու իր ետևից տանել մասսաներին, ապա դա ձեռք է բերվում մեծապես այն բանի շնորհիվ, որ կուսակցությունը հսկայական ուշադրություն է դարձնում կադրերի աճեցմանն ու տեղաբաշխմանը։ ՍՄԿԿ-ն հաստատակամորեն ձգտում է այն բանին, որ ղեկավարման բոլոր տեղամասերում գործեն այնպիսի մարդիկ, ովքեր իրենց մեջ օրգանապես զուգակցում են կուսակցականությունն ու խոր բանիմացությունը, կարգապահությունն ու ձեռներեցությունը, գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցումը, ովքեր զգայուն վերաբերմունք են ցույց տալիս աշխատավորների կարիքներին ու պահանջներին։*

*Կադրերի հետ աշխատելը կենդանի գործ է, որն անընդհատ բարելավման կարիք է զգում։ Յուրաքանչյուր քայլը դեպի առաջ, նոր պատասխանատու խնդիրների լուծման անհրաժեշտությունը պահանջում են ղեկավարների մեջ մշակել նոր որակ, նրանց զինել նոր գիտելիքներով և ունակություններով։ Եվ Կենտրոնական կոմիտեն այս հարցերը մշտապես պահում է իր տեսադաշտում։ Միայն կուսակցության XXV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում մի շարք խոշոր միջոցառումներ են իրականացվել կուսակցական, սովետական ու տնտեսական կադրերի գաղափարաքաղաքական պատրաստությունը և գործարար որակավորումը բարձրացնելու սիստեմի հետագա կատարելագործման, ժողովրդական տնտեսության ղեկավար աշխատողների ու մասնագետների ատեստավորումը բարելավելու, միջին օղակի և մասսայական պրոֆեսիաների կադրերի կազմն ամրապնդելու համար։ Այս հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշումներում սահմանված են արդի փուլում կադրերի հետ աշխատելու կոնկրետ ուղղությունները։*

*Այսպիսով, մեր կուսակցությունը կենտրոնացնում է իր եռանդը, օգտագործում ողջ կուտակված փորձը, որպեսզի անընդհատ նոր, ավելի բարձր մակարդակի վրա դնի մասսաների շրջանում տարվող քաղաքական, կազմակերպական ու գաղափարադաստիարակչական աշխատանքը։ Դրանով իսկ նա ավելի արդյունավետ ձևով է իրականացնում կուսակցական քաղաքականությունը, սովետական հասարակության հաջող առաջխաղացումը։*

## 2

*Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի համաշխարհային-պատմական նվաճումների կարևորագույն հանրագումարը սոցիալիստական հասուն հասարակության կառուցումն է, հասարակություն, որի նմանը մարդկությունը դեռ չէր տեսել։ Այս փուլում, զարգանալով արդեն սեփական հիմքի վրա, սոցիալիզմն ավելի լայնորեն է բացահայտում իր հսկայական հնարավորությունները։ «Լիովին իրագործել զարգացած սոցիա-*

լիզմի հնարավորությունները,— մեծ Հոկտեմբերի 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— այս է, եթե կուզեք, մեր օրերի պաթոսը։ Հենց դա էլ որոշում է այսօր պատմության կողմից մեզ վրա դրված մեծ պատասխանատվությունը»։

Կուսակցությունն իրեն հաշիվ է տալիս, որ բացահայտված հնարավորությունները իրականության վերածելու համար անհրաժեշտ է մոբիլիզացնել հասարակության նյութական ու հոգևոր բոլոր ուժերը։ Հենց այս նպատակին էլ ուղղված են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, համագումար, որը սահմանեց կոմունիստական շինարարության ստրատեգիան ու տակտիկան, էկոնոմիկայի հետագա զարգացման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, նոր մարդու ձևավորման ուղիներն ու մեթոդները։

Կուսակցության ու ժողովրդի հիմնական ջանքերը կենտրոնացված են էկոնոմիկայի՝ կոմունիզմի համար մղվող պայքարի այդ վճռական ոլորտում։ Սովետական մարդկանց անձնուրաց աշխատանքով ստեղծվել են առաջավոր հզոր ինդուստրիա և բարձր մեքենայացված խոշոր գյուղատնտեսություն։ Մեր էկոնոմիկան այժմ ժողովրդատնտեսական միասնական մի համալիր է, որ երկրի տերիտորիայում ընդգրկում է հասարակական արտադրության, բաշխման ու փոխանակման բոլոր օղակները։

Կուսակցության տնտեսական քաղաքականությանը համապատասխան՝ Կենտրոնական կոմիտեն կուսակցական կազմակերպությունների, նրանց ղեկավար մարմինների, մեր բոլոր կադրերի ուշադրությունը սևեռում է ժողովրդական տնտեսության հետագա զարգացման ինտենսիվ գործոնների առավելագույն օգտագործման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, բոլոր բնագավառներում աշխատանքի որակի բարելավման վրա։ Սա նպաստում է այն բանին, որ երկրի էկոնոմիկայում կատարվում են որակական նոր փոփոխություններ։ Նյութական արտադրության վրա հարաճուն ներգործություն է ունենում գիտությունը, որն ավելի ու ավելի ակտիվորեն է հանդես գալիս որպես անմիջական արտադրողական ուժ։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության մեջ ժամանակակից տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման հիման վրա փոխվում են աշխատանքի պայմաններն ու բնույթը։ Վերակառուցվում է տնտեսական ամբողջ մեխանիզմը՝ կատարելագործվում են պլանավորումը, տնտեսական խթանների ու լծակների օգտագործումը, կառավարման կազմակերպական կառուցվածքն ու մեթոդները։

Կուսակցության տնտեսական ստրատեգիան նախատեսում է ընդլայնել և արմատապես նորացնել արտադրական ֆոնդերը, ապահովել ծանր արդյունաբերության՝ որպես էկոնոմիկայի հիմքի, կայուն, հավասարակշռված աճ, զարգացնել տեխնիկական առաջընթացը որոշող բոլոր ճյուղերը։

Արդի պայմանները պահանջեցին, ըստ էության, նոր մոտեցում ցուցաբերել մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորի զարգացման հանդեպ։ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումում մշակվեցին գյուղատնտեսության արագ զարգացման, կոլտնտեսային-սովխոզային արտադրության ինտենսիֆիկացման, տնտեսությունների էկոնոմիկայի և նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղիները։ Այդ սկզբունքային կուրսն ամրապնդվեց ու շարունակվեց ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների որոշումներում։

Կուսակցության ագրարային քաղաքականության միջուկը, գյուղատնտեսության զարգացման մայրուղին այսօր գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու կենտրոնացումն է միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա։ Հետևողականորեն կենսագործվում են ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի միջոցառումները ոչ-սևահողային գոտին՝ երկրի այդ լայնարձակ շրջանը, բարձրարդյունավետ հողագործության և անասնապահության գոտի դարձնելու համար։

Գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման, նրա որակական վերափոխման և բոլոր ճյուղերը ժամանակակից ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու համար պետությունն առանձնացնում է մեծ միջոցներ։ Դրա հետևանքով կարճ ժամանակում արմատապես վերափոխվեցին գյուղի նյութա-



տեխնիկական բազան և էկոնոմիկան։ Աննախընթաց մասշտաբներով աշխատանք է տարվում մելիորացման կոմպլեքսային մեքենայացման ու քիմիացման նպատակով։

Սովետական մարդկանց անձնուրաց աշխատանքի, կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանքի շնորհիվ մեր ժողովրդական տնտեսությունն անշեղ վերելք է ապրում։ Բավական է ասել, որ միայն վերջին տասը տարում երկրի տնտեսական պոտենցիալը գործնականորեն կրկնապատկվել է։ Գործարկվել է շուրջ չորս հազար նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, վերակառուցվել են հազարավոր գործող գործարաններ ու ֆաբրիկաներ։ Հացահատիկի համախառն արտադրությունը 1967 թվականի 148 միլիոն տոննայի դիմաց 1977 թ հասել է 194 միլիոն տոննայի, բամբակինը՝ համապատասխանաբար՝ 5,9-ի դիմաց 8,6 միլիոն տոննայի, մսինը՝ 11,5-ի դիմաց 15 միլիոն տոննայի։ Ամբողջությամբ վերցրած՝ բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքը տվյալ ժամանակամիջոցում աճել է գրեթե մեկ քառորդով։

Հասուն սոցիալիզմի փուլում մեր երկրի տնտեսական ու գիտատեխնիկական վիթխարի պոտենցիալը հնարավորություն է ընձեռում աշխատավորների նյութական ու կուլտուրական պահանջմունքների ավելի ու ավելի լիակատար բավարարումը գործնականում դարձնել հասարակական զարգացման հիմնական ու անմիջական խնդիր։ Սա է կուսակցության տնտեսական ստրատեգիայի բարձրագույն նպատակը, անշեղորեն կենսագործվող նրա սոցիալական ծրագրի գլխավոր իմաստը։ Տարեցտարի ավելանում են աշխատավորների ռեալ եկամուտները, հետևողականորեն լուծվում է բնակարանային պրոբլեմը, ընդլայնվում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, բարելավվում է դրանց որակը։ Շատ բան է արվում առողջապահության, ժողովրդական կրթության, կուլտուրայի զարգացման բնագավառում։

Ըստ արժանվույն գնահատելով ձեռք բերվածը, կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն տեսնում են նաև դեռևս չլուծված պրոբլեմները, գոյություն ունեցող դժվարությունները, թերությունները։ Ինքնաքննադատաբար, սկզբունքային դիրքերից վերլուծելով դրանք, ՍՄԿԿ-ն իր բոլոր կազմակերպությունների, պետական ու տնտեսական մարմինների, ղեկավար կադրերի ուշադրությունը հրավիրում է այն ամենի վերացման նպատակին, ինչը խանգարում է մեր առաջխաղացմանը, ռեզերվների բացահայտմանն ու առավելագույն օգտագործմանը, աշխատանքում ներդաշնակության, հստակության ու բարձր կազմակերպվածության ապահովմանը։ Դա կուսակցության առաջադրած լոզունգի՝ տասներորդ հնգամյակը դարձնել արդյունավետության ու որակի հնգամյակ, կենսագործման համար ամբողջ կազմակերպչական ու քաղաքական գործունեության կարևոր կողմն է։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կառուցված զարգացած սոցիալիզմը նոր հասարակության հասունության այնպիսի մի փուլ է, երբ սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական հիմքերի վրա իր ամբողջականությամբ ավարտվում է հասարակական հարաբերությունների վերակառուցումը։ Կուսակցությունն այդ վերափոխումները միշտ էլ համարել է իր քաղաքականության ամենագլխավոր բնագավառներից մեկը։

Սովետական իշխանության առաջին իսկ տարիներին Վ. Ի. Լենինը նշել է. «...մենք այժմ արմատական սոցիալական փոփոխություններ կատարելու համար անհրաժեշտ ժամկետներ սահմանելու՝ պատմության մեջ բավականին հազվադեպ առիթ ենք ստացել...» (հ. 33, էջ 574)։ Ղեկավարվելով իր առաջնորդի և ուսուցչի պատգամներով, մեր կուսակցությունը կարողացավ հասարակական նոր հարաբերությունների կազմավորման պրոցեսին հաղորդել պլանաչափ, նպատակաուղղված բնույթ։

Այս ամբողջ աշխատանքի ընդհանուր հայտարարը սովետական հասարակության սոցիալական աճող միատարրությունն է։ Այսօր, քան երբեք, ամուր ու անքակտելի է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքը, քայլ առ քայլ ջնջվում են նրանց միջև եղած տարբերությունները։ Լենինյան ազգային քաղաքականության իրա-

գործումը հնարավորություն տվեց ապահովել երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների ոչ միայն իրավական, այլև փաստական իրավահավասարությունը, նրանց անխորտակելի բարեկամությունն ու համախմբվածությունը: Այս պրոցեսների օրինաչափ արդյունքը եղավ մարդկանց սոցիալական ու ինտերնացիոնալ նոր հանրության առաջացումը, ինչպիսին է սովետական ժողովուրդը:

Մեր կարգերի հիմնալի նվաճումը սոցիալիստական ապրելակերպն է, որի օրենքն է՝ բոլորը հոգում են մեկի բարօրության համար, ամեն մեկը հոգում է բոլորի բարօրության համար:

Սոցիալիստական հասարակական հարաբերությունների հաղթանակը, բնակչության բոլոր խավերի անցումը դեպի բանվոր դասակարգի գաղափարական-քաղաքական դիրքերը պայմանավորեցին պրոլետարիատի դիկտատուրայի պետության աստիճանական վերաճումը համաժողովրդական պետության: Սա նշանավորում է որակապես նոր փուլ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ու խորացման գործում, դեմոկրատիա, որի էությունն այն է, որ աշխատավորական մասսաներին առավելագույնս ներգրավի պետության ու հասարակության գործերի կառավարման մեջ: Զարգացած սոցիալիզմի փուլում սոցիալիստական դեմոկրատիայի նվաճումները սահմանադրորեն ամրակայվել են ՍՍՀՄ նոր Հիմնական օրենքում:

Պետական շինարարության, սովետական հասարակության քաղաքական սիստեմի կատարելագործման բնագավառում կոմունիստական կուսակցությունը առաջնակարգ նշանակություն է տալիս ժողովրդական դեպուտատների սովետների՝ որպես իսկական ժողովրդական իշխանության մարմինների, գործունեությանը: Վերջին տարիներս կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի նախաձեռնությամբ շատ բան է արվել պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության գործում սովետների դերի հետագա բարձրացման, նրանց իրավունքների ու հնարավորությունների, ընդլայնման համար, ընտրողների պատվիրանների կատարման գործում դեպուտատների ակտիվությունն ու պատասխանատվությունը բարձրացնելու, բոլոր հասունացած խնդիրները լուծելու համար:

Կուսակցությունը հոգում է նաև արհեստակցական միությունների, կոմերիտմիության, կոոպերատիվ և գործնականում երկրի ամբողջ չափահաս բնակչությունը միավորող և մեր հասարակության քաղաքական սիստեմի անբաժանելի մասը հանդիսացող այլ մասսայական կազմակերպությունների դերի ու նշանակության բարձրացման մասին: Արհմիությունների և կոմերիտմիության կողմից պետական գործերի կառավարմանը մասնակցելու իրավունքի, օրենսդրական նախաձեռնության իրավունքի սահմանադրական ամրապնդումը նրանց հնարավորություն է ընձեռում է՛լ ավելի արդյունավետ ձևով ներգործել քաղաքական, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական հարցերի լուծման, մասսաների նախաձեռնության և ինքնագործունեության զարգացման վրա:

Սոցիալիստական դեմոկրատիայի խորացումն ու ընդլայնումն արդի փուլում արտացոլվում են այն բանում, որ մեր քաղաքական սիստեմում գնալով ավելի զգալի տեղ է հատկացվում աշխատանքային կոլեկտիվներին: «Աշխատանքային կոլեկտիվում, նրա կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— արտացոլվում է հասարակության ողջ կյանքը՝ թե՛ տնտեսական, թե՛ հոգևոր: Ըստ էության, դա ոչ միայն մեր ողջ տնտեսական, այլև քաղաքական օրգանիզմի սկզբնական բջիջն է»:

Սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների գլխավոր կրողը, նրա հաջող զարգացման երաշխիքը կոմունիստական կուսակցությունն է, սովետական հասարակության քաղաքական սիստեմի միջուկը: Այդ սիստեմի զարգացման վրա կուսակցությունն ազդում է, առաջին հերթին, իր քաղաքականությամբ: Օգտվելով կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքի՝ իրեն հատուկ մեթոդներից, ՍՄԿԿ-ն միավորում է հասարակական ու պետական բոլոր կազմակերպությունների ջանքերը և դրանք ուղղում միասնական նպատակի կատարմանը, ապահովելով նրանց գործողությունների ներդաշնակությունն ու համաձայնեցվածությունը: Կուսակցությունն իր գիծը վարում է ամենից առաջ



սովետներում, արհմիություններում, կոմերիտմիությունում և մասսայական այլ կազմակերպություններում աշխատող կոմունիստների միջոցով:

ՍՍՀՄ նոր Սահմանադրության գործադրվելուց հետո է՛լ ավելի է աճում կուսակցության՝ որպես սովետական հասարակության քաղաքական սիստեմի միջուկի, պատասխանատվությունը: Գործելով Սահմանադրության շրջանակներում, կուսակցական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները կոչված են հաստատակամորեն հասնելու այն բանին, որ Սահմանադրության պահանջներն անշեղորեն պահպանվեն պետական, հասարակական կազմակերպությունների և պաշտոնատար անձանց կողմից, որ մարդիկ լավ իմանան իրենց իրավունքներն ու պարտությունները, դրանց իրականացման ուղիներն ու մեթոդները, հստակորեն գիտակցեն դրանց անխզելի կապը քաղաքացիական պարտականությունների բարեխիղճ կատարման հետ:

Աշխատավորների լայն մասնակցությունը հասարակության ու պետության գործերին, պետական ու մասսայական կազմակերպությունների, աշխատանքային կոլեկտիվների աշխատանքի կատարելագործումը, սովետական մարդկանց մեջ քաղաքական բարձր կուլտուրայի դաստիարակումը և պատասխանատվության գիտակցումը հասարակության հանդեպ,— այս ամենը ծառայում են այն նպատակին, որ սոցիալիստական պետականությունը աստիճանաբար վերաճի կոմունիստական հասարակական ինքնակառավարման:

Զարգացած սոցիալիզմի հասարակությունն աչքի է ընկնում քաղաքացիների բարձր կազմակերպվածությամբ, գաղափարայնությամբ ու գիտակցականությամբ, որոնք արտահայտվում են կոմունիզմ կառուցելու նրանց պատրաստակամության, կամքի և ունակության մեջ: Այս հիանալի հատկությունների ձևավորման վրա վճռական ազդեցություն են թողնում մեր ողջ սոցիալիստական իրականությունը, կուսակցության, պետության, հասարակական բոլոր կազմակերպությունների բազմակողմանի աշխատանքը: Այս նպատակին են ծառայում ժողովրդական կրթության ու քաղաքական լուսավորության սիստեմը, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցները: Այս ազնիվ գործում մեծ ավանդ են ներդնում սովետական գրականությունն ու արվեստը, որոնք բովանդակությամբ սոցիալիստական են, ձևով՝ ազգային, ոգով՝ ինտերնացիոնալիստական:

Եվ որքան մենք առաջ ենք ընթանում նոր հասարակության կառուցման ուղիով, այնքան ավելի պատասխանատու է դառնում կոմունիստական ապագայի մարդու, բազմակողմանի զարգացած անհատի դաստիարակության խնդիրը: Նշելով կյանքի բոլոր ոլորտների, մեր հասարակության զարգացման համար սովետական մարդկանց գիտակցականության, կուլտուրայի, քաղաքացիական պատասխանատվության աճող դերը, ընկեր Լ. Ի. Բրեժնևն ընդգծել է. «Մարդու մեջ հասարակական վեհ նպատակների ձգտում, գաղափարական համոզվածություն, աշխատանքի նկատմամբ իսկական ստեղծագործական վերաբերմունք դաստիարակելը ամենաառաջնակարգ խնդիրներից մեկն է: Սա կոմունիզմի համար մղվող պայքարի շատ կարևոր ճակատ է, և այս ճակատում տարած մեր հաղթանակներով մեծապես կախված կլինի թե՛ տնտեսական շինարարության ընթացքը, թե՛ երկրի սոցիալ-քաղաքական զարգացումը»: Այս ցուցումները մարտական ծրագիր են կուսակցական բոլոր կազմակերպությունների համար:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման և սովետական մարդկանց կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելու համար ծավալած բազմակողմանի գործունեությունը մեր կուսակցությունը սերտորեն զուգակցում է միջազգային ասպարեզում իր մեծ ու բեղմնավոր գործունեության հետ:

Կուսակցության լենինյան արտաքին քաղաքական կուրսը, որ տրամաբանորեն բխում է նրա ներքին քաղաքականությունից, առաջին հերթին, որոշվում է աշխատավորների շահերով, խաղաղության ու սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարի շահերով: ՍՄԿԿ ջանքերն ուղղված են միջազգային բարենպաստ պայմաններ ստեղծելու նպատակին՝ մեր երկրում և եղբայրական

սոցիալիստական երկրներում նոր կյանք կառուցելու համար, ուղղված են համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համերաշխության ամրապնդման նպատակին, ազգային-ազատագրական շարժման պաշտպանության, երիտասարդ ազգային պետությունների հետ համագործակցության ընդլայնման նպատակին։

Կուսակցության XXV համագումարի առաջադրած՝ խաղաղության ու միջազգային համագործակցության համար, ժողովուրդների ազատության ու անկախության համար հետագա պայքարի ծրագրի իրականացման նպատակով վիթխարի, հիրավի տիտանական աշխատանք են կատարում Կենտրոնական կոմիտեն, նրա քաղբյուրոն, անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը։ Նա ակնառու դեր է խաղում մեր կուսակցության ու սովետական պետության լենինյան արտաքին քաղաքական կուրսի մշակման և իրականացման գործում։ Նրա անվան, նրա նպատակաուղղված ու բեղմնավոր գործունեության հետ են անխզելիորեն կապվում այն դրական արդյունքները, որ վերջին տարիներս ձեռք են բերվել միջազգային լարվածության թուլացման, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականության հաստատման, սպառազինությունների մրցավազքի զսպման և միջուկային պատերազմի վտանգի նվազեցման գործում։

Այս հաջողությունները սովետական միլիոնավոր մարդկանց ստեղծագործ աշխատանքի, մեր ողջ կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների ու կադրերի հսկայական ջանքերի, նրանց կողմից ինտերնացիոնալ պարտքի ըմբռնման ու կատարման արդյունք են։

ՍՄԿԿ-ի և սովետական պետության արտաքին քաղաքական գործունեությունը լայն ճանաչում է գտել առաջադեմ մարդկության շրջանում։ Բոլոր մայրցամաքների ժողովուրդները Սովետական Միությունն իրավամբ համարում են խաղաղության ամենահավատարիմ ու հետևողական պաշտպանը։ Սա իր նոր վառ հաստատումը գտավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի հանդիսավոր տոնակատարության կապակցությամբ արտասահմանյան հյուրերի ողջույնի ելույթներում։

Մեր կուսակցության կուրսը երկրի ներսում և համաշխարհային ասպարեզում, նրա մտադրություններն ու ձգտումներն ուղղված են այն բանին, որ ամեն անհրաժեշտ բան արվի մարդու բարօրության համար, հանուն մարդու։ Կուսակցության այս մեծագույն, մարդասիրական նպատակը նրան հարազատացնում է ժողովրդի հետ, նրանց կապում է սերտ, անխզելի կապերով։ Ժողովուրդը վստահում է կուսակցությանը, ամբողջովին պաշտպանում նրա ներքին ու արտաքին քաղաքականությունը, մի բան, որ տասնապատկում է նրա ուժերը, նրա համար դառնում անսպառ եռանդի աղբյուր։

Կուսակցությունը թանկ է գնահատում մասսաների վստահությունը՝ որպես անգին հարստություն։ Ջանալով միշտ ու ամեն ինչում լինել իր պատմական պատասխանատվության բարձունքում, նա կուսակցության բոլոր կազմակերպություններից, ամեն մի կոմունիստից պահանջում է ընդլայնել և խորացնել կապը մասսաների հետ, ընթանալ կոմունիզմի կառուցման վեհ պլանների իրականացման համար մղվող պայքարի ավանգարդում։

Որքանով սովետական հասարակությունը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ և ուղեցույց ներգործությամբ առաջ ընթանալով հասնում է հասունության առավել բարձր մակարդակի, կուսակցությունը ևս առաջադիմում է, զարգանում։ Արդի փուլում կուսակցության զարգացման օրինաչափությունները, լենինյան նորմերի և սկզբունքների հիման վրա նրա գործունեության և ամբողջ ներքին կյանքի կատարելագործման ուղիները խորապես բացահայտվել են XXV համագումարի որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում։

Կուսակցական շինարարության թե՛ տեսության և թե՛ պրակտիկայի տեսակետից սկզբունքային նշանակություն ունի համագումարի այն եզրակացությունը, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ ՍՄԿԿ-ն դարձել է ամբողջ ժողովրդի կուսակցություն, նա ամենևին էլ չի կորցնում իր դասակար-



գային բնույթը, իր էությամբ եղել ու մնում է որպես բանվոր դասակարգի կուսակցություն։

Դասակարգայինի և համաժողովրդականի միասնությունը, դիալեկտիկական փոխադարձ կապը կուսակցության կյանքի ու գործունեության մեջ դրսևորվում է ամենից առաջ այն բանում, որ նրա քաղաքականությունը, մարմնավորելով բանվոր դասակարգի վերջնական ու մերձավոր նպատակները, աշխատավորների ողջ մասսայի կողմից ընդունվում է որպես հարազատ, կենսական գործ։ Դա արտահայտվում է, այնուհետև, այն բանում, որ մարքսիզմ-լենինիզմը, լինելով բանվոր դասակարգի գաղափարախոսություն, դարձել է մեր հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի գաղափարախոսությունը։ Դա արտացոլվում է նաև կուսակցության կազմի ձևավորման, ներկուսակցական հարաբերությունների ողջ սիստեմի հետագա կատարելագործման մեջ։

Սոցիալիզմի ժամանակ հասարակական զարգացման ամբողջ ընթացքից, կուսակցության ղեկավար դերի և հեղինակության բարձրացումից բխող կարևորագույն օրյեկտիվ տենդենցը կուսակցական շարքերի մշտական աճն է։ Այդ պրոցեսն ուղեկցվում է նրանց որակական կազմի հետագա բարելավմամբ, նրանց գաղափարական ու կազմակերպական միասնության ամրապնդմամբ։

Ելնելով կոմունիստական շինարարության պահանջներից, ՍՄԿԿ-ն ձգտում է այնպես ձևավորել իր շարքերը, որպեսզի հետագայում ևս ամրապնդվեն նրա կապերը բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների հետ, ուժեղանա նրա ազդեցությունը հասարակական կյանքի ամենատարբեր ոլորտներում։ Կուսակցությունը ներառում է ժողովրդի առաջավոր, առավել գիտակից մասին, բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի ներկայացուցիչներին։

Վերջին տարիներին ՍՄԿԿ կազմի ձևավորման գործում տեղի են ունենում դրական պրոցեսներ, որոնք կայուն բնույթ են կրում։ Այդ մասին կարելի է դատել ըստ հետևյալ տվյալների (տոկոսներով)

| | ՍՄԿԿ սոցիալական կազմում (հունվարի 1-ի դր.) | | | ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների կազմում | | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1957 թ. | 1967 թ. | 1977 թ. | 1956 թ. | 1966 թ. | 1976 թ. |
| Բանվորներ | 32,0 | 38,1 | 42,0 | 35,8 | 45,4 | 58,6 |
| Գյուղացիներ (կոլտնտ.) | 17,3 | 16,0 | 13,6 | 23,7 | 13,7 | 10,6 |
| Ծառայողներ | 50,7 | 45,9 | 44,4 | 40,5 | 40,9 | 30,8 |
| Նրանցից՝ | | | | | | |
| ինժեներատեխնիկ. աշխատողներ և գյուղատնտ. մասնագետ. | 23,7 | 38,1 | 44,0 | 32,1 | 45,5 | 46,9 |
| Գիտութ., լուսավ., առողջապ., գրական. և արվեստի աշխատ. | 19,3 | 23,6 | 24,2 | 26,5 | 28,4 | 29,6 |

Ամենից առաջ պետք է նշել բանվորական միջուկի մշտական ամրապնդումը կուսակցության մեջ։ Նրա սոցիալական կազմում, ինչպես նաև նրա շարքերն ընդունվողների մեջ տեղի է ունենում բանվորների թվի թե՛ բացարձակ, թե՛ հարաբերական մեծացում։ Ներկայումս ՍՄԿԿ-ում կա ավելի քան 6,7 միլիոն բանվոր, որը 4,3 միլիոնով ավելի է, քան քսան տարի առաջ։ Բանվորների մեջ կուսակցական խավը, նախապատերազմյան տարիների համեմատությամբ, մեծացել է ավելի քան երկու անգամ։

Կուսակցության սոցիալական կազմում բանվորների առաջատար դիրքի ապահովումը լիովին համապատասխանում է նրա դասակարգային բնույթին և, միևնույն ժամանակ, համապատասխանում է նրա՝ որպես ամբողջ ժողովրդի կուսակցության, հետագա զարգացմանը։ Բանվոր դասակարգը սովե-

պատասխանատվությունը որոշ, խիստ ու ճշգրիտ կերպով նշված աշխատանքի կամ աշխատանքի մի մասի համար» (Հ. 30, էջ 161)։ Ամրապնդելով կոլեկտիվության սկզբունքը, կուսակցական կազմակերպությունները կոչված են վճռականորեն արմատախիլ անել աշխատանքում եղած ֆորմալիզմը, թղթամոլությունը և նիստեր անելու քաշքշուկը։ Կուսակցական կազմակերպությունների գործունեությունը գնահատվում է ոչ թե թղթերի քանակով, ոչ թե նիստերի քանակով ու տևողությամբ, այլ քաղաքական հստակ ուղղվածությամբ, գործարարությամբ, գործնական արդյունքներով։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վերջին տարիներս լուրջ միջոցներ է ձեռնարկել, որոնք նպաստում են ներկուսակցական ինֆորմացիայի դրվածքի բարելավմանը։ Այսօր դա ակտիվորեն գործող մի սիստեմ է, որն ընդհանուր կուսակցական մասշտաբով ծառայում է որպես ղեկավարման միջոց, դաստիարակության ու վերահսկողության միջոց։

Միութենական հանրապետությունների կոմկուսների Կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, քաղկոմներն ու շրջկոմները կուսակցական կազմակերպություններին ավելի լրիվ ու ավելի սիստեմատիկորեն են ինֆորմացիա տալիս իրենց գործունեության մասին, կուսակցության դիրեկտիվների և սեփական որոշումների կատարման մասին, կոմունիստների և անկուսակցականների առաջարկությունների ու քննադատական դիտողությունների իրականացման մասին։ Լայն իրազեկությունը, գործերի փաստական վիճակի իմացությունը կոմունիստներին հնարավորություն են ընձեռում ավելի խոր ըմբռնել կուսակցության քաղաքականության, ներքին և միջազգային կյանքում նրա գործնական քայլերի իմաստը, բազմակողմանիորեն քննարկել և օբյեկտիվորեն գնահատել կուսակցական ղեկավար մարմինների գործունեությունը։

Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացման համար կարևորագույն նշանակություն ունի սկզբնական կուսակցական կազմակերպությունների կենսագործունեության, աշխատանքի ձևերի ու մեթոդների մշտական կատարելագործումը։ Աճում է նրանց բարձրագույն մարմինների՝ կուսակցական ժողովների, կազմակերպող ու դաստիարակչական նշանակությունը։ Դրանք ավելի ու ավելի ակտիվորեն են նպաստում կոմունիստների նախաձեռնության և ինքնագործունեության բարձրացմանը, կուսակցության ներսում և իրենց կազմակերպություններում գործերի վիճակի համար նրանց պատասխանատվության բարձրացմանը, գործարար քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը։

Շարունակ բարելավվում է կուսակցության ստորին օղակների կառուցվածքը, առանձնապես այն կապակցությամբ, որ կատարելագործվում են արտադրության կազմակերպումն ու կառավարումը, արդյունաբերության մեջ ստեղծվում են արտադրական ու գիտաարտադրական միավորումներ, գյուղատնտեսության մեջ՝ միջտնտեսային և ագրարային-արդյունաբերական միավորումներ։ Պրակտիկայում իրենց արդարացնում են կուսակցական կազմակերպությունների գործունեության կոորդինացման այնպիսի նոր ձևերը, ինչպիսիք են քարտուղարների խորհուրդները, կուսակցական ակտիվի համատեղ ժողովների անցկացումը։ Կուսկազմակերպությունների ցանցը գնալով ավելի ու ավելի է ճյուղավորվում։ Վերջին հինգ տարում սկզբնական կազմակերպությունների թիվը մեծացավ ավելի քան 20 հազարով, իսկ այն կազմակերպությունների թիվը, որտեղ կազմվել են կուսկոմիտեներ՝ 4,7 հազարով։ Այդ նույն ժամանակամիջոցում արտադրամասային կազմակերպությունների թիվն աճել է 50, իսկ կուսակցական խմբերինը՝ ավելի քան 87 հազարով։

Այս ամենը նպաստում է սկզբնական կուսկազմակերպությունների դերի բարձրացմանը, կազմակերպություններ, որոնք աշխատանքային կոլեկտիվների քաղաքական միջուկն են և կուսակցության քաղաքականությունը միացնում են մասսաների կենդանի ստեղծագործության հետ։

Մեր կուսակցության վիթխարի կենսական ուժն այն է, որ նրան հատուկ խոր դեմոկրատիզմը սերտորեն զուգորդվում է բարձր կազմակերպվածության



և կարգապահության հետ, որ ներկուսակցական բոլոր հարաբերությունները կառուցվում են կուսակցության անդամների ակտիվության ու պատասխանատվության օրգանական միասնության վրա, նրանց իրավունքների ու պարտականությունների վրա, կարծիքների ազատության և գործողությունների անհրաժեշտության վրա՝ կոլեկտիվ մշակված որոշումների ոգով։

Մեր սոցիալիստական իրականության նշանակալի առանձնահատկություններից մեկն այն է, որ կուսակցությանը բնորոշ դեմոկրատական կենսաձևը և աշխատանքի իսկական կոլեկտիվ մեթոդները, բարձր կազմակերպվածությունն ու կարգապահությունը գնալով ավելի ամբողջական և ավելի խորն են հաստատվում բոլոր պետական ու հասարակական կազմակերպությունների, աշխատանքային կոլեկտիվների գործունեության մեջ։ Այլ խոսքով ասած, գործով իրականացվում է ծրագրային այն դրույթը, թե կուսակցությունը, որպես կոմունիստական հասարակություն կառուցող ժողովրդի առաջավոր ջոկատ, առջևում է նաև իր ներքին կյանքի կազմակերպմամբ, ցույց տալով կոմունիստական հասարակական ինքնակառավարման ավելի կատարելագործված ձևերի մշակման օրինակ ու նմուշ։

***

Սովետական ժողովուրդը վստահորեն, հաստատուն քայլերով ընթանում է դեպի բաղձալի նպատակը՝ դեպի կոմունիզմ։ Այդ ճանապարհին նա ձեռք է բերել հիրավի զարմանալի նշանակություն ունեցող հաջողություններ, ստեղծվել է մի հասարակություն, որն ունի նյութական ու հոգևոր չտեսնված պոտենցիալ, անսպառ հնարավորություններ։ Առջևում մեզ սպասում են նոր, մեծ գործեր։ Եվ կնվաճվի այն ամենը, ինչի մասին խորհում են սովետական մարդիկ, ինչի ձգտում են նրանք։ Դրա հուսալի երաշխիքը լենինյան կուսակցության՝ մեր հասարակության այդ ուղղություն տվող, կազմակերպող ու մոբիլիզացնող ուժի, հեռատես ղեկավարումն է։

Партийная жизнь № 23, 1977 г.

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

**Ց. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ թղթակից անդամ

*ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ, ինչպես և ռեալ իրականության մեջ եղած ամեն ինչ, ենթարկվում է դիալեկտիկական զարգացման համընդհանուր օրենքներին: Հիշենք Վ. Ի. Լենինի հետևյալ դրույթը. «Ինչ հասարակական երևույթ էլ քննելու լինենք նրա զարգացման պրոցեսում, նրա մեջ միշտ էլ կլինեն անցյալի մնացորդներ, ներկայի հիմքեր և ապագայի սաղմեր» (Վ. Ի. Լենին,* Երկերի լիակ. ժող.*, հ. 1, էջ 213): Այդ դրույթը վերաբերում է նաև կոմունիստական հասարակարգի նախապատրաստման, կազմավորման ու ծաղկման օրինաչափություններին և մեթոդոլոգիական ընդհանուր տեսական հիմք է ծառայում հասուն սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պրոցեսի, ինչպես և սոցիալիստական ապրելակերպի համակողմանի զարգացման, կատարելագործման և կոմունիստականի վերաճման պրոբլեմների ուսումնասիրման համար:*

*Լենինյան հիմնարար դրույթների ոգով էլ ընկ. Լ. Ի. Բրեժնևը վերլուծելով հասուն սոցիալիզմը՝ որպես կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ճանապարհին զարգացման համեմատաբար մի տևական շրջան, ասաց. «...զարգացած սոցիալիզմի բոլոր հնարավորությունների իմացությունը և օգտագործումը միաժամանակ նաև անցում է դեպի կոմունիզմի կառուցումը: Ապագան ներկայի սահմանից դուրս չէ: Ապագան ներկայի մեջ է: Եվ, լուծելով այսօրվա սոցիալիստական օրվա խնդիրները, մենք հետզհետե թևակոխում ենք վաղվա օրը՝ կոմունիստական օրը» (Լ. Ի. Բրեժնև,* ՍՍՀՄ Սահմանադրության (Հիմնական օրենքի) նախագծի և նրա համաժողովրդական քննարկման արդյունքների մասին, *«Հայաստան» հրատ., 1977 թ., էջ 32):*

*Սոցիալիստական ապրելակերպի աստիճանական վերաճումը կոմունիստականի շատ բազմակողմանի, բարդ ու տևական պրոցես է: Ըստ էության, այն ընդգրկում է մարդու և հասարակության կենսագործունեության բոլոր ոլորտները: Այդ պրոցեսի շատ երևույթներ նոր են միայն սաղմնավորվում և պահանջում են ոչ միայն ուշադրություն, այլև փութաջան արմատավորում, հոգատարություն և համակողմանի հասարակական պաշտպանություն:*

*Մեր կարծիքով, այդ պրոցեսն անհրաժեշտ է քննության առնել երկու առումով: Նախ՝ կոմունիզմի կառուցման ընդհանուր պրոբլեմների մշակումը զուգակցել սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման առանձնահատկությունների բացահայտման հետ: Երկրորդ՝ սոցիալիստական ապրելակերպը պետք է ուսումնասիրվի՝ առնչված նրա զարգացման հեռանկարների հետ, ապագա կոմունիստական ապրելակերպի՝ նրա վերաճման պլանով:*

*Ընդսմին, անհրաժեշտ է խուսափել երկու ծայրահեղություններից: Մի կողմից, չպետք է ելնել այն նախադրյալից, որ սոցիալիստական, առավել ևս՝ կոմունիստական ապրելակերպը, ինչպես գրում են որոշ հեղինակներ, առաջանում է դեռևս կապիտալիզմի ընդերքում: Նման մեկնաբանությունը, որով իրար հետ շփոթվում են սոցիալիզմի նախադրյալներն ու ռեալ սոցիալիզմը և նույնացվում՝ կոմունիզմի երկու փուլերը, վերացնում է կապիտալիզմի հեղափոխական վերափոխման անհրաժեշտությունը և ժխտում է կոմունիզմին անցնելու մի ամբողջ տևական պատմական շրջանի անխուսափելիությունը: Մյուս կողմից, հետազոտելով սոցիալիստական ապրելակերպի բնորոշ գծերն ու առանձնահատկությունները, հարկավոր չէ աչքաթող անել նաև ապագա կոմունիստական ապրելակերպի ծիլերն ու սաղմերը: Քննելով զարգացած սոցիալիզմի շարժման ռեալ պրոցեսը, ուսումնասիրելով անցյալի վերապրուկների պատճառներն ու դրսևորումները, սոցիալական կյանքի ոլորտի թերությունները, անհրաժեշտ է առաջ նայել, հանգամանորեն փնտրել ու ընդհանրացնել նորի սկիզբը, ապագա կոմունիստական ապրելակերպի ծիլերը:*

*ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում գլխավոր հիմնարար պրոբլեմների թվում առանձնացվում է սովետական հասարակության զարգացման երկու անխզելի կողմերի՝ հասուն սոցիալիզմի կատարելագործման և աստիճանաբար կոմունիզմի անցման կենդանի դիալեկտիկայի ուսումնասիրման անհրաժեշտությունը:*

*Դա լրիվ չափով վերաբերում է նաև սոցիալիստական ապրելակերպին՝ որպես պատմականորեն նախորդած բոլոր հասարակական կարգերի համեմատությամբ նոր հասարակական կարգի արմատական առավելությունների խտացված արտահայտությունը մարդկանց կենսագործունեության մեջ:*

*Ինչպես արդեն նշվել է մեր գրականության մեջ, անհիմն է սոցիալիստական ապրելակերպը նույնացնել ամբողջ հասարակական կարգի, ամբողջ կոմունիստական ֆորմացիայի հետ: Նման լայն մեկնաբանությունը հնարավորություն չի տալիս անջատել սոցիալիստական ապրելակերպի առանձնահատկությունը՝ ի տարբերություն ավելի ընդհանուր «սոցիալիստական հասարակական կարգ» հասկացության: Մինչդեռ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում և կուսակցության մյուս ծրագրային փաստաթղթերում սոցիալիստական ապրելակերպի կատարելագործումն առանձնացվում է որպես կոմունիզմի կառուցման յուրահատուկ խնդիր՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների զարգացման և անհատի կոմունիստական դաստիարակության հետ միասին:*

*Հարկավոր է, սակայն, խուսափել նաև սոցիալիստական ապրելակերպի չափազանց նեղ մեկնաբանումից՝ այն հանգեցնելով լոկ մարդու վարվելակերպին՝ անձնական կյանքում: Նման մեկնաբանությունը հնարավորություն չի տալիս լիովին բացահայտել ու ցույց տալ նոր հասարակական կարգի ողջ կացութաձևով պայմանավորվող սոցիալիստական ապրելակերպի արմատական և սկզբունքային առավելությունները: Իրականում սոցիալիստական ապրելակերպը մարդկանց կենսագործունեության ընդհանրացնող արտահայտությունն է կոմունիստական ֆորմացիայի ձևավորման ու զարգացման պայմաններում:*

*Կոմունիզմի երկու փուլերի ընդհանուր գծերն ու էական տարբերությունները, նրանց զարգացման դիալեկտիկան լրիվ չափով վերաբերում են սոցիալիստական և կոմունիստական ապրելակերպին:*

*Սոցիալիզմի հիմնական սկզբունքների ըստ ամենայնի ամրապնդման ու զարգացման միջոցով տեղի է ունենում նրա աստիճանական վերաճումը հասարակական-պատմական զարգացման իր բարձրագույն փուլին՝ կոմունիզմին: Նոր ֆորմացիայի ձևավորման այդ ընդհանուր օրինաչափության լույսի տակ մենք կարող ենք հետևություն անել, որ սոցիալիստական ապրելակերպի կատարելագործումն արդեն այժմ նպաստում է ապագա կոմունիստական ապրելակերպի տարրերի աստիճանական առաջացմանն ու հասունացմանը:*

*Այդ օրինաչափության մասին պարզ պատկերացում կազմելու համար անհրաժեշտ է ղեկավարվել ամենայն նորը, առաջավորը, իսկական կոմունիստականը ըստ ամենայնի պաշտպանելու անհրաժեշտության մասին Լենինի մեթոդոլոգիական հիմնական դրույթով: Լենինը շեշտում էր. «Մենք պետք է մանրազնին ուսումնասիրենք նորի ծիլերը, ամենաուշադիր կերպով վերաբերվենք նրանց, ամեն կերպ օգնենք նրանց աճմանը և «խնամենք» այդ թույլ ծիլերը: Անխուսափելի է, որ դրանցից մի քանիսը կկործանվեն... Բանն այդ չէ: Բանն այն է, որ պետք է պաշտպանել նորի բոլոր և ամեն տեսակ ծիլերը,*

որոնցից կյանքը կվերցնի ամենից կենսունակները» (Երկեր, հ. 29, էջ 521—522):

Պակաս կարևոր չէ նաև Լենինի մեթոդոլոգիական մյուս դրույթը իսկական նորի, պատմականորեն անխուսափելիի անհաղթահարելիության մասին: «Ինչո՞ւ ապագայի մասին խոսելով՝ Մարքսը գործածում է ներկա ժամանակը»,— հարցնում է Վ. Ի. Լենինը և պատասխանում. «...ներկան գործ է ածվում ապագայի փոխարեն և՛ այն ժամանակ, երբ այս ապագան անխուսափելի և անտարակուսելի է թվում» (Երկերի լիակ. ժող., հ. 1, էջ 206): Ավելի ուշ, բազմիցս շեշտելով մարքսիզմի այդ լավատեսական հավատը կոմունիզմի հաղթանակի նկատմամբ, Վ. Ի. Լենինը նշում էր «...ապագան աներկյուղ կանխատեսելու և նրա իրագործմանն ուղղված համարձակ պրակտիկ գործունեության...» անհրաժեշտությունը (Երկեր, հ. 21, էջ 78):

Իսկ ռեալ կյանքում, սոցիալիստական ապրելակերպի հիմնական գծերի զարգացման ու կատարելագործման պրոցեսում ինչպե՞ս են ծագում ապագա կոմունիստական ապրելակերպի տարրերը: Կոմունիստական կուսակցության նպատակամղված ղեկավարությունն ինչպե՞ս է ազդում այդ նորի ձևավորման վրա՝ հնի մնացորդների հաղթահարման պրոցեսում:

Այդ պրոբլեմների բովանդակությունը կարելի է համառոտակի բացահայտել արդի հասարակական կյանքի մի քանի հիմնական ոլորտների զարգացման օրինակով:

Սկսենք մարդկանց կենսագործունեության գլխավոր ոլորտի՝ աշխատանքի քննարկումից, որը եղել է, կա և կոմունիզմի ժամանակ կլինի հասարակության, անհատի գոյության ու զարգացման հիմնական աղբյուրը: Այդ դրույթը հատկապես կարևոր է շեշտել, քանի որ կոմունիզմի ժամանակ աշխատանքն ամենևին չի դադարի կյանքի միջոց լինելուց: Այստեղ կարևոր է հիշել Կ. Մարքսի մի ասույթը, ըստ որի կոմունիզմի ժամանակ աշխատանքը կլինի ոչ միայն կենսամիջոց, այլև կդառնա առաջին կենսական պահանջմունք: Այստեղից էլ կոմունիզմի երկու փուլերի հիմնական սկզբունքների ընդհանուր գիծը՝ «յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների»: Այլ կերպ ասած, և՛ սոցիալիզմի, և՛ կոմունիզմի ժամանակ հասարակության հանդեպ անհատի ամենաառաջին պարտականությունն է անձնվիրաբար աշխատել իր ընդունակություններին համապատասխան: Աշխատանքային գործունեությունը սոցիալիզմի պայմաններում կազմակերպվում է համապետական մասշտաբով՝ հօգուտ բոլոր աշխատավորների: Լենինը դրա մեջ էր տեսնում նոր ապրելակերպի տարբերությունը հնից, մի տարբերություն, որի հիմքում ընկած է «հարկադրական աշխատանքի մեծ փոխարինումն իր համար կատարվող աշխատանքով, պլանաչափորեն կազմակերպված հսկայական համապետական (որոշ չափով նաև միջազգային, համաշխարհային) մասշտաբի աշխատանքով» (Երկեր, հ. 26, էջ 495): Այժմ կարելի է վստահությամբ խոսել այն մասին, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մասշտաբով տեղի է ունենում աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի հաստատում: Դա համաշխարհային սոցիալիզմի մեծագույն նվաճումն է և այն նշանավոր հատկանիշը, որը վկայում է սոցիալիստական ապրելակերպի հաստատման և աստիճանաբար կոմունիստականի վերաճման պրոցեսի արդյունավետության մասին:

Որքան աշխատավորներն ավելի խորն են գիտակցում իրենց պարտականությունը, այն կատարում կամովին, ստեղծագործաբար, հատկապես գիտության ու տեխնիկայի բարձրագույն նվաճումների հիման վրա, այնքան աշխատանքը դառնում է ամենաառաջին կենսական պահանջմունք, բերկրանք, անհատի համակողմանի զարգացման աղբյուր: Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ծիլերը ծագել են դեռ սովետական իշխանության կազմավորման արշալույսին, առաջին կոմունիստական շաբաթօրյակներում: Այժմ հանրային արտադրության ոլորտում հաստատվում են սոցիալիստական մրցության բարձրագույն ձևեր, որոնք հիմնված են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի վրա: Շեշտելով սոցիալիստական ապրելակերպի այդ կարևորագույն բնորոշ հատկանիշը, Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Կոմունիստական շինարարությունը ծնում է աշխատանքի իսկական



հերոսներ, մարդիկ, որոնք մարմնավորում են մեր սովետական ապրելակերպը: Նրանք ցույց են տալիս բարձր գիտակցականության հրաշալի օրինակներ, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակներ» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 113):

Այդ նորը, իսկական կոմունիստականն առաջանում է հասարակության սոցիալական կյանքի զարգացման մեջ եղած վերապրուկների ու հակասությունների հաղթահարման համար մղվող պայքարի պրոցեսում: Դրանց թվին կարելի է դասել զարգացած սոցիալիզմի համար բնորոշ այն հակասությունը, որն առաջացել է հասարակական գիտակցության մեջ կատարված այնպիսի մի դրական տեղաշարժի հետևանքով, ինչպիսին է սոցիալական հավասարության զգացումի արագ աճը հասարակության բոլոր անդամների մոտ: Այդ նորն արտացոլում է սոցիալիստական հասարակական հարաբերությունների հասունությունը, երբ մասսաների և յուրաքանչյուր անհատի գիտակցական ստեղծագործությունը տեղի է ունենում գիտատեխնիկական հեղափոխության ծավալման պայմաններում, որն անհրաժեշտ նյութական և հոգևոր նախադրյալներ է ստեղծում անհատի աճող պահանջմունքները բավարարելու համար: Սոցիալական հավասարության զգացումի աճի անխուսափելիությունը, նշում էր Վ. Ի. Լենինը, «...դա էլ հենց սոցիալիզմ է, երբ յուրաքանչյուրը ցանկանում է լավացնել իր դրությունը, երբ բոլորն ուզում են օգտվել կյանքի բարիքներից» (Երկեր, հ. 27, էջ 648): Բայց սոցիալական հավասարության այդ աճող զգացումը հակասության մեջ է մտնում դեռևս գոյություն ունեցող, սոցիալիզմի օրոք անխուսափելի տնտեսական որոշ անհավասարության հետ:

Սոցիալիստական հասարակության կյանքը վկայում է, որ բանվոր դասակարգը ցույց է տալիս հասարակության և յուրաքանչյուր առանձին անհատի օգտին ազնիվ ու անձնվեր աշխատանքի պրոցեսում այդ հակասությունն աստիճանաբար հաղթահարելու օրինակներ: Անշեղորեն բարձրացնելով իր կուլտուր-տեխնիկական մակարդակը, ծավալելով սոցիալիստական մրցությունը, բանվոր դասակարգը բնակչության բոլոր խավերին օրինակ է ցույց տալիս, թե ինչպես է հարկավոր ավելի շատ բան տալ հասարակությանը և ավելի շատ ստանալ՝ ըստ աշխատանքի:

Բայց, ցավոք, կան որոշ կատեգորիայի մարդիկ, որոնք փորձում են այդ օբյեկտիվ հակասությունն օգտագործել շահախնդրական նպատակներով, հասարակությունից յուրացնելով ու խլելով ավելի շատ, քան նրանց հասնում է ըստ աշխատանքի: Այստեղից էլ սկսվում են գողությունը, հափշտակությունները, իրավունքի և բարոյականության սոցիալիստական նորմերի խախտումները: Այդ կատեգորիայի մարդկանց դեմ՝ անկախ նրանց գրաված դիրքից, սովետական պետությունը, ներքին գործերի մարմինները, հասարակության բոլոր առաջավոր ուժերը անհաշտ պայքար են մղում ինչպես դաստիարակության, այնպես էլ հարկադրանքի միջոցներով:

Արդի պայմաններում կարևոր է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումը՝ հատկապես սոցիալիստական մրցության ծավալման պրոցեսում: Սոցիալիստական մրցությունն առանձին թափ ստացավ մեծ Հոկտեմբերի 60-ամյակի կապակցությամբ: Երկրի ավելի քան 100 միլիոն աշխատավորներ մրցություն ծավալեցին «Հոբելյանական հերթափոխին՝ հարվածային ավարտ», «Արդյունավետության և որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք», «Ոչ մի հետ մնացող քո կողքին» լոզունգներով: Ժողովրդական մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն առաջադրում է սոցիալիստական մրցության՝ որպես կոմունիստական շինարարության հզոր մեթոդի, նորանոր ձևեր: Սոցիալիստական մրցության համաժողովրդական թափի և նրա բարձրագույն ձևերի շնորհիվ հաղթահարվում են բազմաթիվ դժվարություններ, լուծվում ժողովրդատնտեսական խոշորագույն խնդիրներ ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության մեջ:

Այդ պրոցեսում էական դեր է պատկանում սոցիալիստական կարգի պայմաններում այնքան կարևոր սոցիալական ընդհանուր բջիջին, ինչպիսին է աշխատանքային, արտադրական կոլեկտիվը, որտեղ ավելի ու ավելի լրիվ շա-

նավորված նորմաների հետ, այլ ամենից առաջ ամբողջ բարենպաստ, մարդասիրական սոցիալական մթնոլորտի հետ, որը ձևավորվում է հասարակության մեջ, կոլեկտիվում, ընտանիքում:

Այդ պրոցեսում կարևոր դեր է պատկանում ընտանիքին: Ընտանիքը եղել է, կա և կոմունիզմի ժամանակ կլինի այն սկզբնական սոցիալական բջիջը, որտեղ ծնվում և սկսում են դաստիարակվել մարդիկ: Սոցիալիզմի ժամանակ ընտանիքի մահացման և կոմունիզմի օրոք նրա անհետացման մասին ամեն տեսակ դատողությունները ընդհանուր ոչինչ չունեն գիտական կոմունիզմի տեսության հետ: Նման պատկերացումները հետևանք են այն բանի, որ այդ կերպ դատողները ինքնաբավ են դարձնում ընտանեկան-ամուսնական հարաբերությունների հակասական զարգացման որոշ կողմերը, մասնավորապես, ապահարզանների ժամանակավոր աճը երկրի որոշ շրջաններում: Այդ հակասական պրոցեսների մեջ կարևոր է տեսնել կոմունիզմի այն ծիլերը, որոնք կապված են շահադիտորեն կնքվող ամուսնությունների քայքայման և միայն սիրով կնքվող ամուսնությունների աճի հետ: Եթե անցյալում, ինչպես ժողովուրդն է ասում, գրեթե ոչ մի թագավոր չէր կարողանում ամուսնանալ սիրով, ապա զարգացած սոցիալիզմի պայմաններում տասնյակ միլիոնավոր մարդիկ, իսկ կոմունիզմի ժամանակ աշխատավորները ամուսնություն կկնքեն միայն սիրով: Այդ միակ խելացի հիմքի վրա էլ աճում, զարգանում և ընդհանուր առմամբ ամրապնդվում է սովետական ընտանիքը: Այս առաջատար միտումը ուժեղանալու է սոցիալիզմից կոմունիզմին անցնելու հետ զուգընթաց, որը սոցիալիստական ապրելակերպը կոմունիստականի վերաճելու կարևոր ցուցանիշ է:

Սոցիալիստական ապրելակերպը, որը աստիճանաբար վերաճում է կոմունիստականի, ավելի ու ավելի շատ է պահանջում մարդկանց, աշխատավորների, համախոհների միջև զարգացնել զգայուն ու բարի հարաբերություններ, իսկական բարեկամություն և փոխօգնություն, անկեղծ մարդկայնություն և լավատեսություն: Այդ կոմունիստական հոգևոր գծերի ակտիվ հաստատման հետ միաժամանակ, նոր ապրելակերպը պահանջում է արմատախիլ անել մարդկային թերությունների այնպիսի դրսևորումներ, ինչպիսիք են քաղքենիությունը, ատելությունը, չարությունը, ագահությունը, նախանձն ու մարդկանց գիտակցության և վարքագծի մեջ եղած հնի մյուս վերապրուկները:

Նոր հասարակարգի բոլոր առաջադիմական ատրիբուտները բարենպաստ պայմաններ են ստեղծում մարդկանց ֆիզիոլոգիական և հոգեկան վիճակները նորմալացնելու համար, նպաստելով նոր մարդու՝ կոմունիստական ապրելակերպի կրողի կատարելագործմանը:

Անհատի հոգևոր ծաղկումը բնութագրվում է մարքս-լենինյան աշխարհայացքի ստեղծագործական տիրապետմամբ, կոմունիստական իդեալների հաղթանակի նկատմամբ ունեցած աներեր հավատով, անհողդողդ լավատեսությամբ, հասարակական կյանքի բոլոր երևույթների նկատմամբ խելացի, գիտականորեն հիմնավորված վերաբերմունքով, որը բացառում է կրոնական նախապաշարմունքները, մարդկանց գիտակցության մեջ և վարքագծում եղած հնի վերապրուկների բոլոր փաստերն ու դրսևորումները: Անհատի իսկական կոմունիստական գծերը ձևավորվում են կոմպլեքսային դաստիարակության պրոցեսում, որը միավորում է աշխատանքային, գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակությունը: Համակողմանի զարգացած կոմունիստական անհատի դաստիարակության այդ դիալեկտիկական պրոցեսը տեղի է ունենում հակասականորեն, անհամաչափ: Արդի պայմաններում բարոյական դաստիարակությունը որոշ չափով ետ է մնում գաղափարաքաղաքական և աշխատանքային դաստիարակությունից. դրա կոնկրետ դրսևորումն են մասնավորապես դեռ կենսափորձ ու անհրաժեշտ կոփվածք չունեցող մեր երիտասարդության առանձին ներկայացուցիչների՝ կոմունիստական բարոյականության նորմերի խախտումները: Սպառողական վերաբերմունքը կյանքի նկատմամբ, իրերի պաշտամունքը և մյուս բացասական երևույթները հակասում են



սովետական հասարակության վերընթաց զարգացմանը դեպի կոմունիզմ:

Մեր ապրելակերպի կոմունիստական ակնբախ հատկանիշները վառ կերպով դրսևորվում են մարդկանց կենսագործունեության նոր բովանդակության, նրանց սոցիալական ստեղծագործության ու քաղաքացիական ակտիվության, բարոյական ու գեղագիտական բարձր հատկությունների զարգացման մեջ: Իր իսկ մարդու, կոմունիստական նոր տիպի անհատի ձևավորման մեջ են առավել վառ ու հետևողականորեն բացահայտվում սոցիալիստական ապրելակերպում տեղի ունեցող խորքային այլ պրոցեսները:

Սովետական մարդը՝ ապագա կոմունիստական հասարակարգի այդ առաջամարտիկը, այժմ արդեն իր գործերով ու խոհերով վիթխարի ազդեցություն է ունենում ողջ մարդկության պրոգրեսիվ զարգացման վրա: Այդ գաղափարը շատ լավ է արտահայտել անգլիացի գրող Ջեյմս Օլդրիջը: Իր «Նոր հասարակությունը նոր մարդ է ծնում» հոդվածում նա գրում է.

«Սոցիալիզմի երկրի երևան գալը 1917 թվականին քաղաքացիների հոգում բուռն ցանկություն առաջացրեց գտնելու նոր մարդուն, այն մարդուն, որն սկսել է վերջապես գիտակցել ինքն իրեն: Եվ այժմ, քննելով 1917 թվականից հետո այդ մարդու մեջ կատարված փոփոխությունները, կցանկանայի նշել երկու կարևոր հանգամանք: Նախ, դրանք՝ այդ փոփոխությունները, պայմանավորում են նոր մարդու՝ սոցիալիստական հասարակության անդամի ձևավորումը և, երկրորդ, այս կամ այն կերպ ներգործում են այդ հասարակությունից դուրս ապրողների վրա:

Երբ Հոկտեմբերյան հեղափոխությունը մի հարվածով ոչնչացրեց շահագործման բոլոր ձևերը, այն պետք է հնի փոխարեն գտներ նոր մտածելակերպ, բարոյական նոր չափանիշներ և հասարակական գիտակցության նոր գծեր: Այդ ամենը գիտեն սովետական մարդիկ: Վերջիվերջո դրա վրա է կառուցված կրթության նրանց ողջ սիստեմը: Բայց չի կարելի մոռանալ, որ այդ հասարակության մեջ տեղի ունեցող ամեն բանին հետևում է ողջ աշխարհը»: Իր հոդվածը Օլդրիջը վերջացնում է հետևյալ խոսքերով. «Համեմատելով սոցիալիստական հասարակության և կապիտալիստական ամեն մի երկրի կենսապայմանները, առաջին հերթին, տեսնում ես, որ նոր սոցիալիստական հասարակության զարգացմանը զուգընթաց փոխվում է մարդը: Նրա հույսերն այլ են, նրա հեռանկարներն այլ են, այլ է նաև նրա հավատը մարդկության նկատմամբ: Նրա կյանքի բոլոր կողմերն էլ այլ են, քանի որ նա նայում է ապագային, իսկ այս բնագավառում նա արդեն փորձված առաջամարտիկ է» («Իզվեստիա», 1976 թվականի դեկտեմբերի 3):

Փորձված առաջամարտիկի այս ճիշտ ու հակիրճ, խորիմաստ բնանձևը բացառիկ ճշմարտացիությամբ արտահայտում է սովետական այն մարդու կենսագործունեության ներկան ու ապագան, որը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ձևավորվում է մեծ Լենինի գաղափարների, նրա մարդկային ու կոմունիստական վեհ հատկանիշների ոգով. այդ հատկանիշների մասին լավ է ասել Լ. Ի. Բրեժնևը.

«Լենինը մեզ համար թանկ է ոչ միայն նրա համար, որ նա մեր հեղափոխության դրոշն է, մեր կուսակցության հիմնադիրը, աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառուցողը: Նա մեզ համար թանկ ու մոտիկ է նաև նրա համար,— և, գուցե, հատկապես նրա համար,— որ նրա ստեղծագործական սուր միտքն ու անպարտելի տրամաբանությունը, վերլուծության խորությունն ու հետևությունների և գործողությունների համարձակությունը, հեղափոխականի նրա անզուսպ կրքոտությունը և դրա հետ մեկտեղ մեծագույն մարդկայնությունը, պարզությունն ու զգայուն վերաբերմունքը՝ այս ամենը մեզ համար եղել է և կլինի կյանքում կողմնորոշիչ, այսօրվա գործերում անգնահատելի հենարան և օգնություն»:

Ներկայի մեջ կոմունիզմի տարրերն ըստ ամենայնի պահպանելու և համակողմանիորեն զարգացնելու հիման վրա մոտեցնել կոմունիստական ապագան՝ այս է մեծ Հոկտեմբերի ծննդ սոցիալիզմի առաջին երկրի գլխավոր պատմական առաքելությունը և հեռանկարային ստրատեգիական խնդիրը:

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

**ՍՍՀՄ զինված ուժերի ստեղծման 60-ամյակի առթիվ մեր խըմ-
բագրության հյուրն էր Հայրենական պատերազմի մասնակից, պաշ-
տոնաթող գեներալ-մայոր ՀԱՅԿ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ:
Ստորև հրապարակում ենք նրա զրույցը սովետական բանակի ան-
ցած փառապանծ ուղու մասին:**

*ՍՍՀՄ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԸ, որ դասակարգային էությամբ և
քաղաքական կոչմամբ սկզբունքորեն տարբեր են
իրենց նախորդներից, նոր, սոցիալիստական տիպի ռազմական կազմակերպու-
թյուն են: Աշխարհում առաջին անգամ այդպիսի կազմակերպության ստեղծու-
մը պատմական նշանակություն ունեցող մի ակտ էր, մեծ Հոկտեմբերից սկըս-
ված՝ կապիտալիզմից հեղափոխականորեն սոցիալիզմի անցման դարաշրջանի
ընդհանուր օրինաչափություններից մեկի կոնկրետ արտահայտությունը:*

*Նշելով սովետական զինված ուժերի փառապանծ վաթսունամյակը, մենք
նորից ու նորից պատշաճն ենք հատուցում կոմունիստական կուսակցության
իմաստությանն ու հեռատեսությանը: Այդ նա էր, Վ. Ի. Լենինի գլխավորած կու-
սակցությունը, որ ստեղծեց ու դաստիարակեց սովետական բանակն ու ռազ-
մածովային նավատորմը՝ մեր ժողովրդի պարծանքն ու փառքը, Հոկտեմբեր-
յան սոցիալիստական մեծ հեղափոխության նվաճումների հավատարիմ պաշտ-
պանը:*

*Կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադիր
Վ. Ի. Լենինը եղել է հանճարեղ ռազմական տեսաբան: Մարքսիստական մտքի
պատմության մեջ նա առաջին անգամ մշակեց պրոլետարական հեղափոխու-
թյան ռազմական ծրագիրը, ստեղծեց ամբողջական և կուռ ուսմունք սոցիա-
լիստական հայրենիքի պաշտպանության մասին, հիմնավորեց սոցիալիստա-
կան պետության ռազմական կազմակերպության կառուցման սկզբունքները,
դրեց սովետական ռազմական գիտության և ռազմական արվեստի հիմքերը:
Դեռ մինչև Հոկտեմբերի հաղթանակը մեծ առաջնորդը հիմնավորել էր հեղա-
փոխության մեջ հաղթանակած պրոլետարիատի կողմից իր ռազմական կազ-
մակերպությունն ստեղծելու անհրաժեշտությունը: Այդ հետևությունը բխում էր
այն համոզումից, որ սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում անխուսափելիո-
րեն կառաջացնի ոչ միայն բախումներ, այլև ուրիշ երկրների բուրժուազիայի
ուղղակի ձգտում՝ ջախջախելու հաղթական պրոլետարիատին:*

*Ինչպես և կանխատեսում էր Վ. Ի. Լենինը, Հոկտեմբերյան սոցիալիստա-
կան մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո սովետների երկրի
վրա հարձակվեցին ներքին հակահեղափոխության և միջազգային իմպերիա-
լիզմի միացյալ ուժերը: Մեր երկիրն ընկավ բացառիկ բարդ ու վտանգավոր*



*իրադրության մեջ: Սովետական հանրապետության գոյությունն այն ժամա-
նակ փաստորեն հանգել էր ռազմական հարցին: Վ. Ի. Լենինը մատնանշում էր.
«Առանց սոցիալիստական հանրապետության զինված պաշտպանության մենք
գոյություն ունենալ չէինք կարող: Տիրապետող դասակարգը երբեք իր իշխա-
նությունը ճնշված դասակարգին չի տա: Սակայն վերջինս պետք է գործով ա-
պացուցի, որ ինքը ո՛չ միայն ընդունակ է շահագործողներին տապալելու, այլև
ընդունակ է կազմակերպվելու ինքնապաշտպանության համար, բախտախաղի
դնելու ամեն ինչ» (հ. 29, էջ 173—174):*

*Ռուսաստանի պրոլետարիատը, որը 1917 թ. հոկտեմբերին իր ձեռքը վերց-
րեց պետական իշխանությունը, իրոք այդ բանը գործով ապացուցեց: Արդեն
1918 թ. հունվարին սովետների Համառուսաստանյան III համագումարը հրա-
շակեց նոր բանակի ստեղծումը: Իսկ 1918 թ. հունվարի 28-ին և փետրվարի
11-ին Վ. Ի. Լենինը ստորագրեց ժողկոմխորհի դեկրետները՝ բանվորագյուղա-
ցիական բանակի և բանվորագյուղացիական կարմիր նավատորմի կազմա-
կերպման մասին: Դրանցում սահմանվում էին նոր տիպի բանակի կառուցման
հիմնական սկզբունքները, պատմության մեջ առաջին անգամ բացահայտորեն
հռչակվում էր նրա դասակարգային բնույթը: Կարմիր բանակը ստեղծվում էր
«Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները, սովետների իշխանությունը և
սոցիալիզմը պաշտպանելու համար»: Նոր տիպի բանակ ստեղծելու խնդիրը
բացառիկ բարդ էր ու դժվարին, մանավանդ, երկրում տիրող տնտեսական քայ-
քայման իրադրության, քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմա-
կան ինտերվենցիայի պայմաններում: Այդպիսի բանակ պատմության մեջ
առաջին անգամ էր ստեղծվում. չկար պրակտիկ փորձ ու նույնիսկ մշակված
տեսություն:*

*Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստական կուսակցության համաշխար-
հային-պատմական ծառայությունն այն է, որ այդ դժվարին պայմաններում
կարողացավ ստեղծել մասսայական, կանոնավոր, խիստ կարգապահ բանակ՝
միասնական կենտրոնացված կառավարմամբ և անձնակազմի հեղափոխական
բարձր. տոկունությամբ:*

*Հեղափոխությունն սկսելով պրոլետարական կարմիր գվարդիայի սակա-
վաթիվ ջոկատներով, կուսակցությունը 1918 թ. փետրվարին ստեղծեց նոր
բանակի առաջին գնդերը, իսկ քաղաքացիական պատերազմն ավարտեց հինգ
միլիոնանոց կարմիր բանակով: Այդ բանակի կազմավորման, երկրի պաշտ-
պանության ամրապնդման գործում կարևոր դեր խաղաց ՌԿ(բ)Կ VIII համա-
գումարը: Այն մշակեց կուսակցության ծրագրային դրույթները ռազմական
հարցի վերաբերյալ, ամրագրեց բանակի կառուցման և գործունեության լենին-
յան սկզբունքները:*

*Երեք տարուց ավելի կարմիր բանակը և նավատորմը հերոսական պայքար
մղեցին սպիտակգվարդիականների և ինտերվենտների դեմ, կոփվելով մարտե-
րում՝ պաշտպանեցին բանվորների և գյուղացիների սոցիալիստական նվաճում-
ները, իրենց հայրենիքի անկախությունը: Դա պատմական նշանակություն ու-
նեցող հաղթանակ էր: Կարմիր բանակը հաղթեց, որովհետև մղում էր արդա-
ր ացի, ազատագրական պատերազմ, ղեկավարվում էր սովետական առաջավոր
ռազմական գիտությամբ, որի հիմքերը դրել էր Վ. Ի. Լենինը: Եվ վերջապես
այդ հաղթանակին նպաստեց միջազգային պրոլետարիատի դասակարգային
համերաշխությունը: Բավական է ասել, որ կարմիր բանակի շարքերում ընդ-
հանուր թշնամու դեմ մարտնչում էին մոտ քառորդ միլիոն ինտերնացիոնալիստ
մարտիկներ՝ հունգարներ, լեհեր, չեխեր ու սլովակներ, գերմանացիներ և ռու-
միններ, չինացիներ և կորեացիներ, ուրիշ շատ ժողովուրդների ներկայացու-
ցիչներ:*

*Ինտերվենտների և սպիտակգվարդիականների դեմ մղված այդ պայքարում
կոմունիստական կուսակցությունը հանդես էր գալիս որպես մարտնչող կու-
սակցություն: Կոմունիստները զորքերի ցեմենտող ուժն էին: 1920 թ. ամռանը
բանակում և նավատորմում էին գտնվում կուսակցության բոլոր անդամների*

*մոտ կեսը՝ ավելի քան 300 հազար կոմունիստ, ինչպես նաև մոտ 70 հազար
կոմերիտականներ։*

*Բանակի և նավատորմի կառուցման, նրանց մարտական գործողություն-
ների ղեկավարման, երկրի պաշտպանության կազմակերպման գործում վիթ-
խարի դեր կատարեց Բանվորական և գյուղացիական պաշտպանության խոր-
հրդի նախագահ Վ. Ի. Լենինը։ Նրա գլխավորությամբ կուսակցության Կենտ-
րոնական կոմիտեն քաղաքացիական կռիվների շրջանում դարձել էր Սովետա-
կան Հանրապետության ռազմական պաշտպանության ղեկավարման իսկական
շտաբ, որը լուծում էր պատերազմի բոլոր կարևորագույն հարցերը, որոշում
ստրատեգիական պլանները, միջոցներ ձեռնարկում մարտական գործողու-
թյուններն ապահովելու, ռեզերվներ ստեղծելու, ռեսուրսները մոբիլիզացնելու
և տեղաբաշխելու համար։*

*Սովետական ժողովրդի հաղթանակը, որը հսկայական ազդեցություն ունե-
ցավ ամբողջ աշխարհի հեղափոխական ազատագրական շարժման հետագա
զարգացման վրա, սովետների երկրին հնարավորություն ընձեռեց անցնելու
խաղաղ սոցիալիստական շինարարության։ Սակայն ձեռնամուխ լինելով սո-
ցիալիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործմանը, կոմունիստական
կուսակցությունը, սովետական ժողովուրդը չէին մոռանում կապիտալիստական
շրջապատման, միջազգային իմպերիալիզմի կողմից սպասվող մշտական
սպառնալիքի մասին։*

*Ռեալ իրադրությունը պահանջում էր ցուցաբերել մեծագույն զգոնություն,
խաղաղ սոցիալիստական շինարարությունը զուգակցել երկրի պաշտպանու-
թյունն ամրապնդելու հարցերի նկատմամբ չթուլացող ուշադրության հետ։
«...Հաջողության համար արված մեր բոլոր քայլերը,— նշում էր Վ. Ի. Լենի-
նը,— մենք պետք է զուգակցենք մեր ամբողջ ռազմական պատրաստականու-
թյանը, անպայմանորեն առանց զինաթափելու մեր բանակը»* (Երկեր, *հ. 30,
էջ 579)։*

*Պատմական կարճ ժամկետներում մեր ժողովուրդը, կուսակցության ղե-
կավարությամբ, իրականացրեց երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության
կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, կառուցեց սոցիալիստա-
կան հասարակարգ։ Այդ խոր վերափոխումները հսկայական նշանակություն
ունեցան Սովետական Միության տնտեսական և պաշտպանական հզորությունն
ամրապնդելու համար։ Երկրում ստեղծվեց հզոր պաշտպանական արդյունա-
բերություն։ Մարտական ինքնաթիռների արտադրությունն ավելացավ 7,5,
ռազմանավերինը՝ 3, տանկերինը՝ ավելի քան 2 անգամ։ Ստեղծվում էին մար-
տական տեխնիկայի ու զենքի նոր նմուշներ։ Բանակը և նավատորմը թևակո-
խեցին տեխնիկական վերազինման շրջանը։ Լուրջ հաջողություններ ձեռք բեր-
վեցին սովետական ռազմական գիտության զարգացման ոլորտում։*

*Ռազմաքաղաքական իրադրությունն աշխարհում ավելի ու ավելի էր սրը-
վում։ Ծագեցին պատերազմի երկու օջախներ՝ Եվրոպայի կենտրոնում (Գեր-
մանիա) և Հեռավոր Արևելքում (միլիտարիստական Ճապոնիա)։ Միջազգային
իմպերիալիստական շրջանները ձգտում էին ստեղծել միասնական հակասովե-
տական ճակատ, իրենց հակասությունները լուծել Սովետական Միության հաշ-
վին։ Այդ կապակցությամբ կուսակցության XVIII համագումարը պահանջեց
անհապաղ իրականացնել մի շարք լրացուցիչ միջոցներ՝ սովետական պետու-
թյան պաշտպանությունն է՛լ ավելի ամրապնդելու համար։*

*Կուսակցության դրույթներին համապատասխան ուժեղացվում էր երկրի
ռազմատնտեսական հզորությունը, ինչպես նաև բարելավվում էր զինված ու-
ժերի կազմակերպական կառուցվածքը, ընդլայնվում՝ հրամանատարական և
ինժեներատեխնիկական կադրերի պատրաստումը։*

*Ճիշտ է, մինչև ֆաշիստական ագրեսորների հարձակումը չհաջողվեց երկ-
րում լիովին իրականացնել կարևոր պաշտպանական միջոցառումների ողջ
կոմպլեքսը, այնուամենայնիվ, մեր հայրենիքի ազատության և անկախության
հաջող պաշտպանության համար վճռական նախապայմաններն ստեղծվել էին։*

*Նշելով այդ մասին ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Մեր կուսակցությունը
կանխատեսել էր իմպերիալիզմի ուժերի հետ ռազմական գոտեմարտի հնարա-*



*վորությունը, երկիրն ու ժողովրդին պատրաստել պաշտպանության։ Նախա-
պատերազմյան հնգամյակների սոցիալ-տնտեսական նվաճումները, սովետա-
կան հասարակության գաղափարաքաղաքական միասնությունը, որը կոփվել
էր սոցիալիզմի կառուցման ընթացքում, դրեցին այն հաղթանակի հիմքերը, որ
մեր ժողովուրդը նվաճեց Հայրենական մեծ պատերազմում»* (Լենինյան կուր-
սով, *հ. 2, էջ 122)։*

*Իհարկե, մինչ այդ իմպերիալիստները քանիցս զգացել էին մեր բանակի
ու նավատորմի բարձր մարտունակությունը, երբ զինված կոնֆլիկտներ էին
հրահրել ՍՍՀՄ-ի արևելյան և արևմտյան սահմաններում, երբ Խասան լճի մոտ
(1938 թ.) և Խալխին-Գոլ գետի շրջանում ճապոնական զավթիչների դեմ, սպի-
տակ ֆինների զորքի դեմ (1939—1940 թթ.) մղված մարտերում սովետական
զինված ուժերը ցուցադրեցին Հոկտեմբերի նվաճումները հուսալիորեն պաշտ-
պանելու մեծ պատրաստակամություն և ունակություն։*

*Պատերազմն սկսվեց հանկարծակի, մեզ համար անբարենպաստ պայման-
ներում։ Ֆաշիստական Գերմանիան, որ Սովետական Միության վրա հարձակ-
ման պահին ստրկացրել էր գրեթե ամբողջ Եվրոպան, ագրեսիային ի սպաս
դրել իր օկուպացրած երկրների բոլոր ռեսուրսները, օգտագործելով Արևմուտ-
քում ակտիվորեն գործող ճակատի բացակայությունը, ՍՍՀՄ-ի դեմ նետեց իր
զորքերի հիմնական զանգվածը՝ 190 դիվիզիա, 4.000-ից ավելի տանկ, մոտ
5.000 ինքնաթիռ։*

*Սովետական ժողովուրդը, լենինյան կոմունիստական կուսակցության ղե-
կավարությամբ, մահացու գոտեմարտի բռնվեց վայրագ թշնամու հետ, ոտքի
ելավ՝ պաշտպանելու Հոկտեմբերի նվաճումները, հայրենիքի ազատությունը։
Այդ պատերազմում լուծվում էր աշխարհում առաջին սոցիալիստական պե-
տության բախտը, համաշխարհային քաղաքակրթության, առաջադիմության և
դեմոկրատիայի ապագան։*

*Սովետական բանակը և ռազմածովային նավատորմը դժվարին ու բարդ
իրադրության պայմաններում հմտորեն լուծեցին ոչ միայն պատերազմի առա-
ջին ժամանակաշրջանի գլխավոր՝ ստրատեգիական պաշտպանության կազմա-
կերպման, այլև հետագա հակահարձակման և ֆաշիզմի գլխովին ջախջախման*

*լուրջ ու պատասխանատու խնդիրները։*

*Հայրենական պատերազմի խոշորագույն ռազմաքաղաքական իրադարձու-
թյուններից էին Մոսկվայի, Ստալինգրադի, Կովկասի պաշտպանության հա-
մար, ինչպես նաև Կուրսկի աղեղում մղված ճակատամարտերը, որոնցում
փայլուն կերպով դրսևորվեց սովետական զինված ուժերի ռազմական ստրա-
տեգիայի առավելությունը գերմանաֆաշիստականի նկատմամբ։ Զիջելով
թվական գերակշռություն (հատկապես տանկերի և մարտական տեխնիկայի),
ծանր ու հյուծիչ մարտերում արյունաքամ անելով թշնամու հարվածային խըմ-
բավորումները, սովետական զորքերը կարողացան ոչ միայն կասեցնել նրանց
առաջխաղացումը, այլև վճռական հակահարձակման շնորհիվ ետ շպրտել։
Այդ ճակատամարտերում նվաճված հաղթանակն ամբողջ աշխարհին արդեն
համոզիչ ցուցադրեց Սովետական Միության ու նրա զինված ուժերի կարողու-
թյունը՝ սեփական ուժերով գերմանական ֆաշիզմն ու նրա դաշնակիցներին
ջախջախելու գործում։ Դրանից հետո 1944 թ., մեր զորքերն իրականացնելով
մի շարք փայլուն հարձակողական գործողություններ Լենինգրադի, Քիշինևի
մոտ, Ուկրաինայում, Բելոռուսիայում, Մերձբալթիկայում, սովետական հողը
վերջնականապես մաքրեցին զավթիչներից։ Իսկ 1945 թ. սովետական զինված
ուժերի եզրափակիչ հարվածներն Արևելյան Պրուսիայում, Արևմտյան Լեհաս-
տանում, Չեխոսլովակիայում և Բեռլինում հասցրին գերմանական ֆաշիզմի
լիակատար ջախջախման։ Կատարելով դաշնակցային պարտավորությունները,
սովետական բանակը և ռազմածովային նավատորմը այնուհետև, մոնղոլական
զորքերի հետ միասին, 23 օրում ջախջախեցին մեկ միլիոնանոց քվանտու-
նյան բանակը։*

*Ֆաշիզմի և միլիտարիզմի դեմ մղված այդ ճակատամարտում սովետական
զինված ուժերը պաշտպանեցին ոչ միայն իրենց սոցիալիստական հայրենիքի
ազատությունն ու անկախությունը, այլև, հավատարիմ իրենց ինտերնացիոնալ*

պարտքին, Եվրոպայի և Ասիայի շատ երկրների ժողովուրդներին փրկեցին
ստրկացման լծից: Մեր երկիրը իր ուսերին կրելով պատերազմի հիմնական
ծանրությունը՝ դարձավ այն գլխավոր ուժը, որը փակեց գերմանական ֆաշիզ-
մի ճանապարհը դեպի համաշխարհային տիրապետություն:
Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միությունը տարավ ռազմա-
կան, քաղաքական, տնտեսական, գաղափարական և դիվանագիտական խոշոր
հաղթանակ: Դա պատմականորեն օրինաչափ էր: Այն հանդիսացավ Հոկտեմբե-
րից ծնված սոցիալիստական կարգի հաղթանակը, կարգ, որը առանց բացա-
ռության, բոլոր ոլորտներում ցուցադրեց իր լիակատար գերազանցությունը
կապիտալիզմի նկատմամբ: Այդ հաղթանակի գլխավոր կերտողը սովետական
ժողովուրդն էր, որը կատարեց այնպիսի մի սխրագործություն, որի հավասարը
պատմությունը դեռ չի իմացել:
Պատերազմի արդյունքները համոզիչ կերպով հաստատեցին սոցիալիստա-
կան պետության ռազմական կազմակերպության հզորությունը, նրա ռազմա-
կան գիտության գերազանցությունը: Ռազմական շինարարության լենինյան
սկզբունքների վրա ստեղծված սովետական զինված ուժերը դիմացան պատե-
րազմի ամենածանր փորձություններին և խորտակեցին կապիտալիստական
աշխարհի ամենաուժեղ բանակները: Լենինիզմի գաղափարների ոգով դաստիա-
րակված սովետական ռազմիկները ցուցաբերեցին իսկական մասսայական հե-
րոսություն՝ անձնվիրաբար պաշտպանելով մեծ Հոկտեմբերի նվաճումները:
Սոցիալիստական հասարակական և պետական կարգը, բանվորների և գյուղա-
ցիների անխախտ դաշինքը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը կյանքի
կոչեցին մեծագույն ներգործուն ուժը՝ սովետական հայրենասիրությունը, որը
մեր ժողովրդի սխրագործության աղբյուրը հանդիսացավ:
Հայրենական մեծ պատերազմում նվաճված հաղթանակը ցուցադրեց ոչ
միայն մեր պետության տնտեսական հզորությունը, այլև սոցիալիստական
գաղափարախոսության ուժը: Պատերազմի տարիներին թշնամին կրեց նաև
գաղափարական պարտություն: Մարքս-լենինյան գաղափարախոսությունը մեր
հաղթանակի կարևոր գործոններից մեկն էր: Այն բազմապատկեց ժողովրդա-
կան զանգվածների ուժերը, ամրապնդեց հաղթանակի հավատը:
Սովետական ժողովրդի համաշխարհային-պատմական հաղթանակը ձեռք
բերվեց կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: Կուսակցությունը
գործի դրեց երկրի բոլոր ուժերն ու միջոցները ֆաշիզմի դեմ մղվող պայքարի
համար, ղեկավարեց հասարակական և պետական կյանքի բոլոր ոլորտները,
հմտորեն օգտագործեց քաղաքական և ռազմական ղեկավարության միասնու-
թյան սկզբունքը, որը նրան հնարավորություն տվեց պայքարի համախմբել
սովետական ողջ ժողովրդին, հասնել ռազմաճակատի և թիկունքի միասնու-
թյան: Կուսակցությունը որոշում էր պատերազմի քաղաքական և պատմա-
կան նպատակները, նրա ղեկավարությամբ նախապատրաստվում և իրակա-
նացվում էին Հայրենական մեծ պատերազմի կարևորագույն օպերացիաները,
լուծվում զինված ուժերի կառուցման, զորքերի կազմակերպման, նրանց տեխ-
նիկական հագեցման և մարտական օգտագործման հրատապ հարցերը:
Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության տարած հաղթա-
նակն ունի համաշխարհային-պատմական նշանակություն: Այն փոխեց աշ-
խարհի դեմքը, հանդիսացավ հեղափոխական պրոցեսի հզոր արագացուցիչ և
պատմության մեջ մտավ որպես երկրորդ մեծագույն իրադարձությունը Հոկ-
տեմբերյան հեղափոխությունից հետո: Դրա շնորհիվ առաջացավ սոցիալիստա-
կան սիստեմը, որն այժմ վճռական ազդեցություն է ունենում համաշխարհային
զարգացման վրա:
Վերադառնալով խաղաղ ստեղծարար աշխատանքի, սովետական ժողո-
վուրդը, կոմունիստական կուսակցությունը չէին թուլացնում զգոնությունն ու
ուշադրությունը երկրի պաշտպանության ամրապնդման հարցերի նկատմամբ:
Դա հրամայական անհրաժեշտություն էր: Նախ, այդ էին պահանջում անցած
պատերազմի դասերը, պատերազմ, որտեղ մեր երկիրը կորցրեց իր ազգային
հարստության մոտ 30 տոկոսը, 20 միլիոն մարդ: Անհրաժեշտ էր հու-
սալիորեն պահպանել այդքան թանկ գնով նվաճված խաղաղությունը: Երկ-



րորդ, որ իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանները չէին ցանկանում հաշտ-
վել կրած կորուստների, աշխարհում տեղի ունեցած հեղափոխական փոփո-
խությունների հետ: Պատերազմը վերջանալուց անմիջապես հետո նրանք վերց-
րել էին համաշխարհային սոցիալիզմը և նրա գլխավոր ուժը՝ ՍՍՀՄ-ը, քայքա-
յելու կուրս:
Կոմունիստական կուսակցության ղեկավարությունը եղել է ու մնում է սո-
վետական զինված ուժերի հզորության և անպարտելիության վճռական աղ-
բյուրը, պետական և ռազմական շինարարության հիմքն ու բարձրագույն սկզ-
բունքը: Այժմ էլ հմտորեն իրականացնելով այդ ղեկավարությունը, մեր հա-
րազատ կուսակցությունը միջազգային իրադրության և արդի աշխարհում
ռազմաքաղաքական ուժերի տեղաբաշխման մարքս-լենինյան խոր վերլուծու-
թյան հիման վրա, հաշվի առնելով հասարակական զարգացման օրենքները,
գիտության ու տեխնիկայի նվաճումները, սովետական պետության քա-
ղաքական, տնտեսական, հոգևոր և ռազմական ռեսուրսները, լուծում է ռազմա-
կան գործի զարգացման, երկրի պաշտպանական հզորության ամրապնդման,
զինված ուժերի մարտական պատրաստականության բարձրացման, նրանց զար-
գացման ու կատարելագործման խնդիրները: Այդ նպատակով ձեռնարկվող մի-
ջոցները կրում են հարկադրական բնույթ: Հետևողականորեն պայքարելով
միջազգային կյանքի դրական պրոցեսների հետագա խորացման համար, արդա-
րացի, կայուն խաղաղության համար, ՍՄԿԿ-ն դրա հետ մեկտեղ հաշվի է առ-
նում, որ չնայած իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների հնարավորու-
թյուններն այսօր զգալիորեն սահմանափակվել են, նրա ռեակցիոն դասակար-
գային էությունը մնում է նախկինը:
Իմպերիալիստական ռեակցիան փորձում է մարդկությանը վերադարձնել
սառը պատերազմի ժամանակները, ձգտում՝ ուժեղացնել սպառազինություն-
ների մրցավազքը, ավելի շատ միջոցներ հատկացնել զենքի նոր մահաբեր ու
անմարդկային սիստեմներ ստեղծելու համար: 1978 թվականի ֆինանսական
տարում ամերիկյան ռազմական ծախսերը կկազմեն 118 մլրդ դոլար: 1980
թվականի համար ենթադրվող ռազմական բյուջեն կկազմի 150 մլրդ: Անընդ-
հատ աճում են նաև ԳՖՀ-ի, Անգլիայի և ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի մյուս երկրնե-
րի ռազմական բյուջեները: Այդ միջոցների առյուծի բաժինը ծախսվում է սպա-
ռազինությունների նոր տեսակների՝ թևավոր հրթիռների, «Տրայդենտ» սիս-
տեմի սուզանավերի, միջմայրցամաքային բալիստիկ հրթիռների, լազերային և
ռադիոլոգիական զենքի, նեյտրոնային ռումբի մշակման վրա:
Արևմտյան տերությունների ազդեցիկ շրջանները շարունակում են առանց
քաշվելու միջամտել աշխարհի շատ երկրների ներքին գործերին, ուժեղացնում
են տեռորը դեմոկրատական, առաջադիմական ուժերի դեմ: Միանգամայն հաս-
կանալի է, որ այդպիսի պայմաններում ՍՄԿԿ-ն և սովետական կառավարու-
թյունն ստիպված են անհրաժեշտ միջոցներ իրականացնել՝ պատշաճ մակար-
դակի վրա պահելու մեր պետության պաշտպանական պոտենցիալը, ՍՍՀՄ
զինված ուժերի մարտական հզորությունը: Ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,
մեր կուսակցությունը ամեն ինչ անում է, «որպեսզի Սովետական Միության
փառապանծ զինված ուժերի տրամադրության տակ այսուհետև էլ բոլոր ան-
հրաժեշտ միջոցները լինեն իրենց պատասխանատու խնդիրը կատարելու հա-
մար, որպեսզի նրանք լինեն սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքի պա-
հապանը, ընդհանուր խաղաղության պատվարը» (ՍՄԿԿ XXV համագումարի
նյութերը, էջ 124—125):
Երկրի պաշտպանունակության ամրապնդումը հնարավոր է միայն բարձր
զարգացած էկոնոմիկայի և, ամենից առաջ, ինդուստրիայի բազայի վրա, որը
ընդունակ է անհրաժեշտ չափերով արտադրելու բարդ ու բազմապիսի ռազմա-
կան տեխնիկա, զենք, նյութեր և հանդերձանք: Ներկայումս մեր երկրի ին-
դուստրիալ հզորությունը 18 անգամ ավելի բարձր է այն հզորությունից, որը
մեզ համար հիմք ծառայեց Հայրենական մեծ պատերազմում հաղթանակի
հասնելու համար: Մեր հայրենիքի հետ համատեղ, տնտեսական մեծ հաջողու-
թյուններ են ձեռք բերում նաև սոցիալիզմի եղբայրական երկրները՝ արժանի

ավանդ ներդնելով սոցիալիստական համագործակցության երկրների անվտանգության ամրապնդման գործում։

Սոցիալիստական էկոնոմիկայի անշեղորեն աճող հնարավորությունները, հայրենական գիտության ու տեխնիկայի նվաճումները հնարավորություն են ընձեռում սովետական զինված ուժերը զինել բոլոր անհրաժեշտ միջոցներով՝ սոցիալիստական նվաճումները հուսալիորեն պաշտպանելու համար։ Մեր բանակն ու նավատորմը այժմ ունեն ամենաժամանակակից զենք և մարտական տեխնիկա։ Բայց սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորությունը որոշվում է ոչ միայն երկրի զարգացած էկոնոմիկայով, առաջնակարգ ռազմական տեխնիկայի բոլոր տեսակներով ու զենքով։ Այդ հզորության վճռական գործոններից են մեր ժողովրդի և բանակի անսպառ բարոյական ուժերը, նրանց անսահման նվիրվածությունը հայրենիքին, կուսակցության գործին։ Զարգացած սոցիալիստական հասարակության հոգևոր հարստության, երկրի բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների անխախտ գաղափարական միասնության մեջ, սովետական ժողովրդի միաձույլ համախմբվածության մեջ են թաքնված զինված ուժերի անձնակազմի բարոյաքաղաքական և մարտական բարձր հատկությունների, հանուն հայրենիքի սխրանքներ գործելու նրանց պատրաստակամության կենարար ակունքները։

Մեր երկրի Հիմնական օրենքի մեջ առաջին անգամ մտցված է հատուկ բաժին սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին, որը պետության կարևորագույն ֆունկցիաներից մեկն է, ամբողջ ժողովրդի գործը։ Սահմանադրության հինգերորդ գլխում ասված է. «Սոցիալիստական նվաճումները, սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը, պետության սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը պաշտպանելու նպատակով ստեղծված են ՍՍՀՄ զինված ուժեր և սահմանված է ընդհանուր զինապարտություն։

Ժողովրդի հանդեպ ՍՍՀՄ զինված ուժերի պարտքն է՝ հուսալիորեն պաշտպանել սոցիալիստական հայրենիքը, լինել մշտական մարտական պատրաստության վիճակում, որը երաշխավորի անհապաղ հակահարված ամեն մի ագրեսորի»։ Այս խոսքերում արտահայտված են սովետական զինված ուժերի պատմական կոչումն ու խնդիրները։

Վ. Ի. Լենինը, 1918 թվականի հունվարին հանդես գալով ռազմաճակատ մեկնող մարտիկների հեղափոխական ջոկատների առջև, ասում էր, որ սոցիալիստական բանակը կոչված է պաշտպանելու հեղափոխության նվաճումները, մեր ժողովրդական իշխանությունը... նոր իսկական դեմոկրատական կարգը բոլոր թշնամիներից...։ Նա սովորեցնում էր, որ ամեն մի հեղափոխություն միայն այն ժամանակ ինչ-որ բան արժե, եթե կարողանում է պաշտպանվել։ Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին լենինյան ուսմունքը դարձել է կոմունիստական կուսակցության քաղաքականության հիմքը ռազմական շինարարության բնագավառում, երկրի պաշտպանական հզորության ամրապնդման գործում։

Սոցիալիզմի նվաճումների պաշտպանությունը սոցիալիստական հեղափոխության ընդհանուր օրինաչափությունն է՝ ինչ ձևով և որ երկրում էլ որ այն կատարվի։ Դա հեղափոխության բախտի, նրա հեռանկարների, աշխատավոր մասսաների սոցիալական ապագայի հարցն է։ Սոցիալիզմի պաշտպանությունը հնարավոր ագրեսիաներից անհրաժեշտ կլինի այնքան ժամանակ, քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը։ Ելնելով սոցիալիստական հեղափոխության այդ օբյեկտիվ օրինաչափության՝ նրա զինված պաշտպանության պահանջներից, կոմունիստական կուսակցությունը սովետական զինված ուժերի ստեղծման առաջին իսկ օրից առաջնակարգ ուշադրություն է դարձնում նրանց ամրապնդմանը։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման հետ միասին ծագում և զարգացում է ստանում նաև սովետական զինված ուժերի այնպիսի մի կարևոր խնդիր, ինչպիսին է եղբայրական բանակների հետ համատեղ՝ ամբողջ սոցիալիստական համագործակցության անվտանգության ապահովումը։ Ահա արդեն 20 տարուց ավելի է, ինչ արդյունավետորեն գործում է սոցիալիստական ռազմաքաղաքական դաշինքը՝ Վարշավայի պայմանագրի կազմակեր-



պությունը, որը եղբայրական երկրների ջանքերը միավորում, կոորդինացնում է ոչ միայն քաղաքական, տնտեսական, գաղափարական բնագավառներում, այլև ռազմական ոլորտում։ Հարկավոր է հիշեցնել, որ Վարշավայի պաշտպանական պայմանագիրը կնքվել է ի պատասխան արևմտյան կապիտալիստական պետությունների ռազմական նախապատրաստությունների, որոնք միավորվել են ՆԱՏՕ-ի ագրեսիվ, հակասովետական բլոկի մեջ։

Սովետական զինված ուժերը ժողովուրդների միջազգային անվտանգության հզոր գործոն են, նոր համաշխարհային պատերազմը կանխելու գործոն։ Դրա մեջ առանձին ուժով արտահայտվում է սոցիալիստական այն դերը, որ այժմ կատարում են սոցիալիստական զինված ուժերը։ Ստեղծվում է բավական յուրահատուկ իրավիճակ. բանակը, որը դասակարգային հասարակության ողջ պատմության ընթացքում եղել է բացառապես պատերազմի գործիք, սոցիալիզմի օրով օբյեկտիվորեն դառնում է պատերազմի կանխման գործիք, խաղաղության պահպանման կարևորագույն միջոցներից մեկը։

Սովետական երկրի Հիմնական օրենքում, ՍՍՀՄ քաղաքացիների իրավունքներին, ազատություններին և պարտականություններին նվիրված բաժնում վավերագրված են բացառիկ մեծ նշանակություն ունեցող դրույթներ. «Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը ՍՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է» և «ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում զինվորական ծառայությունը սովետական քաղաքացիների պատվավոր պարտականությունն է»։

Խոսելով այդ մասին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ «...260 միլիոն սովետական մարդկանց իրավունքների, ազատությունների և անվտանգության պաշտպանությունը ոչ միայն մեր իրավունքն է, այլև մեր սրբազան պարտքը։ Պարտք այն ժողովրդի հանդեպ, որը 60 տարի առաջ Լենինի կուսակցության ղեկավարությամբ բռնեց սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղին։ Այն ժողովրդի հանդեպ, որը, պաշտպանելով սոցիալիստական հայրենիքը, իր ուզած ձևով ապրելու իր իրավունքը, 20 միլիոն զոհ տվեց ֆաշիստ ագրեսորների դեմ, հենց ժողովուրդների ազատության ու իրավունքների համար մղված մեծ պատերազմում, և որն իր ուղուց երբեք չի շեղվի» (Լ. Ի. Բրեժնև, Սովետական արհմիությունները մեր հասարակության ազդեցիկ ուժն են, «Հայաստան» հրատ., 1977 թ., էջ 26)։

Սովետական բանակը և ռազմածովային նավատորմը իրենց 60-րդ տարեդարձը դիմավորում են հայրենիքի անվտանգությունն ապահովելու, մեծ Հոկտեմբերի նվաճումները ամեն մի իմպերիալիստական ագրեսիայից պաշտպանելու մշտական պատրաստության վիճակում։

ՍՍՀՄ զինված ուժերը, սերտ համախմբված լենինյան կոմունիստական կուսակցության շուրջը, Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների եղբայրական բանակների հետ մարտական համագործակցությամբ՝ այսուհետև էլ աչալրջորեն կանգնած կլինեն սոցիալիզմի և ընդհանուր խաղաղության պաշտպանության դիրքերում։

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲՆՈՒՅԹԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕՐՈՔ

**Վ. Հ. ԱԴԱՄՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*Կուսակցության տնտեսական քաղաքականության կարևորագույն խնդիրներից մեկը հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացումն է:*

*Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում տեխնիկական և կազմակերպական գործոններից բացի կարևոր դեր ունեն սոցիալ-տնտեսական գործոնները, մասնավորապես աշխատանքի բովանդակությունն ու բնույթը: Կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշված է. «Էական կարևորություն է ներկայացնում այն հարցերի խոր ուսումնասիրությունը, որոնք վերաբերում են մեր հասարակության, նրա արտադրաուժերի զարգացման տենդենցներին: Այդ հարցերից են, օրինակ, աշխատանքի բնույթն ու բովանդակությունը հասուն սոցիալիզմի պայմաններում, սոցիալական կառուցվածքի փոփոխությունները»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 108):*

*Քննարկենք սոցիալիստական աշխատանքի բնույթն ու բովանդակությունը, դրանց զարգացումն ու կատարելագործումը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և դրան համապատասխան արտադրահարաբերությունների ձևավորման պրոցեսում:*

*Աշխատանքը մարդու նպատակասլաց գործունեությունն է, որի պրոցեսում նա բնության առարկաները միշտ վերափոխում է ըստ իր պահանջմունքների: Աշխատանքը բնական անհրաժեշտություն է, մարդու կյանքի ու գոյության պարտադիր պայմանը: Սակայն, լինելով այդպիսին, աշխատանքը հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքի համեմատ փոխում է իր բնույթն ու էությունը: Աշխատանքի բնույթը արտահայտում է հասարակության տվյալ տնտեսակարգին հատուկ աշխատանքի հասարակական եղանակի կամ կառուցվածքի կարևորագույն հատկանիշները:*

*Վ. Ի. Լենինը նշում է, որ «Քաղաքատնտեսական որոշակի կատեգորիա է ոչ թե աշխատանքը, այլ աշխատանքի միայն հասարակական ձևը, աշխատանքի հասարակական կառուցվածքը, կամ այլ կերպ՝ մարդկանց փոխհարաբերությունները ըստ նրանց մասնակցության հասարակական աշխատանքին»* (ԵԼԺ, *հ. 7, էջ 56):*

*Հետևաբար, աշխատանքի բնույթ ասելով հասկանում ենք այն հիմնական տարբերիչ գծերը, որոնք բնութագրում են աշխատանքի այն սպեցիֆիկ առանձնահատկությունները, որոնք պայմանավորված են տվյալ հասարակարգում տիրապետող արտադրահարաբերություններով և դրան հատուկ տնտեսական օրենքներով: Յուրաքանչյուր հասարակարգի հատուկ է աշխատանքի իր, սպեցիֆիկ բնույթը:*

*Աշխատանքի բնույթը որոշվում է հասարակության տնտեսակարգով, արտադրության միջոցների սեփականության ձևով, արտադրության իրային և*



*անձնական գործոնների, այսինքն՝ արտադրամիջոցների և աշխատանքային ուժի միացման եղանակով:*

*Կապիտալիզմի օրոք արտադրողների աշխատանքը կրում է վարձու բնույթ, ընդունում է տնտեսական հարկադրանքի ձև: Արտադրամիջոցների մասնավոր սեփականության առկայությունն ստեղծում է արտադրության անձնական և իրային գործոնների միացման յուրատեսակ ձև, որի դեպքում արտադրողն արտադրվածի սեփականատերը չէ: Արտադրված արտադրանքը յուրացվում է արտադրության իրային գործոնների սեփականատերերի՝ կապիտալիստների կողմից: Մարքսի դիպուկ արտահայտությամբ, սեփականության օրենքը վերածվում է ուրիշի աշխատանքի արդյունքները յուրացնելու օրենքի: Դրա հետևանքով կապիտալիզմի պայմաններում աշխատանքը կրում է շահագործողական, վարձու, հարկադիր բնույթ: Սոցիալիզմը, որը հիմնված է հասարակական սեփականության վրա, արմատապես փոխում է արտադրողների աշխատանքի բնույթն ու էությունը: Սոցիալիստական հասարակարգում աշխատանքը դադարում է ստրկական, ծանր բեռ լինելուց, ինչպիսին այն եղել է աշխատավորների համար բոլոր հակամարտ հասարակություններում: Նշելով այդ առանձնահատկությունը, Վ. Ի. Լենինը գրել է. «...ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամ է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա»* (Երկեր, *հ. 26, էջ 495):*

*Սոցիալիզմի պայմաններում համատեղ արտադրական գործունեությունը ընդհանուրի շահերի համար հեղաշրջում է առաջացնում աշխատանքի նկատմամբ մարդկանց ունեցած հայացքներում, ծնում է նոր վերաբերմունք հանդեպ աշխատանքը, զարգացնում ստեղծագործական պոտենցիալը մարդու աշխատանքային գործունեության մեջ: Սոցիալիստական հասարակարգում աշխատանքը բնության ուժերի գիտակցական ու պլանաչափ կառավարման պրոցես է, որտեղ մարդը ազատ կերպով գործադրում է իր կամքը, իրականացնում իր մտահղացումները:*

*Արտադրամիջոցների համաժողովրդական սոցիալիստական սեփականության պայմաններում իր համար և իր հասարակության համար կատարվող աշխատանքը որոշում է սոցիալիստական աշխատանքի էությունն ու բնույթը:*

*Սոցիալիստական աշխատանքի բնույթի առանձնահատկությունները սահմանող առավել ընդհանուր հատկանիշները, որոնք պայմանավորված են արտադրամիջոցների հասարակական սեփականությամբ, հետևյալներն են.*

Աշխատանքի համընդհանրությունը: *Սոցիալիզմի օրոք աշխատանքի հասարակական կազմակերպման անկապտելի գիծն է՝ աշխատանքի համընդհանրությունը, այսինքն՝ հանրօգուտ աշխատանքի անհրաժեշտությունն ու պարտադիր լինելը հասարակության յուրաքանչյուր անդամի համար՝ նրա ունակություններին համապատասխան: Աշխատանքի համընդհանրությունը վերացնում է կապիտալիզմին հատուկ անարդարությունը, որի էությունն այն է, որ շահագործող դասակարգերը, որպես կանոն, վարում են անաշխատ, պարազիտային կյանք, յուրացնելով ուրիշների աշխատանքի պտուղները:*

*Սոցիալիզմի օրոք կենսական բարիքների աղբյուրը հասարակության անդամների մասնակցությունն է հանրօգուտ աշխատանքին, բացառվում են անաշխատ եկամուտները: Աշխատանքի համընդհանրությունն արտահայտում է սոցիալիստական հասարակության բոլոր անդամների աշխատանքի իրավունքը, աշխատանքով ապահովվածությունը: ՍՍՀՄ նոր Սահմանադրության 40-րդ հոդվածում սևեռված է. «ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք, այսինքն՝ երաշխավորված աշխատանք ստանալու իրավունք՝ աշխատանքը վարձատրելով ըստ նրա քանակի ու որակի, ներառյալ նրանց իրավունքը՝ մասնագիտությունը, զբաղմունքի և աշխատանքի տեսակը ընտրելու իրենց կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը, կրթությանը համապատասխան և հաշվի առնելով հասարակական պահանջմունքները:*

Այդ իրավունքն ապահովվում է տնտեսության սոցիալիստական սիստեմով, հասարակության արտադրաուժերի անշեղ աճով, ձրի պրոֆեսիոնալ ուսուցմամբ, աշխատանքային որակավորման բարձրացմամբ և նոր մասնագիտությունների ուսուցմամբ»։

Կապիտալիզմը ևս հռչակում է աշխատանքի իրավունքը։ Բայց մի բան է ունենալ աշխատանքի իրավունք, և այլ բան՝ ապահովել աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածությունը։ Կապիտալիզմին հատուկ տնտեսական օրենքների հետևանքով գործազրկությունը նրա անխուսափելի ուղեկիցն է, ո՛չ միայն կապիտալիզմի զարգացման արգասիքը, այլև նրա գոյության անհրաժեշտ պայմանը։

Կապիտալիզմի ջատագովները շատ են շաղակրատում «մարդու իրավունքների» մասին, սակայն «մոռանում են» մարդու գլխավոր իրավունքը՝ աշխատանքի իրավունքի և աշխատանքի ապահովումը։ Ներկայումս, ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում, զարգացած կապիտալիստական երկրներում կա ավելի քան 15 միլիոն գործազուրկ։ ԱՄՆ-ում դրանց թիվն անցել է 6 մլն մարդուց, Իտալիայում՝ 1,7, Ֆրանսիայում՝ 850 հազար, ԳՖՀ-ում՝ մոտ մեկ միլիոն, Անգլիայում՝ 800 հազար մարդուց և այլն։ Գիտատեխնիկական առաջընթացի զարգացումը կապիտալիստական երկրներում առավել մեծացնում է գործազուրկների թիվն աշխատատեղերի կրճատման հետևանքով։

Իրականացնելով աշխատանքի համընդհանրությունը, սոցիալիզմը դրա հետ մեկտեղ ապահովում է աշխատանքի պարտադիրությունը։ ՍՍՀՄ նոր Սահմանադրության 60-րդ հոդվածում ասված է. «ՍՍՀՄ յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է բարեխղճորեն աշխատել հանրօգուտ գործունեության՝ իր ընտրած բնագավառում, խստիվ պահպանել աշխատանքային և արտադրական կարգապահությունը»։

Սոցիալիզմի օրոք աշխատանքի համընդհանրության հետ կապված է գիտակցական ու ստեղծագործական վերաբերմունքը հանդեպ աշխատանքի։ Սոցիալիստական աշխատանքի այդ հատկանիշը սերտորեն կապված է աշխատանքի համընդհանրության հետ։ Եթե աշխատանքի համընդհանրությունն արտադրության կոմունիստական եղանակի առաջին փուլի՝ սոցիալիզմի արգասիքն է, ապա աշխատանքի գիտակցական և ստեղծագործական հատկանիշներն ապագա կոմունիստական աշխատանքի ծիլերն են։

Աշխատանքի համընդհանրությունը, նրա գիտակցական և ստեղծագործական բնույթը ծնում են աշխատանքի նոր, հակամարտ ֆորմացիաների համար անհայտ բարոյական խթաններ։ Այդ բարոյական խթաններն արտադրական նոր հարաբերությունների ծնունդ են և պայմանավորված են սոցիալիստական աշխատանքի բնույթով։ Այդ խթաններից են՝ ողջ հասարակության բարօրության համար իրականացվող իրենց աշխատանքի հասարակական նշանակության ըմբռնումը հասարակության անդամների կողմից, մարդկանց հասարակական և արտադրական վարքագծի կատարելագործումը հասարակական կարծիքի ներգործությամբ, որն ապահովում է անցումն աշխատանքի սոցիալիստական կարգապահությունից աշխատավորների կոմունիստական ինքնակարգապահության. սոցիալիստական մրցության զարգացումը, որի նպատակն է արտադրության արդյունավետության բարձրացումը և ետ մնացողներին առաջավորներին հասցնելը. հասարակության յուրաքանչյուր անդամի աշխատանքային ծառայությունների հասարակական ճանաչումն ու գնահատումը, բարոյական և նյութական խրախուսման համապատասխան կիրառումը. սովետական և հասարակական կազմակերպությունների միջոցով աշխատավորների լայն զանգվածների մասնակցությունն արտադրության կառավարմանը։ Այս խթանները, որոնք պայմանավորված են սոցիալիզմի օրոք իրականացվող աշխատանքի բնույթով, լայնորեն օգտագործվում են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Սոցիալիզմի օրոք իրականացվող աշխատանքի բնույթը սահմանող ընդ-



հանուր հատկանիշներից մեկը աշխատանքի արդյունքների նկատմամբ աշխատողների նյութական շահագրգռվածությունն է։

Աշխատանքի նյութական շահագրգռվածությունը պայմանավորված է ինչպես սոցիալիզմի փուլում հասարակության արտադրաուժերի զարգացման դեռևս ոչ շատ բարձր մակարդակով, այնպես էլ կոմունիստական արտադրահարաբերությունների ոչ լրիվ հասունությամբ։ Այն կապված է սոցիալիզմի մի շարք տնտեսական օրենքների ու կատեգորիաների առկայության և գործողության հետ, ինչպիսիք են, օրինակ, ապրանքային արտադրությունը, ըստ աշխատանքի բաշխման օրենքը, տնտեսական հաշվարկը և այլն։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում աշխատանքի նյութական շահագրգռվածությունը հանդես է գալիս երեք ձևերով՝ հասարակական, կոլեկտիվ և անձնական։ Ըստ որում, դրանք բոլորն էլ սերտորեն կապված են իրար հետ և ներդաշնակորեն զուգակցվում են։

Կոմունիստական կուսակցությունը ղեկավարվում է լենինյան այն նշանավոր դրույթով, որ սոցիալիզմը և կոմունիզմը անհրաժեշտ է կառուցել ոչ թե սոսկ խանդավառությամբ, այլ խանդավառության օգնությամբ, նյութական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի հիման վրա։

Նյութական խթանումը աշխատանքի արտադրողականության բարձրացման, նրա բնույթի կատարելագործման կարևոր միջոց է։ Նյութական խթանման սիստեմի զարգացումը տնտեսական պայմաններ է ստեղծում աշխատանքի վարչական հարկադրանքի աստիճանական մահացման համար, ծնում և զարգացնում է աշխատանքի բարոյական խթաններ, նպաստում կոմունիստական աշխատանքի հատկանիշների ու ծիլերի առաջացմանը։

Սոցիալիստական աշխատանքի բնույթի կարևոր ընդհանուր հատկանիշը անտագոնիստական հակասությունների բացակայությունն է անհրաժեշտ ու հավելյալ, մտավոր ու ֆիզիկական, ինդուստրիալ և գյուղատնտեսական աշխատանքների միջև։

Սոցիալիզմը վերացնում է մասնավոր սեփականությունը, իսկ դրա հետ
միասին նաև անտագոնիստական հակասությունները անհրաժեշտ և հավելյալ
աշխատանքի միջև։ Ի տարբերություն կապիտալիզմի, որտեղ հավելյալ ար-
դյունքը յուրացնում է կապիտալիստը և օգտագործում իր անձնական շահերի
համար, սոցիալիզմի օրոք հավելյալ արդյունքն օգտագործվում է ինչպես հա-
սարակության ընդհանուր պահանջմունքների, այնպես էլ նրա առանձին ան-
դամների պահանջմունքների բավարարման համար։
մտավոր ու ֆիզիկական աշխատանքի
Իհարկե, անհրաժեշտ ու հավելյալ, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի
միջև եղած անտագոնիստական հակասության վերացումը չի բացառում դրանց
միջև եղած որոշակի տարբերությունները։ Սոցիալիզմի ստադիայում դեռևս
պահպանվում են էական տարբերություններ և ոչ անտագոնիստական հակա-
սություններ անհրաժեշտ ու հավելյալ, մտավոր ու ֆիզիկական աշխատանք-
ների միջև։

Սոցիալիստական աշխատանքի որոշիչ հատկանիշը նրա անմիջական-հասարակական բնույթն է։

Արտադրության պրոցեսում մարդիկ կապված են միմյանց հետ և այս կամ
այլ կերպ աշխատում են միմյանց համար։ Սկսած այն պահից, ինչ գոյություն
ունի աշխատանքի բաժանում, ինքը՝ աշխատանքը, ձեռք է բերում հասարակա-
կան բնույթ։ Սակայն աշխատանքը տնտեսական տարբեր ֆորմացիաներում
տարբեր կերպ է ձեռք բերում հասարակական բնույթ։

Կապիտալիզմի օրոք արտադրամիջոցների մասնավոր սեփականության
հետևանքով անտագոնիստական հակասություն գոյություն ունի մասնավոր և
հասարակական աշխատանքի միջև։

Սոցիալիզմը վերացնում է մասնավոր սեփականությունը ու դրա հետ միա-
սին նաև անտագոնիստական հակասությունը մասնավոր և հասարակական աշ-
խատանքի միջև։ Ֆ. Էնգելսը գրել է. «Երբ հասարակությունը տիրում է արտա-
դրության միջոցներին և դրանք կիրառում արտադրության համար անմիջական
հասարակական ձևով, յուրաքանչյուր առանձին անձի աշխատանքը, որքան էլ

Սոցիալիստական հասարակարգում, որտեղ գիտության ու տեխնիկայի բոլոր նվաճումներն օգտագործվում են աշխատավորների շահերի համար, տեխնիկական առաջընթացը հանդես է գալիս որպես աշխատանքի ինտելեկտուալացման հզոր միջոց։

Աշխատանքի ինտելեկտուալության աստիճանի բարձրացման հետ սերտորեն կապված է աշխատանքային գործունեության պրոցեսում մտավոր և ֆիզիկական գործողությունների հարաբերակցությունը։

Գիտության ու տեխնիկայի զարգացման, աշխատանքի տեխնիկական հագեցվածության բարձրացմանը զուգընթաց աճում է մտավոր, մտածողական գործողությունների բաժինը և համապատասխանաբար կրճատվում ֆիզիկական գործողությունների բաժինը։ Այսպես, ավտոմատացված արտադրությունների աշխատողների աշխատանքային օրվա ժամանակաչափումը ցույց է տալիս, որ պողպատի անընդմեջ լցման սարքերի սպասարկմամբ զբաղված օպերատորների առավելապես մտավոր աշխատանքի ծախսումները կազմում են աշխատաժամանակի 88 տոկոսը, ավտոմատ կառավարման վահանների մոտ աշխատող ապարատավարներինը՝ ավելի քան 90, ավտոմատ հաստոցների փականագործ-նորոգողներինը՝ 71, ավտոմատացված տեղամասերի հերթապահ էլեկտրիկներինն ու փականագործներինը՝ մինչև 84, ավտոմատացված գծերի կարգավորողներինը՝ մինչև 95 տոկոսը (տե՛ս Р. Иванова, И. Обломская. Характер труда в условиях развитого социализма. Изд. «Экономика», М., 1975)։

Աշխատանքի բնույթի մասնակի հատկանիշներից են նաև աշխատողի տեղն ու դերը աշխատանքային պրոցեսի իրականացման գործում, նրա վերաբերմունքն ու հարաբերությունը արտադրության իրային գործոններին։ Տեխնիկական առաջընթացի արագացմանը զուգընթաց մարդու դերն աշխատանքային պրոցեսում կատարողականից ավելի ու ավելի է վերածվում վերահսկողի, ծրագրավորողի և կառավարողի դերի։ Բնականաբար, այդ ամենն զգալիորեն բարձրացնում է պահանջները կոնկրետ աշխատանքի առանձին տեսակների կատարման նկատմամբ։

Աշխատանքի բնույթից հարկավոր է տարբերել աշխատանքի բովանդակությունը։ Աշխատանքի բնույթը, ինչպես մենք արդեն ցույց տվեցինք, պայմանավորված է արտադրահարաբերությունների անմիջական ամբողջությամբ և, ամենից առաջ, արտադրամիջոցների սեփականության ձևով։ Բայց հասարակական աշխատանքի վրա ներգործում են նաև արտադրաուժերը։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները մատնանշել են, որ հասարակական աշխատանքի վիճակը, որը պայմանավորվում է նրա այնպիսի բաժանմամբ, որի հիմքում ընկած է արտադրաուժերի զարգացումը, պատմականորեն ու տրամաբանորեն նախորդում է սեփականության այս կամ այն ձևի առաջացմանը։

Անմիջականորեն արտադրաուժերի զարգացման մակարդակով ու բնույթով պայմանավորված հատկանիշների ամբողջությունը կարելի է անվանել հասարակական աշխատանքի բովանդակություն։

Հետևաբար, աշխատանքի բովանդակություն հասկացությունը կարող է ներառել աշխատանքի մասնագիտացման, կոոպերացման, համակենտրոնացման և կոմբինացման զարգացման մակարդակը, բոլոր այն կապերը, որոնք արտահայտում են մարդկանց հարաբերություններն արտադրության տեխնիկական պրոցեսում և պայմանավորված են գիտության, տեխնիկայի, տեխնոլոգիայի զարգացման մակարդակով, աշխատողների գիտելիքների ու հմտությունների աստիճանով, աշխատանքային այն ֆունկցիաների բնույթով, որ ծնում են տարբեր մասնագիտությունները, որակավորումները և այլն։ Հասարակական աշխատանքի այդ բոլոր թվարկված գծերն արտացոլում են նրա սոցիալ-տեխնիկական հանրայնացման ձեռք բերված մակարդակը, այսինքն՝ այն կողմը, որն անմիջականորեն պայմանավորված է արտադրաուժերի զարգացմամբ և



որոշակի փուլում հանգեցնում է սեփականության ձևը փոխարինելու անհրաժեշտությանը կամ նրա կատարելագործմանը։

Բայց սոցիալիստական աշխատանքի բնույթն ու բովանդակությունը ինչ-որ մշտական ու անփոփոխ բան չեն։ Ընդհակառակը, դրանք զարգանում և կատարելագործվում են արտադրաուժերի զարգացման և արտադրահարաբերությունների կատարելագործմանը զուգընթաց։ Աշխատանքի հանրայնացվածության աստիճանի բարձրացում, դրա սոցիալ-տնտեսական տարասեռության հաղթահարում, մտավոր ու ֆիզիկական, ինդուստրիալ և գյուղատնտեսական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարում, աշխատանքի նյութական և բարոյական խթանման զարգացում, աշխատանքի սոցիալիստական բաժանման խորացում և կատարելագործում, գիտատեխնիկական առաջընթացի արագացում, աշխատանքի ֆոնդաէներգազինվածության նշանակալի բարձրացում, աշխատանքային բոլոր պրոցեսների մեքենայացում և ավտոմատացում, աշխատանքային գործունեության պրոցեսում մարդու վրա արտադրության վնասակար ազդեցության վերացում, անհատի համակողմանի զարգացում (որը նպաստում է աշխատանքային գործունեության ազատ փոփոխմանը և այլն)— ահա այն միջոցները, որոնց շնորհիվ տեղի է ունենում սոցիալիստական աշխատանքի բնույթի և բովանդակության զարգացումն ու կատարելագործումը։

Մեր նպատակը չէ անդրադառնալ սոցիալիստական աշխատանքի բնույթի և բովանդակության զարգացման ու կատարելագործման այդ միջոցներին, բայց այդ ամենը տեղի է ունենում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը զուգընթաց և արտահայտում սոցիալիզմի արտադրահարաբերությունների զարգացման էությունը, սոցիալիստական աշխատանքը աստիճանաբար կոմունիստականի վերաճելու պրոցեսը, որի ժամանակ աշխատանքը կդառնա մարդու առաջին կենսական պահանջմունքը։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Մ. Ս. ՄԻՆԱՍԲԵԿՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ հասարակական-քաղաքական կյանքն ընթանում է ՍՄԿԿ XXV համագումարի գաղափարների ու դրույթների հարաճուն ներգործության ներքո։ Համագումարի նշած քաղաքական կուրսն ապահովում է ՍՍՀՄ տնտեսական ու պաշտպանական հզորության անընդհատ ամրապնդումն ու զարգացումը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը, նոր մարդու ձևավորումը, սովետական ժողովրդի հետագա առաջընթացը դեպի կոմունիզմ։ Պատմական այդ վեհ խնդիրների իրականացման գործում առանձնահատուկ տեղ գրավեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսունամյակի տարին։ Հոբելյանական այդ տարում ընդունվեց ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, որտեղ արտացոլված են կուսակցության ու ժողովրդի հեղափոխական-վերափոխիչ ողջ գործունեության արդյունքները, տրված է կոմունիստական գալիքի հստակ հեռանկարը։

Սեփական հիմքի վրա սոցիալիզմի զարգացումը հնարավոր է միայն հասարակական բարձրարդյունավետ արտադրության առկայությամբ։ Ահա ինչու ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման մի քանի միջոցառումների մասին» որոշման մեջ (1973 թ.) տեսականորեն հիմնավորված է արտադրության համակենտրոնացման ու մասնագիտացման խորացման, գիտության ու արտադրության ինտեգրացման, էկոնոմիկայի կառավարման մեխանիզմի ու մեթոդների կատարելագործման անհրաժեշտությունը զարգացած սոցիալիզմի և գիտատեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում։ Հիմնականում այս հարցերն են որոշում գիտատեխնիկական առաջընթացի տեմպերն ու մասշտաբները, իսկ վերջին հաշվով՝ աշխատանքի արտադրողականությունն ու արտադրության արդյունավետությունը, ժողովրդական տնտեսության զարգացման ինտենսիվությունը։ Այդ նպատակին է ծառայում արտադրության կազմակերպական կառուցվածքի կատարելագործումը մեր երկրում։ Արդյունաբերության ոլորտում ստեղծվում են արտադրական ու գիտաարտադրական նորանոր միավորումներ։ Դա տնտեսավարման ու կառավարման որակապես նոր ձև է, որը սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունների ավելի լիակատար օգտագործման հնարավորություններ է ընձեռում։



Հաշվի առնելով այդ առաջադիմական պրոցեսի խորացման անհրաժեշտությունը և ղեկավարվելով Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի դրույթներով, Երևանի քաղաքային կուսկազմակերպությունը հաստատուն կուրս է վերցրել՝ խոշորացնելու մանր ձեռնարկությունները, ստեղծելու արտադրական և գիտաարտադրական միավորումներ։

Վերլուծությունը ցույց է տալիս, որ գիտատեխնիկական առաջընթացի, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացման, արտադրության ծավալի աճի տեմպերի գլխավոր խոչընդոտն արդյունաբերության մանրատվածությունն է, մասնագիտացման ցածր մակարդակը, գիտության ու արտադրության անբավարար կապը, թերությունները կառավարման կառուցվածքում ու մեթոդներում։ Այս մասին բազմիցս խոսվել է կուսակցության քաղկոմի պլենումներում և քաղաքային կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովներում։ Բանն այն է, որ ոչ մեծ ձեռնարկություններն արտադրում են լայն տեսականու ապրանքներ, հիմնականում փոքր սերիաներով։ Նրանք ի վիճակի չեն պահել տեխնիկական, տնտեսական և օժանդակ խոշոր ծառայություններ, և, հետևաբար, նրանց համար դժվար է, ինչպես հարկն է, լուծել ժամանակակից ապրանքների ստեղծման, արտադրանքի որակի բարձրացման, արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման խնդիրները։

Մանր ձեռնարկությունների տեխնիկական մակարդակն ու արտադրանքի որակը հաճախ չեն համապատասխանում արդի պահանջներին, իսկ աշխատանքի արտադրողականության մակարդակն ու տեխնիկատնտեսական մյուս ցուցանիշները շատ ավելի ցածր են, քան համանման խոշոր գործարաններում ու ֆաբրիկաներում։ Այսպես, օրինակ, տեղական արդյունաբերության մինիստրության Երևանի տրիկոտաժի կոմբինատում մեկ աշխատողին ընկնող արտադրանքը տասնմեկ ամսում կազմել է 6.111 ռուբլի, իսկ թեթև արդյունաբերության մինիստրության Մյասնիկյանի անվան տրիկոտաժի արտադրական միավորման մեկ աշխատողինը՝ 7.356 ռուբլի, այսինքն՝ 20 տոկոսով ավելի համանման արտադրանքի դեպքում։ Ահա ինչու մենք առաջարկում ենք տրիկոտաժի կոմբինատը ներառնել ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմում։

Ներկայումս Երևան քաղաքում, որը տալիս է հանրապետության ամբողջ
արդյունաբերական արտադրանքի ավելի քան 52 տոկոսը, գործում է արտա-
դրական ու գիտաարտադրական 40 միավորում, որոնք թողարկում են քաղա-
քի ամբողջ արտադրանքի 46 տոկոսը։ Այդ միավորումներում աշխատում է
ավելի քան 10 հազար կոմունիստ։ Շատ ձեռնարկություններ, ընդգրկվելով
միավորումների մեջ, զգալիորեն բարելավել են իրենց տեխնիկատնտեսական
ցուցանիշները։ Քաղաքի միավորումներում որակի պետական նշանով թո-
ղարկվում է 746 անուն ապրանք։ Ի դեպ, մեզ մոտ ետ մնացող միավորումներ
չկան, նրանք կատարում և գերակատարում են պլանային առաջադրանքները,
ապահովում արտադրության աճի բարձր տեմպեր։

Ձեռնարկությունների խոշորացումն ու վերակառուցումը, արտադրության
կառավարման կատարելագործումը դեռևս չեն ավարտվել և շարունակվում են
կառավարման գլխավոր սխեմաներին համապատասխան։ Ուստի և այժմ, երբ
ձևավորվում են այդ միվորումների կազմակերպման ու կառավարման հիմնա-
կան սկզբունքները, կուսկազմակերպությունների համար շատ կարևոր է փոր-
ձի կուտակումը, այդ ասպարեզում տեղի ունեցող պրոցեսների ուսումնասիրու-
թյունն ու վերլուծությունը։ Միասնական կոլեկտիվի ստեղծում, հանգույցային
տեղամասերում կադրերի ճիշտ ընտրություն և տեղաբաշխում. վերջին հաշ-
վով, այս ամենն է որոշում միավորումների աշխատանքի և՛ նպատակաուղղվա-
ծությունը, և՛ դրանց հնարավորությունների օգտագործումը, և՛ փոխհարաբերու-
թյունների մթնոլորտը։

Հասկանալի է, որ արտադրական-տնտեսական միասնական կոմպլեքսի
առավելությունների և հնարավորությունների օգտագործումը հասարակ խնդիր
չէ։ Դրա լուծման համար անհրաժեշտ է սերտորեն փոխկապակցել տեխնիկա-

կան, տնտեսական ու սոցիալական միջոցառումները, արտադրատնտեսական լծակների հետ միասին լայնորեն կիրառել նաև կազմակերպական ու կուսակցական-քաղաքական ներգործության ձևեր։ Այս հարցերում բացառիկ մեծ է միավորումների սկզբնական կուսկազմակերպությունների, միավորման մեջ մտնող բոլոր ձեռնարկությունների կուսկազմակերպությունների դերը։ Այդ պատճառով էլ ներկայումս, յուրաքանչյուր արտադրամիավորման մասշտաբներին, բնույթին ու յուրահատկությանը, դրանց կազմի մեջ մտնող ձեռնարկությունների տերիտորիալ տեղաբաշխմանն ու իրական դրությանը համապատասխան՝ ստեղծվել է միավորումների կուսկազմակերպությունների կազմակերպական կառուցվածքի երեք հիմնական տարբերակ, որոնք ստուգվել են պրակտիկայում, կենսունակ են և դրանցով էլ պետք է ղեկավարվել։ Բնական է, որ այս բոլոր հարցերը յուրաքանչյուր կոնկրետ դեպքում պետք է լուծվեն ՍՄԿԿ կանոնադրությանը համապատասխան՝ հաշվի առնելով գործի շահերը, արտադրության կոնկրետ պայմանները։

Կարևոր է միշտ հիշել, որ միացյալ կուսկազմակերպությունների ստեղծումը գործնականում նրանց համար ունի այնպիսի նշանակություն, ինչպիսին արտադրության և կառավարման կենտրոնացումը՝ միավորման համար։ Եթե առաջ յուրաքանչյուր կուսկազմակերպություն վերահսկում էր միայն առանձին ձեռնարկության ադմինիստրացիայի, իսկ գլխավոր գործարանի կուսկոմիտեն՝ միայն գլխավոր դիրեկցիայի գործունեությունը, ապա միավորումների միասնական կուսկազմակերպությունների և կուսկոմիտեների ստեղծմամբ այդ իրավունքը պետք է տարածվի նաև միավորման մեջ մտնող երևանյան բոլոր, իսկ կարևորագույն հարցերի առումով՝ այլ քաղաքների ձեռնարկությունների վրա, այսինքն՝ փաստորեն ամբողջ միավորման վրա։

Այս պայմաններում կարևոր գործնական նշանակություն են ստանում միավորումների կուսկազմակերպությունների աշխատանքի կոորդինացումը, նրանց պլաններում ու գործողություններում անհրաժեշտ համաձայնեցվածության ապահովումը։ Այս բանին զգալիորեն նպաստում են միավորումների կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովները, ինֆորմացիայի և փորձի փոխանակումը։

Կոորդինացման արդյունավետ ձև են կուսկազմակերպությունների քարտուղարների խորհուրդները։ Ելնելով կուտակված փորձից՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն «Արտադրամիավորման պայմաններում Գորկու ավտոգործարանի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» իր որոշմամբ միութենական հանրապետությունների կոմկուսների Կենտկոմներին թույլատրեց կուսկազմակերպությունների քարտուղարների խորհուրդներ ստեղծել այն արտադրամիավորումներում, որտեղ գործում են մի քանի ինքնուրույն սկզբնական կուսկազմկերպություններ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշմամբ մեր հանրապետությունում քարտուղարների խորհուրդ պետք է ստեղծվի այնտեղ, որտեղ գտնվում է միավորման գլխավոր ձեռնարկությունը։ Խորհրդի կազմում լինելու են բոլոր մասնաճյուղ-ձեռնարկությունների կուսկազմակերպությունների քարտուղարները։ Խորհրդի նախագահ է հաստատվում գլխավոր ձեռնարկության կուսկոմիտեի կամ կուսբյուրոյի քարտուղարը։ Անհրաժեշտ է նշել, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշմամբ քարտուղարների խորհուրդներ ստեղծելու հանգամանքը նրանց հեղինակության աճի վկայությունն է։ Խորհուրդները ղեկավարում են կուսակցության համապատասխան քաղկոմներն ու շրջկոմները։

Մեր հանրապետությունում քարտուղարների խորհուրդներ դեռ չեն ստեղծվել։ Այս գործը, անշուշտ, պետք է արագացնել։ Հանձնարարված է հիմնական հարցերի մոտավոր ցանկ, որը պետք է հիմք ընդունել՝ արտադրական և գիտաարտադրական միավորումների կուսկազմակերպությունների քարտուղարների խորհուրդների կանոնադրությունը մշակելիս։ Քարտուղարների խորհրդի նպատակն է՝ կոորդինացնել կուսկազմակերպությունների գործունեությունը և ապահովել դրա նպատակաուղղվածությունը. միավորման կոմունիստների և բոլոր աշխատավորների շրջանում ծավալել քաղաքական, կազմակերպչական, գա-



ղափարախոսական աշխատանք՝ ուղղված նրանց առջև ծառացած խնդիրների հաջող լուծմանը. վերահսկել միավորման ու նրա ստորաբաժանումների ադմինիստրացիայի գործունեությունը. ընտրել, տեղաբաշխել ու դաստիարակել կադրերը, բարձրացնել աշխատողների գործնական որակավորումը, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը. կազմակերպել գիտահետազոտական և փորձնական-կոնստրուկտորական աշխատանքներ. ապահովել արտադրական, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման, արտադրական հզորությունների գործարկման, արդյունավետության բարձրացման և որակի բարելավման, արտադրանքի նոր տեսակների յուրացման պլանների կատարումը. իրականացնել արտադրության զարգացման և կատարելագործման միջոցառումներ. նպաստել վառելանյութի, հումքի ու նյութերի տնտեսմանը. ուսումնասիրել, ընդհանրացնել և տարածել կուսկազմակերպությունների աշխատանքի դրական փորձը։

Գլխավոր դիրեկցիայի, արհմիութենական կոմիտեների և կոմերիտական կազմակերպությունների հետ միասին կուսկազմակերպությունների քարտուղարների խորհուրդը քննարկում և լուծում է մրցության կազմակերպման, բարոյական ու նյութական խթանման, աշխատանքային կոլեկտիվների տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների մշակման ու իրականացման հարցերը։

Միավորման կուսկազմակերպությունների քարտուղարների խորհուրդն իրավունք ունի՝ առաջարկություններով ու հարցերով դիմել կուսակցական, սովետական ու տնտեսական մարմիններին, միավորման ղեկավարությանը և դիրեկտորների խորհրդին. խորհրդի միջոցառումների անցկացման գործում ներգրավել միավորման ցանկացած պաշտոնատար անձի և հասարակական կազմակերպությունների ղեկավարներին. գլխավոր դիրեկցիայի հետ միասին հրավիրել միավորման կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովներ։

Քարտուղարների խորհուրդը նիստեր է գումարում եռամսյակը մեկ անգամ (դա նպատակահարմար է այն առումով, որ համընկնում է ձեռնարկության եռամսյակային հաշվետվությունների ժամկետներին)։ Խորհուրդը գործում է տարեկան ու եռամսյակային պլաններով, որոնք հաստատում է իր նիստերում։

Քարտուղարների խորհուրդն աշխատում է կոլեկտիվության և իր անդամների իրավահավասարության սկզբունքով։ Քննարկված հարցերի վերաբերյալ նրա որոշումներն ընդունվում են բաց քվեարկությամբ և ընդունված են համարվում, եթե դրանց օգտին կողմ է քվեարկել խորհրդի անդամների մեծամասնությունը։

Խորհրդի որոշումները կրում են հանձնարարական բնույթ։ Նրա անդամները, միավորման՝ այլ քաղաքներում գործող ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, կուսկազմակերպությունների և տնտեսական ղեկավարության գործունեության կարևորագույն հարցերի վերաբերյալ խորհրդի ընդունած որոշումների մասին տեղյակ են պահում տեղական կուսակցական մարմիններին, միավորման ձեռնարկությունների կուսակցական ակտիվին և տնտեսական ղեկավարությանը։

Միավորման աշխատանքի սկզբունքային հարցերի վերաբերյալ խորհրդի ընդունած որոշումները քննարկվում են միավորման կուսկոմիտեում, միավորման՝ այլ քաղաքներում գտնվող կուսկոմիտեներում ու կուսբյուրոներում և, հաստատումից ու տեղական կուսակցական մարմինների հետ համաձայնեցնելուց հետո, դառնում են պարտադիր միավորման բոլոր ստորաբաժանումների կոմունիստների համար։

Եթե միավորման կուսկազմակերպության գործունեության ընթացքում ծագում են ինչ-որ հարցեր կամ տարաձայնություններ (օրինակ՝ մասնաճյուղերի ղեկավար կադրերի ընտրության ու տեղաբաշխման, վերակառուցման կամ բնակկենցաղային շինարարության շուրջ), ապա դրանք պետք է լուծվեն կուսակցության համապատասխան շրջանային ու քաղաքային կոմիտեների և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի օգնությամբ։

*Միավորման բոլոր ստորաբաժանումների կուսկազմակերպությունները ղեկավարվում են խորհրդի կոլեկտիվ մշակած հանձնարարականներով, ձգտում են դրանց հետևողական կենսագործմանը: Ընդ որում, քարտուղարների խորհուրդն իրավազոր չէ միավորման ձեռնարկությունների կուսկազմակերպություններին հանձնարարականներ տալ այն հարցերի վերաբերյալ, որոնք մտնում են տերիտորիալ կուսկազմակերպության մարմինների իրավասության մեջ (կուսակցության շարքերի աճի կարգավորում, անհատական գործերի քննարկում, կոմունիստների հաշվառման վարում, կուսակցական անդամավճարների մուծում և այլն): Ելնելով դրանից՝ հանձնարարվում է քարտուղարների խորհրդի նիստերում քննարկել մոտավորապես հետևյալ հարցերը. կոլեկտիվի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարումը. արտադրության արդյունավետության բարձրացման, մշակումների ներդրման արագացման ու մակարդակի բարձրացման, ժողովրդական սպառման ու արտահանման ապրանքների արտադրության ավելացման, արտադրանքի որակի բարելավման և տեխնոլոգիական կորուստների կրճատման նպատակով մշակված միջոցառումների իրականացումը. միավորման ձեռնարկությունների կուսկոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների աշխատանքի հեռանկարային պլանների նախագծերը. միավորման կառավարման կառուցվածքի կատարելագործման, կուսկազմակերպությունների կառուցվածքի փոփոխման վերաբերյալ նախագծերն ու առաջարկությունները. միավորման և նրա ստորաբաժանումների աշխատանքի մասին տնտեսական ղեկավարների և կուսկազմակերպությունների քարտուղարների զեկուցումները. միավորման վերադաս կուսակցական մարմինների, կուսկոմիտեների, կուսբյուրոների, կուսժողովների և կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովների որոշումների կատարման ընթացքը. ընդհանուր կուսակցական, տնտեսական և հասարակական-քաղաքական միջոցառումների կազմակերպման հարցերը: Ահա ինչու հույժ անհրաժեշտ է արագացնել քարտուղարների խորհրդի ստեղծման գործը:*

*Մենք շատ բան ունենք անելու նաև միավորումների կուսակցական կազմակերպությունների կառուցվածքը կարգավորելու համար: Առաջին հերթին, դա վերաբերում է «Հայէլեկտրալույս», «Սևանի», «Հայէլեկտրաշարժիչ» և այլ արտադրական միավորումներին:*

*Միավորումների գործունեության մեջ մեծ է գլխավոր ձեռնարկությունների կուսկոմիտեների դերը: Այդ ձեռնարկություններում մշակվում է միավորման տեխնիկատնտեսական քաղաքականությունը, կանխորոշվում ընդհանուր հարցերի լուծման միջոցները: Որպես կանոն, այստեղ են կենտրոնացված կառավարման, պլանավորման, մատակարարման ու իրացման ֆունկցիաները, ամբողջ միավորման ինժեներատեխնիկական և այլ ծառայությունները:*

*Գլխավոր ձեռնարկությունների կուսակցական կոմիտեները կոչված են նախաձեռնություն և հաստատակամություն ցուցաբերել այն պրոբլեմների լուծման գործում, որոնք առաջնահերթ նշանակություն ունեն ամբողջ միավորման համար: Դրանով ևս ավելի լրիվ կզուգակցվեն առանձին ձեռնարկությունների և միավորման ընդհանուր շահերը: Ընդ որում, հարկավոր է հաշվի առնել, որ միավորումների սկզբնական կուսկազմակերպություններն ունեն արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսակցական խմբերի ճյուղավորված ցանց: Շատ դեպքերում արտադրամասային են դառնում նախկին ինքնուրույն ձեռնարկությունների կուսկազմակերպությունները: Սա որակապես նոր երևույթ է, և կուսկոմիտեներից պահանջվում է զգալիորեն կատարելագործել նրանց ղեկավարումը: Նախկինում այդ կուսկազմակերպություններին անմիջականորեն ղեկավարում էին կուսշրջկոմները, քաղկոմները, և շատ կարևոր է, որ նոր պայմաններում չիջնի նրանց աշխատանքի ղեկավարման մակարդակը:*

*Հենվելով կուտակված փորձի վրա, ՍՄԿԿ Կենտկոմը Գորկու ավտոգործարանի կուսկազմակերպությունների վերաբերյալ ընդունած իր որոշմամբ կուսակցության մարզկոմներին, երկրկոմներին, միութենական հանրապետությունների կոմկուսի Կենտկոմներին իրավունք վերապահեց ավելի քան հա-*



*զար կոմունիստ ունեցող արտադրական միավորումների կուսկազմակերպություններում ստեղծել ընդլայնված կազմով կուսկոմիտեներ, դրանց կազմում, որպես կանոն, ընտրվում է 35—55 մարդ: Ընթացիկ հարցերի լուծման համար ընտրվում է բյուրո: Ընդլայնելով իրենց կազմը՝ կուսկոմիտեները հնարավորություն են ստանում անմիջականորեն ներազդել կոլեկտիվի արտադրական ու հասարակական կյանքի վրա: Ամրապնդվում է նրանց կապը արտադրամասային կուսկազմակերպությունների հետ:*

*Կուսկոմիտեների կազմում հեղինակավոր ու պատրաստված կոմունիստ բանվորների, մասնագետների առաջադրումը հնարավորություն է ընձեռում ավելի արդյունավետ վարել գործերը, ավելի լավ օգտագործել կոլեկտիվ փորձը, բարձրացնել կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակը, ավելի լիակատար ձևով իրագործել ադմինիստրացիայի գործունեության կուսակցական վերահսկողությունը: «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեն բաղկացած է 55 մարդուց: Այն արտացոլում է միավորման կուսկազմակերպության սոցիալական կազմը. նրա անդամների 53 տոկոսը բանվորներ են՝ բոլորն էլ արտադրության առաջավոր, քաղաքականապես գրագետ, կոլեկտիվի հարգանքը վայելող կոմունիստներ: Կուսկոմիտեի կազմում կան արտադրամասային կուսկազմակերպության 12 քարտուղար, 14 խմբային կուսկազմակերպիչ, առաջատար արտադրամասերի ու բաժինների գլխավոր մասնագետներ, պետեր, արհմիութենական ու կոմերիտական աշխատողներ: Այսպիսով, իր քանակական ու որակական կազմով միավորման կուսկոմիտեն կոլեկտիվ ղեկավարման ներկայացուցչական լայն մարմին է, որի իրազեկությունը կոլեկտիվի առջև ծառացած բարդ խնդիրների լուծման գործում նկատելիորեն աճել է:*

*Ընդլայնված կազմով կուսկոմիտեների ստեղծումը բխում է կյանքի պահանջներից, և մեր խնդիրն է առաջիկայում կազմակերպչական անհրաժեշտ աշխատանք տանել նման կոմիտեներ ստեղծելու «Նաիրիտ» գիտաարտադրական և «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումներում:*

*Արտադրամիավորումների կուսկազմակերպությունները, կուսկոմիտեները ամբողջովին պատասխանատու են այն բանի համար, որ նրանցից ամեն մեկն իրականում հանդես գա որպես արդյունավետ գործող արտադրական-տնտեսական օրգանիզմ: Սա, բնականաբար, անհրաժեշտություն կստեղծի մշտապես կատարելագործել կուսակցական աշխատանքը, որպեսզի այն լիովին համապատասխանի արտադրության կազմակերպման նոր ձևերին ու պայմաններին:*

*Կուսկազմակերպությունների բազմաբնույթ գործունեության մեջ անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել դրա որակական կողմին՝ կատարման կարգապահության ամրապնդման հիման վրա: Կարևոր է հիշել, որ ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլաններում կուսակցության տնտեսական քաղաքականությունն արտահայտվում է կոնկրետ կերպով և իրացվում դրանց կատարման ընթացքում: Այդ պատճառով էլ պլանի վերաբերյալ հարցերն իրենց ընդունման պահից մինչև լուծումը պետք է մշտապես գտնվեն միավորումների կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Տեղին է հիշել Լ. Ի. Բրեժնևի խոսքերը, որ նա ասաց Տուլայում կայացած հանդիսությունների ժամանակ. «...պլանավորված քանակական մակարդակին հասնելու համար կարելի է, ինչպես ասում են, վերջին պահին «սեղմել»: Իսկ ահա որակական նոր մակարդակի հասնելու համար, արդյունավետության նկատելի բարձրացման համար այդպիսի կարճատև ջանքերը բացահայտորեն անբավարար են: Հարկավոր է ամենօրյա սիստեմատիկ աշխատանք»:*

*Առաջադրված խնդիրների հաջող կատարման համար միավորման պայմաններում կան արտադրական ու սոցիալ-կենցաղային հարցերի կոմպլեքսային լուծման մեծ հնարավորություններ: Կարևոր է, որ այդ հնարավորություններն իրացվեն պլանաչափորեն, հաշվի առնելով հեռանկարը, որ միավորման արտադրական ու սոցիալ-տնտեսական պլանում դրանք դառնան որպես տնտեսական միասնական կոմպլեքսներ:*

*Շատ անելիքներ կան սոցիալիստական մրցության կազմակերպումը կա-*

տարելագործելու ասպարեզում։ Այստեղ ամենագլխավորը, մեր կարծիքով, այն է, որ կոլեկտիվի խնդիրներն ու վերջնական արդյունքների արդյունավետ ապահովման անհրաժեշտությունը գիտակցի նրա յուրաքանչյուր անդամ։ Կարևոր է, որ սոցիալիստական մրցությունը լավագույն ձևով կատարի տնտեսական ու սոցիալական առաջընթացի հուժկու լծակի, աշխատավորների քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության դպրոցի իր դերը, մշտապես հարստանա նոր փորձով, հայրենասիրական արժեքավոր նախաձեռնություններով։ Համընդհանուր պաշտպանության են արժանացել «Չունենալ ետ մնացողներ», «Հայաստանի ապրանքներին՝ բարձր որակ» նախաձեռնությունները, արտադրության նոր ռեզերվների որոնման, խնայողության ռեժիմի ուժեղացման, աշխատանքային կարգապահության ամրապնդման շարժումը, որոնք շոշափելի արդյունք են տալիս։ Տարակույս չկա, որ տասներորդ հնգամյակում է՛լ ավելի կզարգանա աշխատավորների նախաձեռնությունը։ Եվ այդ գործի առաջամարտիկները պետք է լինեն մեր խոշոր արտադրամիավորումների կոլեկտիվները, նրանց կուսկազմակերպությունները։

Արտադրամիավորումներ ստեղծելիս կենտրոնանում են նյութական ու ֆինանսական հսկայական ռեսուրսներ, որոնք հարկավոր է լավ տնօրինել միասնական տնտեսական կոմպլեքսի պայմաններում։ Այդ իսկ պատճառով կառավարման հարցերը պետք է մշտապես լինեն կուսկազմակերպությունների գործունեության տեսադաշտում։ Իրագործելով ադմինիստրացիայի գործունեության վերահսկողության ֆունկցիաները՝ կուսկազմակերպությունները պետք է նաև հետևեն, որ ղեկավարների կառավարչական գործունեությունը հիմնվի տնտեսական զարգացման պայմանների կանխատեսման, օպերատիվ գործունեությունը հեռանկարային աշխատանքի հետ զուգակցելու վրա։ Որքան ավելի բարձր որակավորում ունենա ղեկավարությունը, այնքան ավելի ռացիոնալ և արդյունավետ կլինի ձեռնարկության տնտեսական գործունեությունը, այնքան ավելի կլավանան նրա որակական ցուցանիշները։

Վ. Ի. Լենինի աշխատություններում բազմիցս շեշտվում է, որ սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերում հաջողություն կարող են ապահովել միայն այնպիսի ղեկավարները, ովքեր ունեն գաղափարական-քաղաքական և գործնական լավ հատկանիշներ։ Առաջնորդը նշում էր, որ կառավարելու համար պետք է լինել ձեռնահաս, ամբողջությամբ ու ճշտությամբ իմանալ արտադրության բոլոր պայմանները, տեխնիկան, ունենալ գիտական որոշակի կրթություն։ Միավորման և արտադրության բոլոր օղակների ղեկավարների քաղաքական-գաղափարական բարձր հատկանիշները, կուսակցության քաղաքականության խոր իմացությունը նրանց համար անհրաժեշտ է, որպեսզի կարողանան տվյալ տեղամասում հետևողականորեն կենսագործել այդ քաղաքականությունը՝ նկատի ունենալով, որ կուսակցության ծրագիրը միաժամանակ նաև տնտեսական շինարարության ծրագիր է։ Կադրերին այդ հատկանիշների ներարկումը կուսկազմակերպությունների ուղղակի պարտականությունն է։

Արդի պայմաններում խիստ անհրաժեշտ է բարձրացնել միավորումների արհմիությունների գործունեության մակարդակը։ Այդ ասպարեզում որոշակի գործ է արվել. լուծվել են նրանց կազմակերպական կառուցվածքի հարցերը։ Բոլոր միավորումներում, ի տարբերություն կուսկազմակերպությունների, թույլատրված է ստեղծել արհմիութենական միասնական կազմակերպություններ՝ արհկոմների գլխավորությամբ։

Կուսկազմակերպությունները պետք է առավելագույն ուշադրություն դարձնեն միավորումների կոմերիտական կազմակերպությունների գործունեությանը։ ՀամԼԿԵՄ Կենտկոմը 1977 թ. ապրիլին որոշում ընդունեց այն մասին, որ արտադրական միավորումների կոմերիտական կազմակերպությունների կառուցվածքը հիմնականում պետք է համապատասխանի կուսկազմակերպությունների կառուցվածքին։

ՍՄԿԿ Կենտկոմը Գորկու ավտոգործարանի կուսկազմակերպությունների վերաբերյալ ընդունած որոշման մեջ միութենական հանրապետությունների



կոմկուսների Կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին հանձնարարեց մշտապես զբաղվել արտադրամիավորումների կուսկազմակերպությունների աշխատանքի բարելավման հարցերով, սիստեմատիկորեն ուսումնասիրել և ընդհանրացնել նրանց փորձը։ Առաջնորդվելով այդ որոշմամբ՝ կուսակցության Երևանի քաղկոմն ու շրջկոմները որոշ աշխատանք կատարել են։ Մասնավորապես, քաղկոմի բյուրոն համապատասխան որոշումներ է ընդունել «Էլեկտրասարք», «Հայէլեկտրալույս», «Մասիս» արտադրական և «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումների վերաբերյալ։ Բնական է, որ միավորումների կուսկազմակերպությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները շատ հարցերում դեռ նոր են մշակվում։ Դրա համար հարկավոր են և՛ կոլեկտիվ խորհուրդներ, և՛ փորձի ընդհանրացում, և՛ գործունեության խոր վերլուծություն։ Չի կարելի հանդուրժել այն, որ կուսակցության առանձին շրջկոմներ, գերագնահատելով միավորումների կուսկոմիտեների ազդեցության ուժը, երբեմն իրենց անմիջական գործը վստահում են ձեռնարկությունների կուսկազմակերպություններին, անբավարար են վերահսկում կուսկոմիտեների գործունեությունը, իսկ դա մի շարք դեպքերում հանգեցնում է կազմակերպական-կուսակցական աշխատանքի ընդհանուր մակարդակի իջեցման։ Այսպես, քաղկոմի բյուրոն, լսելով Երևանի էլեկտրալամպերի գործարանի կուսկոմիտեի հաշվետվությունը, նշեց, որ նրա աշխատանքի հիմնական թերություններից մեկը թույլ վերահսկողությունն է ընդունված որոշումների (ինչպես սեփական, այնպես էլ վերադաս կուսակցական մարմինների) կատարման նկատմամբ։ Իսկ կուսակցության 26 կոմիսարների անվան շրջկոմն անհրաժեշտ պահանջկոտություն չի ցուցաբերել և լավ չի օգնել կուսկազմակերպությանը՝ ժամանակին բացահայտելու և վերացնելու թերությունները։

Կուսակցության շրջանային կոմիտեները պետք է անհրաժեշտ եզրակացություններ անեն նման փաստերից։ Միավորումների նկատմամբ վերադաս կուսակցական մարմինների ուշադրությունը չպետք է սահմանափակվի բյուրոների նիստերում ու պլենումներում նրանց հաշվետվությունների քննարկմամբ, կուսակցական ու տնտեսական ակտիվի ուսուցման կազմակերպմամբ։ Անհրաժեշտ է սիստեմատիկաբար ուսումնասիրել և վերլուծել միավորումների գործունեությունը, պարբերաբար լինել կուսկազմակերպություններում, շփվել կուսակցական և տնտեսական ակտիվի լայն շրջանների հետ, ելույթներ ունենալ կոմունիստների և աշխատավորների առջև։

Միավորումների ստեղծմամբ աստիճանաբար պակասում է շրջկոմների աշխատողների սպասարկած կուսկազմակերպությունների թիվը, իսկ այդ հանգամանքը հնարավորություն է ընձեռում նրանց՝ ավելի հաճախակի լինել կուսկոմիտեներում, հանգամանորեն ծանոթանալ գործերի վիճակին, ուժեղացնել կուսկազմակերպություններին ցույց տրվող օգնությունը։ Կուսակցության շրջկոմներն այդ առումով այժմ ի վիճակի են շատ խնդիրներ լուծել անմիջականորեն մինիստրությունների ու գերատեսչությունների հետ միասին։

Կուսկազմակերպությունների կազմակերպական կառուցվածքի հետագա կատարելագործման նպատակով անհրաժեշտ է պարբերաբար ընդհանրացնել ու վերլուծել կուտակված փորձը, բարձրացնել կոմունիստների ակտիվությունը, զարգացնել նրանց նախաձեռնությունը։ Գլխավորն այն է, որ յուրաքանչյուր տեղամասում կոլեկտիվ ջանքերով որոշվեն աշխատանքի հետագա բարելավման ուղիները։

Առաջին կարևորագույն ու գործնական փաստաթուղթը, որտեղ խորապես վերլուծված է արտադրամիավորումների կուսկազմակերպությունների գործունեությունը, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումն է (1976 թ.) Գորկու ավտոգործարանի կուսկազմակերպությունների վերաբերյալ։ Այստեղ հանգամանորեն ցույց են տրված նոր պայմաններում կուսակցական աշխատանքի մակարդակի բարձրացման, տեղական կուսակցական մարմինների կողմից կուսկազմակերպությունների ղեկավարումը բարելավելու ուղիները։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման դրույթներն ու եզրակացություններն ունեն համակուսակցական նշանակություն և գործողության ուղեցույց են մեզ համար։

# ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲԱԶՄԱՊԱՏԿԵԼՈՒ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

**Մ. Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար

*ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԸ երկրի ժողովրդական տնտեսության զարգացման պատմության մեջ կմտնի որպես վիթխարի մասշտաբների և տնտեսական հնարավորությունների առավելագույն օգտագործման հնգամյակ։ ՍՄԿԿ XXV համագումարը հնգամյակի գլխավոր նշանաբանը և կուսակազմակերպությունների գործունեության հիմնական խնդիրը համարեց արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը։* «Արդյունավետություն և որակ։ *Այս երկու բառերը,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումում,— այժմ դարձել են ամբողջ տնտեսական գործունեության նշանաբանը։ Դրանց մեջ... արտահայտված են ժողովրդական տնտեսության զարգացման արդի փուլի օբյեկտիվ պահանջները»։*

*Հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը կուսակցության տնտեսական քաղաքականության կարևորագույն պահանջն է։ Դա նշանակում է արտադրական գործունեության ոլորտում, նյութական և աշխատանքային նվազագույն ծախսումների միջոցով, հասնել առավել բարձր արդյունքների։ Եվ եթե ժամանակակից արդյունաբերության բնագավառում այդ պահանջների ապահովումն ավելի հեշտ է (որովհետև այստեղ մեքենայացումն ու ավտոմատացումն անհամեմատ ավելի բարձր մակարդակի վրա են), ապա գյուղատնտեսության բնագավառում այդ առումով խնդիրն ավելի բարդ է։ Նախ՝ գյուղատնտեսության շատ ճյուղերում մեծ տոկոս է կազմում ձեռքի աշխատանքը։ Մեր՝ Աշտարակի շրջանի պայմաններում, օրինակ, եթե հացահատիկի արտադրությանն առնչվող պրոցեսների 90 տոկոսից ավելին արդեն մեքենայացված է, ապա շարահերկ կուլտուրաների և խաղողի այգիների մշակության գործում գերակշռողն առայժմ ձեռքի աշխատանքն է։ Այնուհետև՝ գյուղատնտեսության արտադրության բնագավառում լավագույն արդյունքների հասնելու համար պետք են շատ գործոններ՝ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատու սորտերի ու անասունների արժեքավոր ցեղերի ներդրում, ոռոգման գործի հստակ կազմակերպում, հողերի, պարարտանյութերի ու թունաքիմիկատների ռացիոնալ օգտագործում, բնակլիմայական անբարենպաստ պայմանների հաղթահարում։ Եվ այդ գործոններից յուրաքանչյուրը կարող է ուղղակիորեն նպաստել ինչպես գյուղատնտեսական մթերքների արտադրության աճին, այնպես էլ բարձր որակի ապահովմանը։ Կարևորն այստեղ այն է, թե ինչպե՞ս են օգտագործվում դրանք և ուղղվում հանրային արտադրության արդյունավետության բարձրացման նպատակին։*

*Արդյունավետության ու որակի բարձրացումը տնտեսական կարևորագույն խնդիր է, որի լուծման նպատակով կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները քիչ ջանքեր չեն գործադրում։ Կուսշրջկոմի բյուրոյում ու կուսակցական ժողովներում պարբերաբար քննարկվում են արդյունավետությանն ու որակին առնչվող հարցեր, ընդհանրացվում են այդ ասպարեզում տնտեսու-*



*թյունների ձեռք բերած հաջողությունները, բացահայտվում տեղ գտած թերությունները, միջոցառումներ մշակվում դրանք, որքան հնարավոր է, կարճ ժամանակամիջոցում վերացնելու համար։ Բայց քննարկումն ու միջոցառումների մշակումը դեռևս հարցի մի կողմն են, դրանցով առաջ չես գնա, բավարար արդյունքի չես հասնի, եթե հետևողականորեն չզբաղվես ընդունված ամեն մի որոշման կենսագործմամբ, մշակած ամեն մի միջոցառման իրականացմամբ։*

*Ասածս հիմնավորելու համար նշեմ մի կոնկրետ օրինակ։ Հայաստանի կոմկուսակցության XXVI համագումարին ներկայացված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ՀԿԿ Աշտարակի շրջկոմը և շրջանային սովետի գործկոմը իրավացի կերպով քննադատվեցին այն բանի համար, որ անբավարար են զբաղվում հողերի արդյունավետ օգտագործման հարցերով, նրանց թույլ հսկողության հետևանքով գյուղատնտեսական շրջանառությունից դուրս է մնացել վարելահողերի մոտ 30 տոկոսը։*

*Քննադատությունը ժամանակին ու տեղին էր, զգաստացնող և ուսանելի։ Չէ՞ որ ինչպես բուսաբուծության, այնպես էլ անասնաբուծության բնագավառում կարելի է բարձր արդյունավետություն ապահովել, եթե ճիշտ ու ռացիոնալ օգտագործվի հողի յուրաքանչյուր կտորը, բարձրացվի դրա բերրիությունը։ Մինչդեռ մեզ մոտ լուրջ թերացումներ կային այդ ասպարեզում, բայց և լայն հնարավորություններ՝ դրանք շտկելու համար։ Եվ կուսշրջկոմի պլենումը 1976 թ. ապրիլին գործարար մթնոլորտում քննարկեց հողօգտագործման հարցը։ Մտքերի փոխանակության մասնակիցները շեշտում էին, որ լքված այդ հողերը մեծ ռեզերվ են մթերքների համախառն արտադրանքի ավելացման, կերի բազայի ամրապնդման համար, անում էին գործի շահերից ելնող խելամիտ առաջարկություններ։ Պլենումն ընդունեց շրջանի հասցեին արված քննադատությունը և մշակեց լքված հողերը շրջանառության մեջ դնելու, դրանց օգտագործման արդյունավետությունը էականապես բարձրացնելու միջոցառումներ։ Մասնավորապես պահանջվեց անհրաժեշտ ուշադրություն նվիրել դրանց ոռոգման, պարարտացման ու քիմիացման վրա։*

*Կուսշրջկոմի պլենումի որոշումը քննարկվեց սովխոզների ու կոլտնտեսությունների, գյուղատնտեսական մարմինների սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Նկատենք, որ կոմունիստները ոչ միայն ընդունում էին քննադատությունը, դատապարտում իրավիճակը, այլև ուղիներ որոնում, միջոցներ նշում հողի ամեն մի թիզն արդյունավետ օգտագործելու համար։ Այդ առումով հատկանշական է Սասունիկի սովխոզի կուսկազմակերպության օրինակը։ Այստեղ ոչ միայն լայնորեն քննարկեցին հողօգտագործման հարցը, այլև դիմեցին գործնական քայլերի։ Բանն այն է, որ սովխոզում կար գյուղատնտեսական շրջանառությունից դուրս մնացած մոտ 100 հեկտար հողատարածություն։ Կուսակցական ժողովը հանձնարարեց սովխոզի դիրեկցիային՝ այն հատկացնել խոտացանությանն ու բանջարեղենի արտադրությանը, իսկ մի մասի վրա հիմնել խաղողի ու պտղատու այգիներ։ Կուսկազմակերպության նախաձեռնությամբ ընդունվեց հանրապետության բոլոր հողագործներին ուղղված կոչ՝ «Հողը մեր հարստությունն է», որն ամենուրեք լայն արձագանք գտավ։ Սասունիկցիները գործեցին այդ նշանաբանով և պատվով կատարեցին կուսակցական ժողովի հանձնարարականը։ Լքված հողերում կատարված բազմամյա խոտացանությունը դարձավ լավ ռեզերվ կերի բազայի ամրապնդման համար։*

*Կազմակերպական աշխատանքի ուժեղացման և ընդունված որոշումների կենսագործման շնորհիվ շրջանի տնտեսություններն անցած երկու տարում գյուղատնտեսական շրջանառության մեջ դրին մոտ 1.800 հեկտար հողատարածություն, 1.100 հեկտարով ընդարձակվեց բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը։*

*Բազմիցս անդրադառնալով հացահատիկի արտադրության ավելացման, դրա արդյունավետության բարձրացման խնդրին՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների ուշադրությունը սևեռել են բարձր բերքատու սորտերի ներդրման ու ար-*

մատավորման վրա։ Վերջին տարիների փորձը ցույց է տալիս, որ մեր շրջանի հողակլիմայական պայմաններում լավ աճում ու բարձր բերք են տալիս «Բելոստայա»-ն, «Կավկազ»-ը, «Ավրորա»-ն և տարեցտարի դրանց ավելի շատ տարածություններ են տրամադրվում։

Արտադրության գիտական ու պրակտիկ հարցերի ճիշտ լուծումն արդեն տվել է շոշափելի արդյունք. անցած տարի շրջանը զգալիորեն գերազանցեց հացահատիկի բերքատվության, համախառն արտադրության ու մթերումների նախորդ տարիների մակարդակը և զեկուցեց պետությանը հացահատիկ վաճառելու հնգամյա ծրագիրը երկու տարում կատարելու մասին։ Կոշի №№ 2, 5 և Արուչի սովխոզներում հեկտարի բերքատվությունը կազմեց 24—25 ցենտներ։ Բերքատվության բարձրացման շնորհիվ մեկ ցենտներ հացահատիկի ինքնարժեքն իջավ 2,5 ռուբլով, իսկ դա ինքնին եկամուտների աճ է, հետևաբար և՝ արդյունավետության բարձրացման կարևոր ցուցանիշ։

Աշտարակցիներն ավանդական խաղողագործներ են։ Վաղեմի ժամանակներից Աշտարակն ու իր շրջակայքը հայտնի են եղել խաղողի լավագույն տեսակներով։ Խաղողի արտադրության բազայի վրա շրջանում հիմնվել է գինեգործարան։ Սակայն վերջին տասնամյակում այդ ճյուղը նահանջ է ապրում. զգալիորեն կրճատվել է այգիների տարածությունը, նվազել բերքատվությունն ու եկամտաբերությունը։ Այդ առիթով մեզ խիստ կշտամբել են ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումներում, Հայաստանի կոմկուսակցության XXVI համագումարում։

Խաղողագործության ետ մնալը հաղթահարելու և իրավիճակը բարելավելու նպատակով կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները ձեռնարկել են որոշ դրական քայլեր։ Մեր առաջնահերթ խնդիրն ենք համարում նախ և առաջ բարձրացնել կուսկազմակերպությունների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների պատասխանատվությունն ու պահանջկոտությունը այդ ճյուղի զարգացման նկատմամբ։ Մենք ամեն կերպ օգնում ենք գյուղատնտեսության կադրերին՝ իրենց վստահված օղակները վարելու հաշվենկատորեն, հանդես բերելու ձեռներեցություն։ Խելամիտ օգնությունը լավ արդյունք է տալիս, այն բխում է գործի շահերից, բայց եթե հարկ է զգացվում, ապա դիմում ենք նաև կազմակերպական միջոցների։ Օշականում այգեգործության վիճակը չափազանց վատ էր։ Մեր ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ այստեղ մասնագիտական հսկողություն չի իրականացվում այդ ճյուղի նկատմամբ. ցածր է մանավորապես խաղողի այգիների բերքատվությունը, այն հեկտարի հաշվով կազմում է 20—25 ցենտներ։ Այգիների մի մասը վերակառուցման անվան տակ քանդվել էր, և ոչ ոք չէր մտածում դրանք վերականգնելու մասին։

Կուսշրջկոմի բյուրոն անցած տարվա օգոստոսին, համակողմանի ուսումնասիրությունից հետո քննարկեց Օշականի սովխոզում մասնագիտական հսկողության դրվածքը։ Այգեգործության նկատմամբ անհրաժեշտ հսկողություն չապահովելու համար բյուրոն գլխավոր գյուղատնտես Շ. Մելիքյանին ազատեց աշխատանքից, սովխոզի դիրեկտոր Ռ. Պողոսյանին և կուսկազմակերպության քարտուղար Ս. Հովհաննիսյանին ենթարկեց կուսակցական տույժի։ Մենք խստիվ պահանջեցինք տնտեսության ղեկավարներից՝ վերականգնել նախկինում լրիվ չափով դուրս գրված, քանդված այգիները, դրան զուգընթաց 2—3 տարում վերակառուցել եղած հին թմբային այգիները, դրանք դարձնել մեքենահարմար։ Հաշվի առնելով, որ սովխոզում տարիներ շարունակ ուշադրություն չի նվիրվել զանգվածային տարածության վրա պտղաբուծության զարգացմանը, կուսշրջկոմի բյուրոն իր մշակած միջոցառումներով նախատեսեց այստեղ այդ ձևով հիմնել պտղատու նոր այգիներ։

Ինչպես արտադրության մյուս ճյուղերի, այնպես էլ խաղողագործության և պտղաբուծության զարգացման գործում վճռական դեր է խաղում ինտենսիվացումը։ Հայտնի բան է, որ արտադրության վարման հին եղանակներով հնարավոր չէ ապահովել բարձր արդյունավետություն։ Իսկ մենք այս առումով քիչ թերացումներ չունենք։



Վերլուծելով խաղողագործության անցած տարիների ոչ-բավարար արդյունքները և բացահայտելով ետ մնալու պատճառները՝ մենք սկսել ենք ավելի լրջորեն զբաղվել այս ճյուղի ինտենսիվացման հարցով։ Կուսշրջկոմի նախաձեռնությամբ շրջանում հրավիրվել են մի շարք գիտաարտադրական կոնֆերանսներ ու խորհրդակցություններ, որտեղ քննարկվել են ինտենսիվացման ճանապարհով խաղողագործության և պտղաբուծության արդյունավետության բարձրացման, նոր սորտերի ներդրման, այգիների մշակության բարելավման և այլ հրատապ խնդիրներ, կոնկրետ հանձնարարականներ են տրվել տնտեսությունների ղեկավարներին ու մասնագետներին։ Այդ միջոցառումներն օգնում են մեր մարդկանց՝ գիտականորեն մոտենալու այգեգործության զարգացման հարցերին, խելամտորեն զբաղվելու նոր այգիների հիմնման, հների նոսրության վերացման ու բերքատվության բարձրացման հարցերով։ Մենք կուրս ենք վերցրել, որպեսզի նոր այգիները հիմնվեն բացառապես զանգվածային տարածությունների վրա։ Դա հնարավորություն կընձեռի հետագայում լայնորեն մեքենայացնելու մշակությունը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և իջեցնելու ինքնարժեքը։ Այդ ձևով էլ անցած երկու տարում խաղողի այգիներն ընդարձակել ենք 200, պտղատունը՝ 384 հեկտարով։

Փորձը ցույց է տալիս, որ մեզ մոտ ևս հնարավոր է խաղողի բարձր բերք ստանալ։ Հեկտարից 40 ցենտներ բերքը, ինչ խոսք, չափազանց ցածր ցուցանիշ է, դա մեզ բնավ չի բավարարում, որովհետև մեր բազմաթիվ ուսումնասիրությունները ցույց են տվել, որ խաղողագործության բնագավառում կան շատ հնարավորություններ ու ռեզերվներ, որոնց լայն օգտագործումը կնպաստեր բերքատվության աճին և, հետևաբար, այդ ճյուղի արդյունավետության բարձրացմանը։ Ճիշտ է, անցած տարի կարկուտը մեծ վնաս հասցրեց շրջանի այգիներին և նկատելիորեն իջեցրեց բերքատվությունը, սակայն առաջավոր կոլեկտիվների բարձր արդյունքներն ապացուցում են, որ կարելի էր ավելի առատ բերք հավաքել։ Սասունիկի սովխոզի № 5 բրիգադան, օրինակ, մի քանի անգամ գերազանցում է շրջանի բերքատվության միջին մակարդակը, նույնիսկ առանձին հեկտարներից ստանում է 150 ցենտներ բերք։

Այգիների բերքատվությունը բարձրացնելու համար առաջին հերթին հարկավոր է վերացնել դրանց՝ չարիք համարվող նոսրությունը։ Մեր շրջանում այն 1974 թվականին կազմում էր 20—21 տոկոս։ Դա նշանակում է, որ ավելի քան 1.000 հեկտար տարածության վրա ոչ մի վազ չկար և տարիներ շարունակ նյութական ու աշխատանքային հսկայական միջոցներ են ծախսվել՝ առանց որևէ արդյունք ստանալու։ Կուսշրջկոմի բյուրոն և շրջսովետի գործկոմը, 1976 թ. սկզբներին, քննարկելով խաղողագործության վիճակը շրջանում, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների մասնակցությամբ մշակեցին խաղողի ու պտղատու այգիների նոսրության վերացման եռամյա պլան։ Այն լայնորեն քննարկվեց տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպություններում և նշվեցին այգիների լիարժեքության կոնկրետ ուղիներ՝ հաշվի առնելով տեղի կոնկրետ պայմանները։ Անցած երկու տարում շրջանի տնտեսությունները խաղողի այգիներում կատարեցին մեկ միլիոն 100 հազար, իսկ պտղատու այգիներում՝ 90 հազար լրացում։ Այդ գործը հատկապես լավ է կազմակերպված Սասունիկի, Ուջանի, Զորափի, Ոսկեվազի տնտեսություններում։

Պտղաբուծությունը մեր շրջանում հեռանկարային ճյուղ է, և մենք հսկայական ջանքեր ենք գործադրում դրա բուռն զարգացման ու արդյունավետության բարձրացման համար։ Արդյունավետության հիմնական ուղին ինտենսիվացումն է, և մենք առաջին անգամ ձեռնամուխ ենք եղել ինտենսիվ պտղաբուծության ստեղծմանը։ Այդ նպատակով հիմնում ենք պալմետային այգիներ. արդեն 300 հեկտար կա Կարբիի, Ուջանի և Օհանավանի տնտեսություններում։ Մինչև հնգամյակի վերջը կհիմնվի ևս 400—500, իսկ հեռանկարում՝ 2.000 հեկտար այգի։ Տնկվում են բացառապես հայրենական և արտասահմանյան արժեքավոր ծառատեսակներ։ Ի դեպ, պալմետային այգին սովորականի համեմատությամբ երեք անգամ ավելի շատ ծառ է պարունակում և մի քանի անգամ շատ ու կայուն բերք տալիս։ Այն միաժամանակ արագ է անցնում արդյունքային բերքատվության և առաջին իսկ տարում փոխհատուցում իր ստեղծ-

ման համար ներդրված միջոցները։ Կանցնի ևս մի քանի տարի, և նոր հիմնվող այգիներից տարեկան կստացվի 25—30 հազար տոննա պտուղ։ Այդ քանակի պտուղը պահպանելու, կլոր տարին բնակչությանը թարմ միրգ մատակարարելու նպատակով նախատեսվում է կառուցել ստանդարտային հզոր տնտեսություն, որի ամբարներում հնարավոր կլինի տարեկան պահել 10—15 հազար տոննա միրգ։

Անասնապահությունը շրջանի էկոնոմիկայի առաջատար ճյուղերից է։ Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները վերջին տարիներին լրջորեն են զբաղվում նաև այդ ճյուղի զարգացմամբ ու արդյունավետության բարձրացմամբ։ Նախորդ տարիների համեմատությամբ, զգալիորեն աճել են կաթի համախառն արտադրությունն ու կովերի միջին կաթնատվությունը։ Կոլտնտեսություններն ու սովխոզները, ամբողջությամբ վերցրած, կաթի արտադրության անցած տարվա պլանը կատարեցին ժամկետից երկու, պետությանը կաթի ու մսի վաճառքինը՝ մեկ ամիս շուտ։ Զորափի, Սասունիկի, Ոսկեվազի սովխոզները կաթի մթերման անցած տարվա պլանը կատարելու մասին զեկույց տվեցին ավելի վաղ՝ ժամկետից 4—5 ամիս շուտ և պլանից ավել ու բարձրորակ կաթ ստանալու դիմաց ստացան դրամական զգալի եկամուտներ։

Սակայն, երբ մեր ընդհանուր արդյունքները դիտում ենք կուսակցության առաջադրած պահանջների, արդի հնարավորությունների ու առաջավոր տնտեսությունների ձեռք բերած մակարդակի տեսանկյունից, ապա նկատում ենք, որ չափազանց մեծ անելիքներ ունենք անասնաբուծության զարգացման և արդյունավետության բարձրացման ասպարեզում։ Կովերի միջին կաթնատվությունը մեր շրջանում անցած տարի առաջին անգամ կազմեց 1830 կիլոգրամ։ Ճիշտ է, դա մեծ չափով գերազանցում է նախորդ տարիների մակարդակը, բայց մեզ բնավ չի գոհացնում։ Բանն այն է, որ մեր շրջանի ֆերմաներում տարիներ շարունակ բուծվում են տեղական ցեղի կենդանիներ, որոնք ցածր մթերատու են։ Հետևաբար, անասնապահության զարգացման հիմնական ուղին ինտենսիվացումն է։ Գլխավոր նպատակը համարելով անասնապահական մթերքների ավելացումը և մթերատվության նշանակալի աճը՝ կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները մասնագետների ու անասնապահների առջև խնդիր են դնում լուծել անասնաբուծության ինտենսիվացմանն առնչվող մի շարք լուրջ խնդիրներ՝ ցեղաբուծության բարելավում, աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակների արմատավորում, նոր կերատեսակների ներդրում, աշխատատար պրոցեսների լայն մեքենայացում և այլն։ Այդ ասպարեզում նկատելի հաջողության է հասել Ավանի սովխոզը։ Այստեղ ցեղաբուծական գործը դրվել է ամուր հիմքերի վրա։ Որպես կանոն, բարձրարժեք մատղաշներն առանձնացվում, լավ խնամվում ու կերակրվում են և երկու տարեկանում արդեն կշռում 400 կգ։ Կովերի կազմը համալրած երինջներից կթի երկրորդ շրջանում կարելի է ստանալ 3.000 կգ կաթ։ Վերարտադրության եղանակով կովերի կազմի բարելավման համար կպահանջվի վեց տարի։ Ավանցիները հենց այդպիսի նպատակ են դրել իրենց առջև, ընդ որում, առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների։

Սակայն, ինչին այսօր ձգտում են ավանցիները, հասել են Սասունիկի սովխոզի մարդիկ՝ կուսկազմակերպության անմիջական ղեկավարությամբ (քարտուղար՝ Զ. Մարգարյան)։ Դեռևս 1975 թ. կուսակցական դռնբաց ժողովում համակողմանի քննարկվեց անասնապահության ինտենսիվացման հարցը։ Մշակված միջոցառումներին համապատասխան՝ կոնկրետ հանձնարարություններ ստացան արտադրական բոլոր ճյուղերի ղեկավարները, մասնագետները, կոմունիստները։ Կուսբյուրոն հսկողություն սահմանեց միջոցառումների իրականացման, հանձնարարությունների կատարման նկատմամբ։ Տնտեսությունն անցած երկու տարում օգուտների հաշվին կառուցեց անասնապահական մի շարք օբյեկտներ, կաթնապրանքային ֆերման ենթարկեց կոմպլեքսային մեքենայացման, Լատվիայից ձեռք բերեց սև խայտաբղետ ցեղի 100 երինջ, որոնք անցել են կովերի շարքը և տարեկան տալիս են 3.000 կգ-ից ավելի կաթ։ Ի դեպ, Սասունիկի կթվորները շրջանում առաջինը հատեցին 3.000 կգ սահմանա-



գիծը։ Այստեղ լուծված է երկրի բազայի ամրապնդման խնդիրը։ Կուտակված կերը հնարավորություն կընձեռի հանրային հոտը շուրջ տարին փոխադրել մսուրային պահվածքի։ Ֆերման (վարիչ՝ ՍՄԿԿ անդամության թեկնածու Ռ. Մարտիրոսյան) անցած տարի կովերի միջին կաթնատվությունը հասցրեց 3.200 կգ-ի և նախորդ տարվա համեմատությամբ համախառն արտադրանքն ավելացրեց մեկուկես անգամ։

Մի քանի տարի է, ինչ մեր հանրապետությունում ներդրվել է մատղաշի ինտենսիվ աճեցման Մեղրաձորի (Հրազդանի շրջան) կոլտնտեսության անասնապահների նախաձեռնած մեթոդը։ Այն եկամտի լավ աղբյուր է դարձել մեր բոլոր տնտեսությունների համար։ Անցած տարի այդ եղանակով աճեցված մատղաշները մթերակայան են հանձնվել 300 կգ-ից ավելի կենդանի քաշով։ Իսկ դա նշանակում է, որ տնտեսություններն ստանում են 30—50 տոկոս հավելավճար։

Անասնաբուծության արդյունավետության բարձրացմանը մեծապես կնպաստեն նաև աշխատատար պրոցեսների մեքենայացման ու կերի ռացիոնալ օգտագործման նպատակով մեր ձեռնարկած միջոցները։ Նոր հնգամյակի երկու տարում հինգ ֆերմաներում աշխատատար բոլոր պրոցեսները, ներառյալ կիթը, մեքենայացվել են։ Կոմպլեքսային մեքենայացման գործը շարունակվում է։ Արդեն սկսվել և հնգամյակի վերջում կավարտվի Օշականի, Կոշի, Արտաշավանի 1.600 գլուխ կովի տարողությամբ կաթնային համալիրների շինարարությունը։ Դա բխում է արտադրության մասնագիտացման շահերից, մի բան, որը մեծապես կխթանի արդյունավետության բարձրացումը։

Գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման ասպարեզում մեր ձեռք բերած հաջողություններն զգալի են, սակայն, այնուամենայնիվ, կան և էական թերություններ ու թերացումներ։ Եթե Սասունիկում, Զորափում, Ավանում, Ուջանում, Կոշում և մի շարք այլ առաջավոր տնտեսություններում, աշխատանքի կազմակերպման բարելավման, կարգապահության ամրապնդման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնապահության մթերատվության բարձրացման շնորհիվ, ապահովվում է բարձր շահութաբերություն, ստեղծվում են հետագա առաջընթացի լավ նախադրյալներ, ապա նույնը չի կարելի ասել, օրինակ, Ագարակի, Բաղմաղբյուրի, Օհանավանի, Բյուրականի, Շամիրամի և ուրիշ տնտեսությունների մասին։ Նրանց ցուցանիշները շատ ցածր են շրջանի միջին մակարդակից։ Վերցնենք թեկուզ անասնապահությունը։ Ինչպես ասվեց, կովերի միջին կաթնատվությունը շրջանում հասել է 1.830 կգ.-ի, մինչդեռ Ագարակում այն 1396 կգ է, Օհանավանում, Ուշիում, Փարպիում, Բաղմաղբյուրում, Բյուրականում՝ 1.420—1.560 կգ։ Եվ, այսպես, ամեն մի կովից շրջանի միջինից պակաս կաթ է ստանում 10 տնտեսություն, և եթե նրանք հասնեին շրջանի միջին մակարդակին, ապա լրացուցիչ կստացվեր 344 տոննա կաթ։ Կամ 1977 թ. մթերակայան ցածր յուղայնությամբ և ստանդարտին չհամապատասխանող կաթ հանձնելու պատճառով նշված և մի շարք այլ տնտեսություններում պակաս է հաշվարկվել 80 տոննա կաթ։ Դա նշանակում է, որ մենք կորցրել ենք 24 հազար ռուբլի։ Հետևանքն օրինաչափ է. շատ տնտեսություններում անասնապահությունը շահութաբեր չէ։

Ցածր արդյունավետությունը պետք է բացատրել նաև կուսակցական կազմակերպական և քաղաքական անբավարար աշխատանքով։ Նշված տնտեսությունների կուսկազմակերպությունները խորամուխ չեն լինում արտադրության մեջ, ժամանակին քննարկման առարկա չեն դարձնում դրանց առնչվող հարցերը, չեն հետևում իրենց ընդունած որոշումների կատարմանը։ Նրանք, ինչպես հարկն է, չեն զբաղվում նորի ու առաջավորի արմատավորմամբ, հանդուրժում են թերություններն ու թերացումները, վատ են իրականացնում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրենց ֆունկցիան։

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը սոսկ տնտեսական գործ չէ, դա կուսակցության առաջադրած գլխավոր նշանաբանն է, որը գործունեության ուղեցույց պետք է լինի կուսկազմակերպությունների համար։

Տնտեսական, կազմակերպական և քաղաքական աշխատանքն անխզելի են։

Բնավ չանտեսելով տնտեսական մարմինների ֆունկցիաները՝ մենք պարտավոր ենք կուսակցական-կազմակերպական և քաղաքական ողջ գործունեությունը ծառայեցնել տնտեսական խնդիրների անվերապահ լուծմանը: Հենց այդպես էլ վարվում են Սասունիկի, Ավանի, Ոսկեվազի, Զորափի, Ուջանի, № 5 սովխոզների, Ագարակի և Ոսկեհատի կոլտնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները:

Սերտորեն համագործակցելով դիրեկցիաների ու վարչությունների հետ՝ նրանք մշտական հսկողություն են սահմանում արտադրական ճյուղերի ղեկավարների ու մասնագետների գործունեության նկատմամբ, օգնում նրանց՝ բարելավելու գործերի վիճակը, կատարելու նախատեսված պլաններն ու ստանձնած սոցպարտավորությունները: Եվ միանգամայն օրինաչափ է, որ այդ տնտեսությունները տարին փակում են օգուտով, զգալի միջոցներ հատկացնում հիմնական ֆոնդերը մեծացնելու, աշխատավորների վարձատրությունն ավելացնելու, սոցիալ-կուլտուրական լայն միջոցառումներ իրականացնելու համար:

Մեր մշակած հեռանկարային պլանին համապատասխան, առաջիկա տարիներին շրջանում մեծ չափերով ընդարձակվելու են խաղողի այգիները, վերակառուցվելու են հները: Միայն վերջերս գործարկված Արզնի—Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի գոտու հողատարածություններում հիմնվելու է մոտ 1.000 հեկտար խաղողի ու պտղատու այգի: Այդ նշանակում է, որ այգիների մշակության մեքենայացումը դառնում է կենսական անհրաժեշտություն: Ի տարբերություն հարթավայրային տնտեսությունների, որտեղ հնարավոր է օգտագործել կուլտիվատորներ, լեռնային շրջաններում այգիների մշակության մեքենաները պետք է ունենան առանձնահատուկ կառուցվածք: Մի ժամանակ մենք ստանում էինք «ՊՐ—2,5» մակնիշի գութաններ, դրանց հետ նաև՝ այգեթաղի հարմարանքներ: Սակայն, չգիտեմ ինչու, դրանց արտադրությունը դադարեցվել է. եթե այս հարցը չլուծվի, ապա այգիների մեքենայական մշակության մասին խոսք լինել չի կարող: Բացի այդ, շրջանի տնտեսություններում չեն բավարարում կերի կուտակման մեքենաները, նորոգման տեխնիկա քիչ է ստացվում: «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորումը պետք է որ զբաղվի այդ հարցերով: Դրա համար հարկ կլինի պարբերաբար ուսումնասիրել տնտեսությունների պահանջները գյուղատնտեսական տեխնիկայի նկատմամբ:

Արզնի—Շամիրամ ջրանցքի առաջին հերթի գոտում գտնվող Սասունիկի և Արայի սովխոզներում, նրանց կազմակերպման տեխնիկատնտեսական հիմնավորմամբ, պետք է լիներ առաջինում՝ 5.000, երկրորդում՝ 4.000 բնակիչ: Սակայն երկու տնտեսություններում էլ իններորդ տարին է՝ դադարեցվել է բնակելի տների շինարարությունը: Բանվորական ուժը չի բավարարում ինչպես հարկն է մշակելու եղած այգիները: Այդ պատճառով բերքի զգալի կորուստ է լինում:

Գաղտնիք չէ, որ հանրային արտադրության վերելքի, արդյունավետության բարձրացման գործում հսկայական է գյուղատնտեսության բարձրորակ մասնագետների դերը: Շրջանի շատ տնտեսություններ չունեն բարձրագույն կրթությամբ տեղացի մասնագետներ՝ գյուղատնտես, անասնաբույժ, ինժեներ, իսկ գործուղվածները կամ հրավիրվածները, բնակարաններ չլինելու պատճառով, հեռանում են գյուղից: Ժամանակն է, որ գյուղմինիստրությունը միջոցներ հատկացնի բնակարանային շինարարությունը ծավալելու համար: Դրանով կլուծվի ինչպես բանվորական ուժի հավաքման, այնպես էլ տնտեսությունները մասնագետներով ապահովելու խնդիրը:

Հնգամյակի երրորդ տարում լուրջ խնդիրներ են ծառացած մեր շրջանի գյուղատնտեսության աշխատողների, կուսկազմակերպությունների առջև: Նախորդ տարվա համեմատությամբ, նախատեսվում է հողագործական և անասնապահական մթերքների արտադրության զգալի աճ: Այդ խնդիրները հաջողությամբ լուծելու, հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար մեր մարդիկ գործադրում են իրենց բոլոր ջանքերը, կյանքի կոչում եղած հնարավորություններն ու ռեզերվները:

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՄՊԵՐԸ ԵՎ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ ՀՍՍՀ-ՈՒՄ

**Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր

Կոլտնտեսությունները և սովխոզները վճռական դեր են խաղում գյուղատնտեսական մթերքների արտադրության ընդհանուր հաշվեկշռում, ուստի և դրանց զարգացման տեմպերի և տենդենցների ուսումնասիրությունը տնտեսագիտության կարևորագույն խնդիրներից է:

Այս տեսակետից որոշակի հետաքրքրություն է ներկայացնում այն հարցը, թե ինչպիսի տեմպերով է զարգացել և զարգանում մեր հանրապետության գյուղատնտեսությունը, հատկապես նրա հանրային սեկտորը, անցած տասը տարիների ընթացքում (1965—1975 թթ.): Ի դեպ, այդ տարիներին հանրապետության կոլտնտեսությունների թիվը զգալիորեն կրճատվել է, իսկ պետական տնտեսություններինը՝ ավելացել:

Այդ մասին պատկերացում են տալիս հետևյալ տվյալները (տե՛ս աղյուսակ 1):

Աղյուսակ 1

ՀՍՍՀ կոլեկտիվ և պետական տնտեսությունների մի քանի ցուցանիշների շարժը 1965—1975 թթ.

| | Կոլտնտեսություններ | | Սովխոզներ | |
|---|---|---|---|---|
| | 1965 | 1975 | 1965 | 1975 |
| Տնտեսությունների թիվը | 536 | 371 | 203 | 358 |
| Գյուղատնտեսության բոլոր հողատեսքերը (հազար հեկտար) | 751,8 | 503,5 | 440,2 | 705,0 |
| Գյուղատնտեսության համախառն արտադրանքի արժեքը՝ 1965 թ. համադրելի գներով (մլն ռ.) | 166,0 | 173,2 | 81,0 | 179,1 |
| Ապրանքային արտադրանք (դրամական միջոցներ, մլն ռ.) | 139,8 | 198,2 | 68,5 | 200,7 |
| Հիմնական արտադրաֆոնդեր (մլն ռ.) | 199,8 | 272,2 | 179,5 | 549,8 |

Ինչպես տեսնում ենք, կոլեկտիվ և պետական տնտեսությունների արտադրության բացարձակ ծավալի հարաբերությունը զգալի փոփոխություններ է կրել: Եթե 1965 թ. կոլտնտեսությունների համախառն արտադրանքի, ինչպես

նաև ապրանքային արտադրանքի (դրամական միջոցների) ընդհանուր գումարը շուրջ երկու անգամ գերազանցում էր պետական տնտեսությունների համապատասխան ցուցանիշներին, ապա 1975 թ. այդ երկու սեկտորների համախառն և ապրանքային արտադրանքի ծավալները գրեթե հավասարվում են և նույնիսկ պետական սեկտորը մի փոքր առաջ է անցել կոլտնտեսային սեկտորի համեմատ, իսկ հիմնական ֆոնդերի ծավալով պետական տնտեսություններն ավելի քան երկու անգամ գերազանցել են կոլտնտեսություններին։

Հասկանալի է, որ նշված տեղաշարժը կատարվել է հիմնականում զգալի թվով կոլտնտեսություններ սովխոզների վերածելու հաշվին։ Ինչպես երևում է աղյուսակից, հանրապետության կոլտնտեսությունների թիվը նշված 11 տարում պակասել է 165-ով, իսկ պետական տնտեսություններինը՝ ավելացել 153-ով։

Վերոհիշյալ տվյալներից երևում է, որ 10 տարում հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների համախառն արտադրանքի ֆիզիկական ծավալը համադրելի գներով ավելացել է 42,6 տոկոսով։ Մինչդեռ ապրանքային արտադրանքի իրացումից ստացված փաստացի դրամական միջոցների աճը կազմել է 91,5 տոկոս։ Այստեղից հետևում է, որ դրամական միջոցներն ավելացել են ո՛չ միայն արտադրական գործոնի, այսինքն արտադրանքի ֆիզիկական ծավալի (անփոփոխ գներով հաշվարկած) մեծացման, այլև կոնյունկտուրային գործոնների, այն է՝ իրացման գների բարձրացման, ինչպես նաև, որոշ չափով, տնտեսության ապրանքայնության բարձրացման հաշվին։

Եվ, իսկապես, նշված տարիներին տեղի ունեցավ գյուղատնտեսական արտադրանքի պետական մթերման գների մասնակի բարձրացում, որի նպատակն էր այդ գները հնարավորին չափ մոտեցնել արտադրանքի միավորի վրա կատարվող հանրորեն անհրաժեշտ ծախսերի մակարդակին։ Հասկանալի է, որ մթերման գների բարձրացումն անմիջականորեն պետք է անդրադառնար կոլտնտեսությունների և սովխոզների դրամական միջոցների վրա։

Համախառն արտադրանքի և ապրանքային արտադրանքի (դրամական միջոցների) աճի տեմպերի տարբերությունն առավել ցայտուն երևում է Լոռի-Փամբակի տնտեսությունների օրինակով, որտեղ համախառն արտադրանքի ծավալն ավելացել է ընդամենը 6—7 տոկոսով, իսկ դրամական միջոցները՝ ավելի քան երկու անգամ։ Այս գոտու կոլտնտեսությունների ապրանքային արտադրանքի այդպիսի բարձր աճը պետք է բացատրել, հավանաբար, նրանով, որ գոտին հիմնականում անասնապահական թեքում ունի (անասնապահությունը տալիս է կոլտնտեսությունների ապրանքային արտադրանքի 68 տոկոսը)։ Իսկ դա նշանակում է, որ այս գոտում զգալի դեր է խաղացել անասնապահական մթերքների պետական մթերման գների բարձրացումը, որը և անմիջապես պետք է անդրադառնար տնտեսությունների դրամական միջոցների աճի վրա։ Ասվածն այս կամ այն չափով վերաբերում է նաև անասնապահական թեքում ունեցող լեռնային մյուս գոտիներին։

Այժմ համեմատենք հանրային տնտեսության համախառն արտադրանքի և հիմնական ֆոնդերի շարժը։

Վերը բերված աղյուսակի թվերը վկայում են, որ, ընդհանուր առմամբ, հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների հիմնական ֆոնդերը մոտ 1,5 անգամ ավելի բարձր տեմպերով են աճել, քան համախառն արտադրանքի ծավալը։ Պարզ է, որ դրա հետևանքով ֆոնդահատույցի ցուցանիշը պետք է իջներ։ Այսպիսով, կարելի է ասել, որ հանրային տնտեսության ինտենսիվացումը (ֆոնդերի և համախառն արդյունքի ծավալի ավելացումը միավոր հողատարածության հաշվով) ուղեկցվել է հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության նվազումով։ Պետք է ասել, որ հանրային գյուղատնտեսության հիմնական ֆոնդերի ավելի արագ աճն այդ ճյուղի համախառն արտադրանքի աճի նկատմամբ բնորոշ երևույթ է ընդհանրապես երկրի գյուղատնտեսության զարգացման արդի փուլի համար։ Համեմատության նպատակով նշենք, որ 1965—1975 թթ. ընթացքում երկրի գյուղատնտեսության հիմնական արտադրական ֆոնդերն ավելացել են 118,2 տոկոսով, մինչդեռ համա-



խառն արտադրանքի արժեքը, համադրելի գներով, նույն ժամանակաշրջանում աճել է 25,8 տոկոսով։ Հետևապես, համախառն արտադրանքի աճի համեմատ, ֆոնդերը մեծացել են 4,5 անգամ ավելի բարձր տեմպերով, իսկ ֆոնդահատույցը համապատասխանորեն նվազել է։

Այսպես թե այնպես, ֆոնդահատույցի նվազումը, ինչ խոսք, անցանկալի երևույթ է և վկայում է այն մասին, որ գյուղատնտեսության ինտենսիվացումն արդի փուլում ընթանում է գրեթե բացառապես հիմնական ֆոնդերի, զանազան գյուղատնտեսական տեխնիկայի, այսինքն հիմնականում նյութական գործոնների ավելացման հաշվին։ Մինչդեռ որքան էլ այդ գործոնները կարևոր են, նրանք կարող են ցանկալի արդյունք տալ միայն այն դեպքում, երբ դրանք կզուգակցվեն կենդանի աշխատանքի նյութական խթանման և ինտենսիվության բարձրացման հետ։ Միայն այս անհրաժեշտ աշխատանքային գործոնի արդյունավետ օգտագործումը կարող է տալ հանրային արտադրության զգալի հավելաճ, հետևապես և կարող է բարձրացնել գյուղատնտեսության հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը։

Հանրային գյուղատնտեսության զարգացման տենդենցները բացահայտելու համար անհրաժեշտ է վերլուծել մեզ հետաքրքրող ցուցանիշները ո՛չ միայն ընդհանրապես հանրապետության առումով, այլև անպայման ըստ առանձին գյուղատնտեսական գոտիների, ինչպես նաև՝ ըստ կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների, որքանով որ, զարգացման ընդհանուր գծերից և օրինաչափություններից բացի, հանրային արտադրության այդ երկու սեկտորներից յուրաքանչյուրն ունի զարգացման իր առանձնահատկությունները։

Աղյուսակ № 2

ՀՍՍՀ կոլտնտեսությունների և սովխոզների հիմնական ֆոնդերի և համախառն արդյունքի (1965 թ. համադրելի գներով) շարժը 1965—1975 թթ. (100 հեկտար գյուղատնտեսական հողերի հաշվով, հազար ռուբլի)

| Գոտիներ | Կոլտնտեսություններ | | Սովխոզներ | |
|---|---|---|---|---|
| | Հիմնական ֆոնդեր | Համախառն արտադրանք | Հիմնական ֆոնդեր | Համախառն արտադրանք |
| Արարատյան— 1965 թ. | 70,0 | 69,7 | 196,5 | 45,7 |
| 1971—1975 թթ. միջինը | 126,5 | 87,9 | 264,2 | 58,9 |
| շարժը տոկոսներով | 181 | 140 | 135 | 129 |
| Հյուսիս-արևելյան— 1965 թ. | 32,4 | 34,7 | 42,5 | 21,6 |
| 1971—1975 թթ. միջինը | 63,5 | 45,7 | 89,4 | 28,5 |
| շարժը տոկոսներով | 196 | 132 | 210 | 132 |
| Լեռնային (7 գոտիների միջինը)— 1965 թ. | 19,5 | 14,9 | 31,3 | 11,1 |
| 1971—1975 թթ. միջինը | 33,0 | 16,5 | 55,1 | 15,4 |
| շարժը տոկոսներով | 169 | 111 | 176 | 139 |
| Ընդամենը՝ ՀՍՍՀ-ում— 1965 թ. | 26,6 | 22,1 | 43,5 | 14,8 |
| 1971—1975 թթ. միջինը | 51,6 | 31,1 | 70,8 | 19,5 |
| շարժը տոկոսներով | 194 | 141 | 163 | 132 |
| Նվազագույնի և առավելագույնի հարաբերությունը— 1965 թ. | 1:3,6 | 1:4,2 | 1:6,3 | 1:4,1 |
| 1971—1975 թթ. միջինը | 1:3,8 | 1:5,3 | 1:4,8 | 1:3,8 |

Տասը տարում (1965—1975 թթ.) կոլտնտեսային և սովխոզային արտադրության ֆոնդերի և համախառն արտադրանքի ցուցանիշները համադրելի դարձնելու համար № 2 աղյուսակում դրանք տրված են ո՛չ թե բացարձակ գումարով, այլ օգտագործելի հողատարածության 100 հեկտարի հաշվով։

Միավոր հողատարածությանն ընկնող ֆոնդերը և համախառն արտադրանքը, ըստ էության, բնութագրում են արտադրության ինտենսիվության մակարդակը։ Այդ ցուցանիշների ուսումնասիրությունն ըստ գյուղատնտեսական առանձին գոտիների վկայում է, որ հանրային տնտեսության ինտենսիվացման առավել բարձր տեմպեր նկատվում են Արարատյան դաշտի և Հյուսիս-արևելյան գոտու տնտեսություններում։ Արարատյան դաշտում հիմնական ֆոնդերը, հողատարածությունների 100 հեկտարի հաշվով, ավելացել են 81, իսկ համախառն արտադրանքը՝ 40 տոկոսով, այսինքն՝ կրկնակի ցածր տեմպերով։ Հյուսիս-արևելյան գոտում հիմնական ֆոնդերն ավելացել են 3 անգամ ավելի բարձր տեմպերով, քան համախառն արտադրանքը։

Տնտեսության ինտենսիվացման բացարձակ մակարդակի, այն է՝ միավոր հողատարածությանն ընկնող հիմնական ֆոնդերի և համախառն արտադրանքի չափով Արարատյան դաշտը գերազանցում է մյուս բոլոր գյուղատնտեսական գոտիներին։ Այս գոտում հողատարածության մեկ հեկտարին, միջին հաշվով, ընկնում է 1.265 ռուբլի հիմնական ֆոնդեր և 879 ռուբլի համախառն արտադրանք, որը գերազանցում է միջին հանրապետական ցուցանիշներին համապատասխանաբար՝ 2,5 և 2,8 անգամ։ Ինտենսիվացման բացարձակ մակարդակի առումով երկրորդ տեղը պատկանում է Հյուսիս-արևելյան գոտու տնտեսություններին, որոնք շուրջ երկու անգամ զիջում են Արարատյան դաշտի տնտեսությունների մակարդակին, բայց միևնույն ժամանակ 25—50 տոկոսով գերազանցում են միջին հանրապետական ցուցանիշները։ Այս երկու գոտիների տնտեսությունների ինտենսիվության համեմատաբար բարձր մակարդակը պայմանավորված է բնական բարենպաստ գործոնների առկայությամբ, որը հնարավորություն է ընձեռում այնպիսի եկամտաբեր ճյուղերի զարգացման համար, ինչպիսիք են խաղողագործությունը, պտղաբուծությունը, բանջարաբուծությունը, տեխնիկական կուլտուրաները։

Այսպիսով, կոլտնտեսությունների ցուցանիշների վերլուծությունը վկայում է, որ հանրապետության բոլոր գյուղատնտեսական գոտիներից միայն երկուսի՝ Արարատյան դաշտի և Հյուսիս-արևելյան գոտու, կոլտնտեսություններում ապահովվել է համախառն արդյունքի ընդլայնված վերարտադրություն՝ շատ թե քիչ նորմալ տեմպերով (տասը տարվա միջին աճը կազմել է 32—40 տոկոս)։ Միևնույն ժամանակ, հանրապետության լեռնային գոտիներում համախառն արտադրանքի ծավալն ավելացել է այնպիսի նվազագույն տեմպերով (ընդամենը 11 տոկոս), որի պայմաններում ընդհանրապես դժվար է խոսել ընդլայնված վերարտադրության իրականացման մասին։ Դա կարելի է բացատրել երկու հիմնական պատճառով՝ լեռնային շրջանների անբարենպաստ բնական պայմանների և գյուղատնտեսության տնտեսական խթանման լծակների անկատարելության։ Լեռնային գոտիների տնտեսությունների ստացած եկամուտները չեն բավարարում նրանց կուտակման և սպառման անհրաժեշտ մակարդակ ապահովելու համար։

Աղյուսակի վերջին տողի տվյալները ցույց են տալիս հանրապետության տնտեսությունների միջին գոտիական ցուցանիշների տատանումները կամ շեղումները՝ տնտեսության ֆոնդազինվածության և միավոր հողատարածության պտղաբերության ցուցանիշների առումով։ Ինչպես երևում է աղյուսակից, տնտեսության ֆոնդազինվածության տատանումներն Արարատյան դաշտի և լեռնային գոտիների միջև ավելի են ուժեղացել։ Այսօր Արարատյան դաշտի կոլտնտեսություններում ֆոնդերի ծավալը 3,8 անգամ ավելի է, քան լեռնային շրջաններում։ Միավոր հողատարածությունից ստացվող համախառն արդյունքի տեսակետից ևս այդ շեղումները նկատելիորեն ուժեղացել են։

Համեմատելով կոլտնտեսությունների և սովխոզների համապատասխան տվյալները հանրապետության առումով, տեսնում ենք, որ միավոր հողատարածության ֆոնդազինվածության մակարդակը սովխոզներում զգալիորեն ավելի բարձր է, քան կոլտնտեսություններում։ Անցած հնգամյակի ընթացքում, 100 հեկտար հողատարածության հաշվով, հանրապետության կոլտնտեսություններն ունեին 51,6 հազար ռուբլի հիմնական ֆոնդեր, իսկ սովխոզները՝ 70,8 հազար, կամ 37 տոկոսով ավելի։ Դա ամենից առաջ բացատրվում է նրա-



նով, որ սովխոզներում իրագործվում են ավելի շատ կուտակումներ, ավելի մեծ ծավալով կապիտալ ներդրումներ, այստեղ գոյություն ունեն գյուղատնտեսական տեխնիկայի, շինանյութի և նյութատեխնիկական այլ մատակարարումների ավելի բարենպաստ պայմաններ, քան կոլտնտեսություններում։ Ընդ որում, ինչպես հայտնի է, սովխոզների կուտակումների մի զգալի մասը կատարվում է պետական բյուջեի հաշվին, այսպես կոչված, կենտրոնացված կապիտալ ներդրումների կարգով։

Պետական տնտեսությունների ֆոնդազինվածության ավելի բարձր մակարդակը բնորոշ է գյուղատնտեսական բոլոր գոտիների համար, բայց առանձնապես աչքի է ընկնում Արարատյան դաշտավայրում, Նախալեռնային և Հյուսիս-արևելյան գոտիներում։ Արարատյան դաշտավայրի պետական տնտեսություններին, 100 հեկտարի հաշվով, երկու անգամ ավելի շատ ֆոնդեր են ընկնում, քան նույն գոտու կոլտնտեսություններին։ Միավոր հողատարածությանն ընկնող հիմնական ֆոնդերի տեսակետից պետական տնտեսություններն այսօր զգալի չափով գերազանցում են կոլտնտեսությունների մակարդակը։

Ինչպես երևում է № 2 աղյուսակի տվյալներից, ընդհանուր առմամբ հանրապետության կոլտնտեսային արտադրության ֆոնդազինվածության աճի տեմպերն ավելի բարձր են եղել, քան սովխոզներում։ Նույն տենդենցն ավելի բնորոշ է Արարատյան դաշտավայրի համար, որտեղ կոլտնտեսությունների ֆոնդազինվածության տեմպերն ավելի քան երկու անգամ գերազանցել են սովխոզների տեմպերին և այն աստիճանաբար մոտենում է սովխոզային մակարդակին։ Իսկ եթե նկատի առնենք և այն հանգամանքը, որ կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերի որոշ մասը ժամանակին ավելի ցածր է գնահատվել, ապա ֆոնդազինվածության ցուցանիշի խզումը կոլտնտեսությունների ու սովխոզների միջև ավելի փոքր կլինի։

Միևնույն ժամանակ լեռնային գոտիներում ֆոնդազինվածության տեմպերի առավելությունը պատկանում է ոչ թե կոլտնտեսություններին, այլ սովխոզներին (աճը կազմել է համապատասխանաբար 69 և 76 տոկոս)։ Իսկ սա նշանակում է, որ կոլտնտեսությունների ու սովխոզների ֆոնդազինվածության տարբերությունն այստեղ, լեռնային գոտիներում ո՛չ թե մերձենալու, այլ ընդհակառակը, խորանալու տենդենց ունի, որը, ինչ խոսք, անցանկալի է։

Ինչպիսի՞ն է վիճակը տնտեսության ինտենսիվացման վերջնական արդյունքի, այսինքն՝ համախառն արտադրանքի արտադրության մակարդակի տեսակետից։ Ինչպես ցույց են տալիս № 2 աղյուսակի տվյալները, այս կարևորագույն ցուցանիշի առումով, հանրապետության կոլտնտեսային սեկտորը, ամբողջությամբ վերցրած, ակնհայտ առավելություն ունի պետական (սովխոզային) սեկտորի նկատմամբ։ Եվ, իսկապես, կոլտնտեսությունների գյուղատնտեսական օգտակար հողատարածության յուրաքանչյուր հեկտարից 1965 թվականին ստացվել է, միջին հաշվով, 2.210 ռուբլու արտադրանք, իսկ 1971—75 թթ. միջին տարեկանը կազմել է 3.110 ռուբլու համախառն արտադրանք, մինչդեռ սովխոզային սեկտորում այդ ցուցանիշները նշված տարիներին համապատասխանաբար եղել են՝ 1.480 և 1.950։ Այստեղից հետևում է, որ, ինչպես 10 տարի առաջ, այնպես էլ այժմ հանրային տնտեսության ինտենսիվության բացարձակ մակարդակը կոլտնտեսային սեկտորում շուրջ 1,5 անգամ գերազանցում է սովխոզային մակարդակը։

Դրա հետ մեկտեղ, կոլտնտեսություններում ավելի բարձր են նաև միավոր հողատարածության արդյունավետության բարձրացման տեմպերը. նշված տասնամյակի ընթացքում այդ ցուցանիշը, ինչպես երևում է վերը բերված թվերից, աճել է՝ կոլտնտեսություններում 41 տոկոսով, իսկ պետական տնտեսություններում՝ 32 տոկոսով։ Մեկ հեկտարի հաշվով արտադրանքի հավելաճը կազմել է, համապատասխանաբար՝ 9 հազար և 5 հազար ռուբլի։

Այսպիսով, կոլտնտեսային սեկտորը, ընդհանուր առմամբ, սովխոզային սեկտորի համեմատ, աչքի է ընկնում հանրային արտադրության ինտենսիվացման և հողօգտագործման արդյունավետության ավելի բարձր մակարդակով և տեմպերով։ Դա պետք է բացատրել նրանով, որ հանրապետության կոլտնտեսությունների հիմնական զանգվածը տեղադրված է ինտենսիվ երկրագործու-

թյան գոտում՝ Արարատյան դաշտում, մինչդեռ սովխոզները գլխավորապես տեղաբաշխված են հանրապետության լեռնային շրջաններում, ուր բնատնտեսական պայմանները զգալիորեն ավելի անբարենպաստ են գյուղատնտեսության համար։ Իհարկե, կան նաև այլ բնույթի պատճառներ։

Տնտեսական ցուցանիշների ուսումնասիրությունը ըստ գյուղատնտեսական գոտիների ի հայտ է բերում այն հետաքրքրական առանձնահատկությունը, որ եթե Արարատյան դաշտի կոլտնտեսությունները, իրոք, զգալի առավելություններ ունեն մեկ հեկտար հողի ինտենսիվության բացարձակ մակարդակի, ինչպես նաև այդ ցուցանիշի աճի տեմպերի տեսակետից, ապա այլ է պատկերը լեռնային շրջաններում։ Այստեղ հողօգտագործման ինտենսիվության աստիճանը, որպես կանոն, դարձյալ ավելի բարձր է կոլտնտեսություններում, սակայն այդ ցուցանիշի աճի տեմպերը պետական տնտեսություններում զգալիորեն գերազանցում են կոլտնտեսությունների տեմպերին, ընդ որում՝ դա հաստատվում է գրեթե բոլոր լեռնային գոտիների օրինակով։ Բացառություն է թերևս Հյուսիս-արևելյան գոտին, որտեղ արտադրության ավելացման տեմպերը կոլտնտեսություններում և սովխոզներում գրեթե համընկնում են (տես աղյուսակ № 2)։

Եթե դիտենք հանրապետության լեռնային գոտիները ոչ թե առանձին-առանձին, այլ միասին, մեկ տողով (ինչպես ցույց է տրված աղյուսակում), ապա պարզվում է, որ նշված ժամանակաշրջանում այդ գոտիների կոլտնտեսությունների համախառն արտադրանքի ֆիզիկական ծավալը, գյուղատնտեսական հանդակների 100 հեկտարի հաշվով, ավելացել է 11, իսկ սովխոզներում՝ 39 տոկոսով։

Ինչպես տեսնում ենք այս թվերից, լեռնային շրջաններում կոլտնտեսային արտադրության մակարդակը նշված տասնամյակի ընթացքում ավելացել է նվազագույն տեմպերով, որն ըստ էության չի բավարարում ընդլայնված վերարտադրության պահանջները։

Համեմատելով հանրային գյուղատնտեսության սեկտորների զարգացման ցուցանիշների շարժը, գալիս ենք հետևյալ եզրակացության։ Կոլտնտեսային արտադրության ինտենսիվացման բարձր տեմպերն առավելապես բնորոշ են Արարատյան դաշտի և ավելի քիչ՝ լեռնային շրջանների համար։ Դրա հետևանքով էլ գյուղատնտեսության ինտենսիվացման մակարդակների զոնալ շերտավորումը (տարբերությունները) առանձին գյուղատնտեսական գոտիների կոլտնտեսությունների միջև անցած տասնամյակում ակնհայտ կերպով ուժեղացել է։

Ինչ վերաբերում է սովխոզային սեկտորին, այստեղ արտադրության ինտենսիվացման մակարդակը և տեմպերն ընդհանուր առմամբ ավելի ցածր են կոլտնտեսային սեկտորի համեմատությամբ, սակայն գոտիական (զոնալ) առումով հանդիպում ենք զարգացման միանգամայն այլ տենդենցի։ Վերլուծությունից պարզվում է, որ լեռնային շրջաններում սովխոզային արտադրության ինտենսիվացման տեմպերն ավելի բարձր են, քան Արարատյան դաշտում, որի հետևանքով էլ տնտեսական ցուցանիշների առումով զոնալ շերտավորումն այստեղ մեղմանալու, նվազելու տենդենց ունի։

Ինչով բացատրել այն, որ լեռնային շրջանների սովխոզները, ունենալով կոլտնտեսությունների համեմատ արտադրության ինտենսիվության ավելի ցածր մակարդակ, միևնույն ժամանակ արտադրության զարգացման տեմպերով զգալի չափով (վերջին հնգամյակում շուրջ 3,5 անգամ) գերազանցում են նույն շրջանների կոլտնտեսություններին։ Մեր կարծիքով, այստեղ վճռական դեր է խաղում պետության ակտիվ «միջամտությունը», որը դրսևորվում է, ամենից առաջ, սովխոզային արտադրության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, աշխատատար պրոցեսների մեքենայացման գործում։ Մյուս կողմից, հանրահայտ է, որ պետությունն ապահովում է սովխոզների աշխատողների վարձատրության որոշակի երաշխավորված չափեր, ըստ որում, լեռնային շրջաններում այդ չափերը, որպես կանոն, ավելի բարձր են, քան կոլտնտեսություններում։ Այս հանգամանքը, անտարակույս, մեծ նշանակություն ունի հիշյալ շրջաններում սովխոզային արտադրության խթանման գործում.



լեռնային շրջաններում սովխոզային արտադրության զարգացման համեմատաբար բարձր տեմպերը՝ հանրապետության մյուս գոտիների տնտեսությունների համեմատ, վերջին հաշվով, հանգեցնում են գոտիական առումով գյուղատնտեսական ձեռնարկությունների տնտեսական զարգացման մակարդակների աստիճանական մերձեցման, համենայն դեպս, այստեղից սկիզբ է առնում համահարթեցման տենդենցը։

Այս եզրակացությունն անշուշտ որոշակի կերպով վկայում է սովխոզային սիստեմի առավելության մասին, ավելի ճիշտ այն մասին, որ սովխոզներն ավելի լավ են լուծում վերարտադրության տնտեսական պայմանների համահարթման հարցը, քան կոլտնտեսությունները, ստեղծելով գյուղատնտեսության աշխատողների վարձատրության և հանրային արտադրության զարգացման ավելի լավ հնարավորություններ։ Դրանով էլ օբյեկտիվորեն պետք է բացատրել այն հանրահայտ երևույթը, որ մեր հանրապետության լեռնային գոտիներում շատ կոլտնտեսություններ վերածվել և վերածվում են սովխոզների։

Սակայն այս եզրակացությանը չի կարելի բացարձակ նշանակություն տալ։ Նշենք երեք կարևոր հանգամանք. առաջինը, որ վերը կատարած եզրակացությունը սովխոզային արտադրության ավելի արագ զարգացման և կոլտնտեսությունների սովխոզացման միջոցով համահարթման պրոբլեմի ավելի հաջող լուծման մասին վերաբերում է միայն լեռնային շրջաններին և ոչ թե ամբողջ հանրապետությանը։ Երկրորդ, ինչ վերաբերում է լեռնային և հարթավայրային գոտիների տնտեսական զարգացման տենդենցներին, մեր կողմից ուսումնասիրված վիճակագրական նյութերն առայժմ հիմք չեն տալիս եզրակացություն անելու այդ գոտիների տնտեսական զարգացման պայմանների շատ թե քիչ լուրջ, նկատելի մերձեցման մասին։

Եվ, իրոք, այժմ Արարատյան դաշտի կոլեկտիվ և պետական տնտեսությունները 3—5 անգամ ավելի բարձր են զինված հիմնական արտադրական ֆոնդերով (միավոր հողատարածության հաշվով), քան լեռնային շրջանների տնտեսությունները։ Իսկ հողօգտագործման արդյունավետության ցուցանիշի առումով, այսօր հանրապետության Արարատյան դաշտի կոլտնտեսությունները և պետական տնտեսությունները 3—4 անգամ ավելի բարձր մակարդակ ունեն, քան լեռնային գոտիների տնտեսությունները։

Վերջապես, երրորդ, ամենակարևոր հանգամանքն այն է, որ նույնիսկ մեր լեռնային շրջաններում էլ կոլտնտեսությունների սովխոզացումը հակասական երևույթ է իր սոցիալ-տնտեսական հետևանքներով, և չի կարող դիտվել միայն դրական իմաստով։

Նկատենք թեկուզև այն փաստը, որ սովխոզները լինելով ավելի մասնագիտացված և մեքենայացված տնտեսություններ՝ հավասարամեծ հողատարածության մշակման համար համեմատաբար ավելի քիչ աշխատող ձեռք են պահանջում, քան կոլտնտեսությունները։

Ուստի և, կոլտնտեսությունների հաշվին սովխոզների թվի ավելացումը, անկախ նրանից, թե որքանով է այն հիմնավոր զուտ տնտեսական առումով, ավելի է սրում մեր հանրապետության բնակչության, այդ թվում հատկապես լեռնային շրջանների բնակչության զբաղվածության ապահովման առանց այն էլ բարդ խնդիրը։

Այստեղից կարելի է եզրակացնել, որ լեռնային շրջաններում այս կամ այն կոլտնտեսությունը սովխոզ դարձնելու (եթե այդ միջոցառումն իրոք համակողմանի հիմնավորվել է) անհրաժեշտ և պարտադիր պայմաններից է՝ գյուղատնտեսությունից ազատվող բնակչության զբաղվածության ապահովումը։ Հասկանալի է, որ լեռնային շրջանների բնակչության և աշխատանքային ռեսուրսների զբաղվածության ապահովման այս խնդիրը վերաբերում է ո՛չ միայն սովխոզներին, այլև ընդհանուր ժողովրդատնտեսական նշանակություն ունի մեր հանրապետության համար։

# ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԻՆՏԵԳՐԱՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. Կ. ԱՅՐՈՒՄՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՓՈՒԼՈՒՄ, երկրի տնտեսական պոտենցիալի աճի, գյուղատնտեսության և արդյունաբերության նյութատեխնիկական բազայի առավել ամրապնդման պայմաններում, օբյեկտիվ հնարավորություններ են ստեղծվել արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը խորացնելու, միջտնտեսային կոոպերացումը և ագրոարդյունաբերական ինտեգրացիան լայնորեն զարգացնելու համար:*

*Միջտնտեսային կոոպերացումը և ագրոարդյունաբերական ինտեգրացումն արտադրության կազմակերպումն ու կառավարումը կատարելագործելու որակապես նոր ձևեր են: Այդպիսի կոոպերացումը սոցիալիստական արտադրության զարգացման ավելի բարձր աստիճան է, որն ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ վերամշակող արդյունաբերության մեջ ապահովում է արտադրության զարգացման տեմպերի արագացումը, դրա արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացումը: Սերտ կոոպերացիայի զարգացման նշանակությունը բավական մեծ է նաև հասարակական հարաբերությունների և արտադրության կառավարման կազմակերպական ձևերի կատարելագործման, սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման ասպարեզում: Կոոպերացիայի այդպիսի ձևերի զարգացմամբ մեծապես պայմանավորված է գյուղատնտեսության ապագան:*

*Գյուղատնտեսության և արդյունաբերության միջև փոխադարձ կապերի անշեղ զարգացման ու կատարելագործման օբյեկտիվ օրինաչափությունը, ընդհուպ մինչև նրանց օրգանական միաձուլումը, խորապես բացահայտված է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններում, ՍՄԿԿ համագումարների, Կենտկոմի պլենումների և սովետական կառավարության որոշումներում:*

*Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը դեռևս* Կոմունիստական կուսակցության մանիֆեստում *արդյունաբերության հետ երկրագործության միավորումը, քաղաքի և գյուղի հակադրության աստիճանական վերացմանն աջակցելը դիտում էին որպես պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրներից մեկը:*

*Վ. Ի. Լենինը մատնանշում է, որ «...սոցիալիզմի խնդիրն է՝ մերձեցնել և միավորել արդյունաբերությունը և հողագործությունը»* (Երկեր, *հ. 31, էջ 506): Նյութական արտադրության երկու կարևոր ճյուղերի միավորումը, Մարքսի արտահայտությամբ՝ հողագործության և արդյունաբերության այդ բարձրագույն սինթեզը Վ. Ի. Լենինը համարում էր գյուղի զարգացման ուղին՝ ինչպես սոցիալ-տնտեսական, այնպես էլ կուլտուրական տեսակետից:*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրում կա ուղղակի ցուցում. «Կոլտնտեսությունների և սովխոզների հետագա զարգացման պրոցեսում կուժեղանան նրանց արտադրական կապերը միմյանց միջև և տեղական արդյունաբերական ձեռնարկությունների հետ, կընդլայնվի տարբեր արտադրությունների համատեղ կազմակերպման պրակտիկան... Տնտեսական նպատակահարմարության համեմատ, աստիճանաբար կստեղծվեն ագրարաարդյունաբերական միավորումներ, որոնցում գյուղատնտեսությունն օրգանապես զուգորդվում է իր արտադրանքի արդյունաբերական վերամշակման հետ՝ գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկությունների ռացիոնալ մասնագիտացմամբ և կոոպերացմամբ հանդերձ»* (ՍՄԿԿ ծրագիր, *«Հայաստան» հրատ., 1974, էջ 132):*

*ՍՄԿԿ XXV համագումարը նշեց արդյունաբերության հետ գյուղատնտեսության արտադրական, տնտեսական կապերի հետագա ամրապնդման ու զարգացման, այն գյուղատնտեսական արտադրությունն սպասարկող մյուս ճյուղերի և նրա արտադրանքը վերամշակող ձեռնարկությունների հետ օրգանական միացման անհրաժեշտությունը:*

*Կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը, նշելով մի շարք հանրապետությունների դրական փորձը, ասում է. «...արտադրության ծավալների արագ աճի, աշխատանքի արտադրողականության էական բարձրացման և ինքնարժեքի իջեցման մեծ հնարավորություններ են ընձեռում արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա: Նշանակում է, պետք է ավելի ակտիվորեն վարել այդ կուրսը: Մեր կազմակերպչական աշխատանքը, պլանավորումը, տնտեսական լծակների օգտագործումը պետք է ըստ ամենայնի նպաստեն այդ առաջադիմական պրոցեսին»* (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, *էջ 77):*

*Արտադրության կազմակերպման և կառավարման ձևերի կատարելագործման կոմպլեքսային ծրագրի իրականացման, գյուղի սոցիալ-տնտեսական զարգացման այդպիսի ուղղությունը կոնկրետ մարմնավորում ստացավ «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ: Առաջադրված խնդիրների իրականացումը, ինչպես նշված է որոշման մեջ, կարճատև միջոցառում չէ, այլ օրինաչափ պրոցես, որը նախատեսված է տևական ժամանակաշրջանի համար և պայմանավորված է զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի օբյեկտիվ պահանջներով:*

*Երկրի ագրարային-արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների գործունեությունը վկայում է, որ գյուղատնտեսական արտադրության և համապատասխան վերամշակող արդյունաբերության միաձուլումը տնտեսական ավելի բարձր արդյունք է տալիս, քան առանձին-առանձին գործող ձեռնարկությունները: Ագրարային-արդյունաբերական ձեռնարկությունների և միավորումների պայմաններում ավելի հեշտ են հաղթահարվում միջգերատեսչական անջատվածության թերությունները, ապահովվում է նյութական արտադրության երկու ոլորտների ներդաշնակ զարգացումը:*

*Ագրոարդյունաբերական ինտեգրացման զարգացման համար առանձնապես մեծ աշխատանք է կատարվել Մոլդավիայում, Ռուսաստանյան Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Բելոռուսիայի մի շարք մարզերում, Ադրբեջանում և մի շարք այլ հանրապետություններում: Երկրում ստեղծված սովխոզ-գործարանների և ագրարային-արդյունաբերական միավորումների պրակտիկ գործունեությունը հիմք է տալիս նշելու ինտեգրացման հիմնական տնտեսական հետևյալ առավելությունները. արդյունաբերական վերամշակման համար առաքվող հումքի որակական ցուցանիշների բարելավում, աշխատանքի ավելի բարձր ֆոնդազինվածություն ու էներգազինվածություն, աշխատանքային և նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործում, կապիտալ ներդրումների ավելի արդյունավետ օգտագործում, արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը խորացնելու համար բարենպաստ պայմանների ստեղծում, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության և վերամշակման տեխնոլոգիական պրոցեսի անընդմեջության ապահովում, ոչ ստանդարտ հումքի և հիմնական արտադրության թափոնների օգտագործման հնարավորության բա-*

տեղծում, հումքն արտադրող, այն վերամշակող և վերջնական արտադրանքն իրացնող աշխատողների նյութական շահերի ճիշտ զուգակցում, տարածության մեկ միավորի և տարեկան մեկ միջին աշխատողի հաշվով շահույթի ընդհանուր գումարի մեծացում։

Ագրոարդյունաբերական ինտեգրացման զարգացումը չի սահմանափակվում տնտեսական արդյունավետությամբ։ ՍՄԿԿ համագումարների և կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումներում բազմիցս նշվել է նաև գյուղատնտեսության և գյուղատնտեսական հումքը վերամշակող արդյունաբերության արտադրական միավորման սոցիալական մեծ նշանակությունը։ Այդպիսի զարգացումը նպաստում է քաղաքի և գյուղի, ինդուստրիալ և գյուղատնտեսական աշխատանքի միջև գոյություն ունեցող կուլտուր-կենցաղային տարբերությունների հաղթահարման պրոցեսի արագացմանը։ Ագրարային-արդյունաբերական ձեռնարկությունների սոցիալական առավելությունն է նաև այնպիսի պայմանների ստեղծումը, որոնք տարվա ընթացքում ապահովում են աշխատանքային ռեսուրսների զբաղվածության մակարդակի բարձրացումը և աշխատուժի օգտագործման սեզոնայնության մեղմացումը, հետևաբար և՝ սովխոզ-գործարանների աշխատողների եկամուտների ավելացումը։

Բազմամյա փորձը ցույց է տալիս, որ արդյունաբերության հետ միաձուլումն ավելի արագ է տեղի ունենում գյուղատնտեսության այն ճյուղերում, որոնց արտադրանքը թողարկվում է գերազանցապես (կամ նշանակալի չափով) արդյունաբերական վերամշակման համար և, այդպիսով, կազմվում է միասնական տեխնոլոգիական պրոցես։ Ամենից առաջ այդպիսի ճյուղեր են խաղողագործությունն ու գինեգործությունը, պտուղ-բանջարաբուծությունն ու պահածոների արտադրությունը, եթերայուղային և մի քանի այլ արտադրություններ։

Ներկայումս ագրոարդյունաբերական ինտեգրացումը Սովետական Միությունում առանձնապես լայնորեն կիրառվում է խաղողագործության-գինեգործության մեջ։ 1976 թվականի սկզբներին երկրում գործող շուրջ 600 ագրարային-արդյունաբերական ձեռնարկություններից մոտ 500-ը խաղողագործական-գինեգործական սովխոզ-գործարաններ են։

Սովխոզ-գործարանն ագրարային-արդյունաբերական ձեռնարկության հիմնական տիպն է։ Այն կազմավորվում է գյուղատնտեսական և արդյունաբերական արտադրությունը միասնական տնտհաշվարկային ձեռնարկության շրջանակներում միաձուլելու միջոցով։ Դա, ըստ էության, միասնական կառավարում ունեցող ձեռնարկություն է, որտեղ հումքի արտադրությունն ու դրա արդյունաբերական վերամշակումը կատարվում են միասնական տեխնոլոգիական պրոցեսում։

Ագրոարդյունաբերական ինտեգրացմամբ պահանջվում է արտադրության կառավարման որակապես նոր ձևեր՝ հանրապետական, իսկ մի շարք դեպքերում նաև տերիտորիալ ագրոարդյունաբերական միավորումների կազմակերպում՝ գերազանցապես վարչական շրջանի սահմաններում։ Չի բացառվում նաև հարակից շրջանների համապատասխան ձեռնարկությունների ներգրավումը միավորման մեջ։ Հնարավոր է ագրոարդյունաբերական միավորումներ կամ կոմբինատներ կազմակերպել ըստ տեխնոլոգիական հատկանիշի՝ մի շարք շրջաններում գտնվող համապատասխան սովխոզ-գործարանները, մասնագիտացված սովխոզներն արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների, օրինակ՝ եթերայուղի, շամպայն-գինիների գործարանների և այլ ձեռնարկությունների հետ միավորելու միջոցով։

Այս ասպարեզում Հայաստանում դեռևս առաջին քայլերն են արվել։ Սննդարդյունաբերության մինիստրության սիստեմում կազմակերպվել են սովխոզ-գործարաններ՝ չորս խաղողագործական-գինեգործական, մեկական եթերայուղային և պտուղ-բանջարեղենի պահածոների։ Բացի դրանից, կան երկու սովխոզներ (խաղողագործական և քիչ տարածված բանջարեղենի տեսակներ արտադրող), որոնք սերտ կոոպերացման մեջ են վերամշակող համապատասխան ձեռնարկությունների հետ։

Այժմ հանրապետությունում, մեծ քանակությամբ մասնագիտացված սով-



խոզների և կոլտնտեսությունների ու վերամշակող արդյունաբերական ձեռնարկությունների լայն ցանցի առկայության պայմաններում ռեալ նախադրյալներ են ստեղծվել ագրոարդյունաբերական ինտեգրացման զարգացման համար։

Հանրապետությունում կան 10 խաղողագործական, 20 պտղախաղողագործական, 11 պտղաբուծական, 30 բանջարաբուծական սովխոզներ։ Ստեղծվել է գինու-կոնյակի և պահածոների արդյունաբերական ձեռնարկությունների լայն ցանց։ Գործում են գինու 24, կոնյակի՝ 3, պահածոների՝ 9, կաթի՝ 10 գործարաններ։

Ձեռնարկությունների այս ցանցը, որը կարող է որպես բազա ծառայել ագրոարդյունաբերական ինտեգրացման զարգացման համար, հեռանկարում է՛լ ավելի կընդլայնվի ոռոգելի նոր հողերի վրա մասնագիտացված սովխոզների կազմակերպման, պետական գյուղատնտեսական համալիրների և գյուղատնտեսության արտադրանքը վերամշակող արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության կապակցությամբ։ Բայց նույնիսկ, արդեն առկա բազան, մեր կարծիքով, կարող է հիմք ծառայել հանրապետությունում ստեղծելու հետևյալ ագրոարդյունաբերական միավորումները. խաղողագործական-գինեգործական, պտուղ-բանջարեղենի պահածոների, ագրարային-առևտրական-արդյունաբերական։ Պայմաններ կան քաղաքամերձ շրջաններում կաթ և թարմ կաթնամթերքներ արտադրող ագրոարդյունաբերական նաև այլ տիպի միավորումներ կազմակերպելու համար։

Հասկանալի է, որ ագրոարդյունաբերական ինտեգրացման, ինչպես նաև միջտնտեսային կոոպերացման զարգացման ընթացիկ ու հեռանկարային պլաններ մշակելիս չի կարելի հապճեպություն թույլ տալ։ Արտադրական ինտեգրացումը զարգացնելու համար անհրաժեշտ են համապատասխան տնտեսական պայմաններ ու հնարավորություններ։ Միաժամանակ, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, հարկավոր է նաև վճռականորեն խափանել այդ պրոցեսի կասեցման, տեղում դոփելու, գործի նկատմամբ գերատեսչական և տեղայնական մոտեցման ամեն տեսակ փորձեր։

Հաշվի առնելով Հայկական ՍՍՀ-ում ագրոարդյունաբերական սերտ կոոպերացումը զարգացնելու համար եղած օբյեկտիվ նախադրյալները, մեզ թվում է, որ այդ պրոցեսը պետք է իրականացնել փուլերով։ Գյուղատնտեսական արտադրության և վերամշակող արդյունաբերության սերտ կոոպերացման կարևորագույն ձևը խաղողագործական-գինեգործական հանրապետական միավորման կազմակերպումն է։

Այդ միավորումը, մեր պատկերացմամբ, բավական խոշոր կլինի։ Նրա տնօրինության տակ կլինեն հանրապետության բոլոր գինեգործական ձեռնարկությունները, 12 խաղողագործական-գինեգործական սովխոզ-գործարանները, 14 մասնագիտացված սովխոզները և համապատասխան ֆիրմային խանութները։ Միավորումը կզբաղվի ինչպես արտադրանքի արտադրությամբ ու մթերմամբ, այնպես էլ արդյունաբերական վերամշակմամբ ու իրացմամբ։

Միութենական այլ հանրապետությունների օրինակով, խաղողագործական-գինեգործական ագրոարդյունաբերական միավորման վարչությունը կներկայացվի Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին կից պետական կոմիտեի ձևով։

Ագրոարդյունաբերական միավորումը հանդես է գալու որպես ղեկավարման մի մարմին, որը կոչված է ապահովելու իր սիստեմում գտնվող բոլոր ձեռնարկությունների կոմպլեքսային զարգացումը, պատասխանատվություն է կրելու դրանց տնտեսական գործունեության համար, լուծելու է հեռանկարային զարգացման հարցերը, աշխատանք է տանելու միավորման ձեռնարկությունների կոլեկտիվների ու նրանց ընտանիքի անդամների բնակարանային-կոմունալ և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման համար։

Կոլտնտեսություններում, ինչպես նաև սովխոզներում, հետզհետե ավելանում է վերամշակում պահանջող գյուղատնտեսական հումքի արտադրությունը։ Հայաստանում հումքի վերամշակման գոյություն ունեցող և կառուցվելիք պետական արդյունաբերական ձեռնարկություններն ի վիճակի են լրիվ լուծելու այդ խնդիրը։

Ագրոարդյունաբերական և վերամշակող ձեռնարկությունների արտադրական կոոպերացումը, դրանց գործունեության գոտում գտնվող կոլտնտեսությունների հետ, իրականացվում է պայմանագրային սիստեմի միջոցով՝ ապրանքադրամային հարաբերությունների հիման վրա։ Պայմանագիրը որոշում է կողմերի փոխադարձ պարտավորությունները և պատասխանատվությունը դրանց կատարման համար։ Սակայն փոխհարաբերությունների այդ ձևն անհրաժեշտ է այսուհետ ևս կատարելագործել, այն դարձնել ավելի բազմակողմանի ու ներգործուն։ Հիմքում ունենալով տնտեսությունը պլանաչափ վարելու պահանջները, պայմանագիրը պետք է նպաստի գյուղատնտեսական հումք արտադրող և վերամշակող ձեռնարկությունների համաձայնեցված աշխատանքին, արտադրողների և մթերողների տնտեսական շահագրգռությանը։

Նշված ձեռնարկությունների ինտեգրացումից բացի, նպատակահարմար կլինի միավորմանը տրամադրել ոռոգելի նոր հողերի մի մասը՝ նոր սովխոզների կազմակերպման համար, որոնք կմասնագիտացվեն խաղողի արժեքավոր տեսակների մշակման մեջ և կապահովեն գինեգործության արտադրանքի տեսականու ընդլայնումն ու որակի բարելավումը։ Միավորման տնօրինության տակ կլինեն նաև մի շարք սպասարկող գերատեսչություններ։

Հայաստանի մի շարք շրջաններ կարող են բազա ծառայել շամպայն գինիների արտադրության հետագա զգալի ավելացման համար։ Դրանք են հյուսիս-արևելյան գոտու (Իջևանի, Շամշադինի) շրջանները և, մասամբ, Աբովյանի, Թալինի ու Եղեգնաձորի շրջանները։ Շամպայն գինիների արտադրության համար խաղող աճեցնող շրջաններն ու միկրոշրջանները տերիտորիալ տեսակետից միմյանցից հեռու են։ Բայց դրանց սովխոզներն ու գինեգործական ձեռնարկություններն անմիջական կապ ունեն Երևանի շամպայն գինիների գործարանի հետ, որի հզորությունը մեկ սեզոնում մոտ 1,3 մլն դեկալիտր գինի է։ Գործարանն այժմ անբավարար է ապահովված տեղական արտադրության գինենյութերով։ Շամպայն գինիների արտադրությունն ավելացնելու և դրանց որակը բարձրացնելու համար նպատակահարմար է այս ձեռնարկության բազայի վրա ստեղծել շամպայն գինիների կոմբինատ՝ ընդգրկելով գործարանին գինենյութ մատակարարող և վերը նշված շրջանների մի քանի խաղողագործական սովխոզները և խաղողի նախնական մշակման գինու գործարանները։

Այդ շրջաններում կարելի է ընդարձակել այգիները և խորացնել մասնագիտացումը խաղողի բարձրորակ շամպայնի տեսակների աճեցման բնագավառում։ Կոմբինատին հետագայում գինենյութ կմատակարարեն նաև նրա հետ չմիավորված մյուս գինու գործարանները։

Այդպիսի ագրոարդյունաբերական ինտեգրացումը, որն ապահովում է արտադրական պրոցեսի անընդմեջությունն ամբողջ տեխնոլոգիական շղթայում, միաժամանակ շարունակելով համապատասխան գինենյութի ներմուծումը երկրի մյուս շրջաններից, կնպաստի հանրապետությունում շամպայն գինիների արտադրության նշանակալի աճին։

Ինչպես արդեն նշվեց, խաղողագործական-գինեգործական ագրոարդյունաբերական ձեռնարկություններից ու միավորումներից բացի հանրապետությունում կան և տարեցտարի ընդլայնվում են գյուղատնտեսական արտադրության ու վերամշակող արդյունաբերության սերտ կոոպերացման այլ ձևեր ևս ստեղծելու հնարավորությունները։ Քննենք, ամենից առաջ, պահածոների արդյունաբերության հետ պտղաբուծության և բանջարաբուծության ինտեգրացիայի զարգացման հարցերը։ Խոսքը պտուղ-բանջարեղենի պահածոների ագրոարդյունաբերական միավորում ստեղծելու մասին է, որը կարող է կազմակերպվել պահածոների արդյունաբերության ձեռնարկությունների և բանջարեղենի ու պտուղների արտադրության մեջ մասնագիտացված մի քանի սովխոզների բազայի վրա։ Մեր կարծիքով, միավորման մեջ կարելի է ընդգրկել 12 մասնագիտացված սովխոզներ, այդ թվում և Գուգարքի շրջանի Շահումյանի անվան սովխոզ-գործարանը։ Միավորմանը պետք է հատկացվեն համապատասխան զանգվածներ ոռոգելի նոր հողերում՝ բանջարեղենի, ինչպես նաև պտուղների մի քանի տեսակների արտադրության մասնագիտացված սովխոզ-



ներ կազմակերպելու համար, նպատակ ունենալով առավել զարգացնել լայն պահանջարկ ունեցող պահածոների արդյունաբերությունը։

Պահածոների արդյունաբերության և պտղաբուծության ու բանջարաբուծության միավորման վարչություն կարելի է ստեղծել երկու տարբերակներով. կամ Մոլդավիայի ու Ադրբեջանի օրինակով՝ հանրապետության Մինիստրների խորհրդին կից ինքնուրույն կազմակերպության ստեղծմամբ, կամ Ուկրաինայի և Ուզբեկստանի օրինակով՝ Մինիստրների խորհրդին կից «Պտուղբանջարգինարդ» միավորված վարչություն ստեղծելու միջոցով։

Ինտեգրացման երկու ուղղությունների միասնական կառավարման երկրորդ ձևը պայմանավորված է այն բանով, որ խաղողագործական սովխոզ-գործարանների և սովխոզների մեծագույն մասում զարգացել է պտղաբուծությունը, իսկ մի քանիսում նաև՝ բանջարաբուծությունը, պտղաբուծական սովխոզներում՝ խաղողագործությունը։

Հարկ է նկատել, որ ՀՍՍՀ-ում պահածոների արդյունաբերության հիմնական հումք մատակարարողները ո՛չ թե նեղ մասնագիտացված պտղաբուծական և բանջարաբուծական սովխոզներն են, այլ Արարատյան հարթավայրի գրեթե բոլոր սովխոզներն ու կոլտնտեսությունները, Նոյեմբերյանի, Աշտարակի և հանրապետության այլ շրջանների մի շարք տնտեսություններ։

Այդ կապակցությամբ ուշադրության արժանի է նաև ինտեգրացման երկրորդ տարբերակը, ըստ որի ստեղծվում է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի միասնական պետական կոմիտե (Հայպտուղբանջարգինարդ), որի կազմում ընդգրկվում են համապատասխան սովխոզ-գործարաններն ու սովխոզները, գինեգործական և պահածոների արդյունաբերության ձեռնարկությունները և օժանդակ ծառայությունները։ Հասկանալի է, որ կազմակերպման ու կառավարման նման տարբերակի դեպքում պետական կոմիտեի կազմում գործելու են խաղողագործական-գինեգործական «Արարատ» (այս լայնորեն հայտնի ֆիրման անհրաժեշտ է պահպանել) և պտուղ-բանջարեղենի պահածոների «Հայպտուղբանջարարդ» ագրոարդյունաբերական միավորումները։

Միջշրջանային երկու միավորումներից բացի (կոնյակի և շամպայն գինիների արտադրություններ) կպահանջվի ստեղծել մի քանի տերիտորիալ (շրջանային) միավորումներ, ամենից առաջ, Հոկտեմբերյանի և Նոյեմբերյանի շրջաններում։

Հանրապետությունում ինտեգրացումը կարող է զարգանալ նաև մեկ այլ ուղղությամբ։ Մեր կարծիքով, ուշադրության արժանի է բանջարեղենի և մրգերի արտադրություն-մթերումներ-պահպանում-առևտուր-ոչ ստանդարտ արտադրանքի վերամշակում միասնական շղթա ստեղծելու միջոցով հանրապետական ագրոառևտրա-արդյունաբերական միավորման կազմակերպման ըսկըզբունքների ուսումնասիրումը։

Այդպիսի միավորման բազան բավական մեծ է։ Այստեղ նկատի է առնվում միավորել մասնագիտացված սովխոզները՝ պտղաբուծության, բանջարաբուծության և խաղողագործության զանազան զուգորդումներով, սովխոզների, պտուղ-բանջարեղենի-կարտոֆիլի պահպանման պահեստները, ինչպես նաև ստանդարտին չհամապատասխանող (չիրացված) մթերքները վերամշակող ոչ մեծ արդյունաբերական ձեռնարկությունները կամ արտադրամասերը, պտուղ-բանջարեղենի ֆիրմային խանութները։ Միասնական տեխնոլոգիական սիստեմով նման սերտ կոոպերացումը հնարավորություն կընձեռի բարելավելու քաղաքների բնակչության ապահովումը թարմ բանջարեղենով ու մրգերով, բարձրացնելու արտադրանքի որակը, առևտրի կուլտուրան և նվազագույնի հասցնելու արտադրանքի կորուստները։

Ի տարբերություն հանրապետական ագրոարդյունաբերական ինտեգրացման առաջին երկու ձևերի, թարմ բանջարեղենի ու մրգերի արտադրման ու վաճառքի համար նպատակահարմար է հանրապետության գյուղատնտեսության մինիստրությանը կից ստեղծել միավորում։ Նման միավորում հաջողությամբ գործում է Վրացական ՍՍՀ-ում։

Մենք չենք առաջարկում այդ միավորումում ընդգրկել ջերմոցային տըն-

տեսությունը: Դա պայմանավորված է ո՛չ միայն դրա արտադրության առանձնահատկությամբ, այլև, ամենից առաջ, ջերմոցային տնտեսության զարգացման մեծ հեռանկարներով: Ջերմոցային բանջարաբուծությունը կդառնա ապրանքային խոշոր արտադրություն, որի արտադրանքի մեծագույն մասը կարտահանվի Մոսկվա և երկրի այլ քաղաքներ: Անհրաժեշտ կլինի այդ արտադրության համար ունենալ ինքնուրույն վարչություն:

Ինտեգրացման մի այլ ձևի մասին ևս. խոսքը Երևանի գոտում, իսկ ապա նաև Լենինականի, Կիրովականի և մի քանի այլ քաղաքների գոտիներում կաթի և թարմ կաթնամթերքների արտադրության քաղաքամերձ տերիտորիալ ագրոարդյունաբերական միավորումներ կազմակերպելու մասին է: Միավորումները նպատակահարմար է ստեղծել քաղաքամերձ կաթնաանասնապահական սովխոզների և ներկայումս կազմակերպվող կաթնամթերքների արտադրության մի շարք պետական համալիրների, ինչպես և ՀՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության կաթնամթերքների արտադրության գործարանների միաձուլմամբ: Կաթի մատակարարումներին, առաջվա նման, կմասնակցեն նաև քաղաքամերձ գոտու կոլտնտեսությունները:

Կաթնատնտեսության և կաթնեղենի արդյունաբերության բնագավառում ագրոարդյունաբերական ինտեգրացումը հնարավորություն կընձեռի ապահովելու այդ ճյուղերի ներդաշնակ զարգացումը, էականորեն բարելավելու կաթի ու թարմ կաթնամթերքի մատակարարումը քաղաքային բնակչությանը, կազմակերպելու կաթի մշակման որոշ օպերացիաներ անմիջականորեն անասնապահական սովխոզներում և պետական կաթնատնտեսային համալիրներում:

Գյուղատնտեսական արտադրության աճի տեմպերի արագացման, հանրային տնտեսության արտադրանքի որակի և արդյունավետության բարձրացման խնդիրները հրամայաբար պահանջում են պլանաչափորեն ու գիտական հիմնավորվածությամբ, կոմպլեքսայնորեն իրականացնել ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականությունը, զարգացնել միջտնտեսային կոոպերացումը և ագրոարդյունաբերական ինտեգրացումը:

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

# Գիրքը՝ մասսաներին

**Գ. Գ. ԱՂԱԽԱՆՅԱՆ**
Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրության գրադարանների բաժնի պետ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ արդի էտապում, գործնական շատ բարդ խնդիրների լուծման գործում, կուսակցությունը մեծ դեր է վերապահում աշխատավորության գաղափարաքաղաքական դաստիարակության հարցերին: Այս առումով անչափ նշանակալի է գրքի, գրադարանի նշանակությունը:

Ինչպես ՍՍՀՄ-ում, մեր հանրապետությունում ևս, վերջին տարիներին որոշակի հաջողություններ են ձեռք բերվել ընթերցող հասարակայնության տարբեր խավերի՝ գրականության նկատմամբ օրեցօր աճող պահանջների առավել բավարարման, բնակչության գրադարանային-մատենագիտական սպասարկման հետագա կատարելագործման ասպարեզում:

Գիրքը և պարբերական մամուլը հաստատուն մուտք են գործել մեր ժողովրդի կենցաղը, դարձել բանվորի, կոլտնտեսականի, մտավորականի հոգևոր զարգացման, քաղաքական ու բարոյական նորմերի ձևավորման կարևոր գործոններից մեկը:

Անցած 60 տարիների ընթացքում երկրի ժողովրդական հոծ մասսաների կուլտուրական մակարդակի և գրահրատարակչական գործի վիթխարի աճը զուգակցվել է գրադարանային ցանցի ընդլայնմամբ:

Գրականության ակտիվ պրոպագանդման, գիտության տարբեր բնագավառներին վերաբերող գրքերի ճիշտ ընտրության, մասսայական բազմապիսի միջոցառումների կազմակերպման միջոցով գրադարաններն օգնում են կոմունիստական հասարակարգ կառուցող սովետական մարդուն՝ հարստացնելու իր գիտելիքները, բարձրացնելու կուլտուր-տեխնիկական մակարդակը: ՍՍՀՄ-ում այժմ գործում են 360 հազար գիտական, տեխնիկական, մասնագիտական և մասսայական գրադարաններ, ուր կենտրոնացված է 4 միլիարդ 100 միլիոն տպագիր միավոր: Այդ գրադարաններից տարեկան օգտվում են մոտ 200 միլիոն մարդ:

Սովետական մարդն այսօր համարվում է ամենաընթերցասերը: Այդ վերաբերում է նաև մեր հանրապետության աշխատավորությանը, որի մոտ 50 տոկոսից ավելին (1,5 միլիոն մարդ) ընդգրկված է սիստեմատիկ ընթերցանության ոլորտը: Հայաստանը, ուր նախքան հեղափոխությունը գործում էր ընդամենը 13 գրադարան, ներկայումս ունի 3.300 գիտական, տեխնիկական, մասնագիտական և մասսայական գրադարաններ՝ 52,5 միլիոն ընդհանուր գրքային ֆոնդով: Այժմ մեզ մոտ բնակչության գրադարանային սպասարկումը կազմակերպված է ըստ աշխատավայրի ու բնակավայրի:

Հանրապետությունում, միայն նախորդ հնգամյակի տարիներին, ընդարձակվեց գիտական, մասնագիտական, տեխնիկական, մասսայական գրադարանների ցանցը, ստեղծվեցին 150 նոր գրադարաններ, որոնցից 100-ը՝ գյուղական բնակավայրերում: Գրքային ֆոնդերը համալրվեցին մոտ 10 միլիոն օրինակ նոր գրականությամբ: Համեմատաբար ամրապնդվեց գրադարանների նյութատեխնիկական բազան, 153 գրադարաններ տեղափոխվեցին նոր շենք, ապահովվեցին տեխնիկական միջոցներով և մասնագիտացված գույքով: Որոշ գրադարաններ համալրվեցին երիտասարդ մասնագետ կադրերով:

ՍՄԿԿ XXV, ՀԿԿ XXVI համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի (1974 թ. մայիս) և ՀԿԿ Կենտկոմի ու ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի (1974 թ. օգոստոս)՝ «Աշխատավորության կոմունիստական դաստիարակության և գիտատեխնիկական առաջընթացի գործում գրադարանների դերի բարձրացման մասին» որոշումներն

զգալիորեն նպաստել են գրքի պրոպագանդման բարելավմանը: Հանրապետության գրադարանային աշխատողներն սկսել են ավելի սերտորեն զուգակցել իրենց գործունեությունը արդյունաբերության, գյուղատնտեսական արտադրության, գիտության ու տեխնիկայի հետագա զարգացման կոնկրետ խնդիրների հետ, լայնորեն արմատավորել գրքի պրոպագանդման առաջավոր ձևերն ու մեթոդները: Ամեն ինչ արվում է գրքային անսպառ հարստություններն ընթերցող հասարակայնությանը՝ բանվորին ու գիտնականին, ինժեներին ու տնային տնտեսուհուն, ուսանողին ու կոլտնտեսականին մատչելի դարձնելու համար:

Գրադարանային հաստատությունները ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներն ու նյութերը ժողովրդական լայն մասսաների սեփականությունը դարձնելու նպատակով ամենուրեք կազմակերպում են հասարակական-քաղաքական գրականության ընթերցումներ, հանդիպումներ համագումարի պատվիրակների հետ, գրքի ցուցահանդեսներ՝ Համագումարի որոշումները մասսաներին, Լենինյան կուրսով, Կուսակցության պլանները— ժողովրդի պլաններն են, Տասներորդ հնգամյակի բնագծերը խորագրերով: Ակտիվ պրոպագանդում են երկրի էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման գործում ՍՄԿԿ ղեկավար դերն արտացոլող գրականությունը: Կազմում են գրականության հանձնարարական-մատենագիտական ցանկեր, քարտարաններ՝ Ինչ կարդալ ՍՄԿԿ XXV համագումարի մասին, Հայկական ՍՍՀ-ն տասներորդ հնգամյակում, Մեր հասարակարգի մեծ ուժը և այլ վերտառություններով:

Համագումարի որոշումների ու փաստաթղթերի պրոպագանդումն առավել լավ է կազմակերպված Կիրովական, Դիլիջան, Լենինական, Երևան քաղաքների, Արտաշատի, Հոկտեմբերյանի, Գորիսի, Արարատի, Ստեփանավանի և այլ շրջանների գրադարաններում: Այդ աշխատանքները զուգորդվում են սոցիալիստական ապրելակերպի առավելության, սովետական ժողովրդի խաղաղության ծրագրի իրականացման համար ծավալված պայքարում ձեռք բերված հաջողություններն արտացոլող գրականության պրոպագանդմամբ:

Զարգացած սոցիալիստական հասարակարգում արմատապես փոխվում են գրադարանային հաստատությունների սոցիալական ֆունկցիաները: Գրադարաններն այժմ զբաղվում են նաև սոցիոլոգիական ուսումնասիրություններով, նպատակ ունենալով ժամանակին բավարարել ընթերցողների նախասիրությունները: Լայնորեն ծավալվել է կոնկրետ գիտությունների, սոցիոլոգիական, բնագիտական, իրավաբանական, տնտեսագիտական գրականության պրոպագանդան:

Մեր օրերում, գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում, գրադարաններն ավելի սերտորեն են համագործակցում գիտատեխնիկական ինֆորմացիայի օրգանների հետ: Սիստեմատիկաբար կազմվում են գիտության ու տեխնիկայի նորությունների ընթացիկ տեղեկատու-ինֆորմացիոն ցանկեր, ընդլայնվում է գրադարանների և անհատական ու կոլեկտիվ աբոնենտների կապը, ուսումնասիրվում է տրված ինֆորմացիայի արդյունավետությունը: Գրադարանավարները ջանում են բոլոր մասնագետներին, կուլտուրայի ու արվեստի հաստատություններին, ստեղծագործական կազմակերպություններին ապահովել տեղեկատու-ինֆորմացիոն տվյալներով:

Ինֆորմացիայի չտեսնված հեղեղը բեռնաթափելու, դրա սիստեմատավորումը կարգավորելու նպատակով Ալ. Մյասնիկյանի անվան հանրապետական գրադարանը սկսել է հրատարակել գրականության հանձնարարական ցանկեր՝ գիտության բոլոր բնագավառների վերաբերյալ:

Բնակչության տարբեր խմբերի գրադարանային սպասարկման կատարելագործման նպատակով, ՍՄԿԿ Կենտկոմի (1974 թ. մայիս) որոշման համապատասխան, ՍՍՀՄ-ում 1974—1980 թթ. բոլոր մասսայական գրադարանների բազայի վրա պետք է կազմակերպվեն գրադարանների կենտրոնացված համակարգեր՝ միավորումներ: Ըստ վարչատերիտորիալ բաժանման, միութենական հանրապետություններում ստեղծվում են մարզային, քաղաքային և շրջանային գրադարանների կենտրոնացված համակարգեր՝ միասնական գրքային ֆոնդով, վարչակառավարչական, մատենագիտամեթոդական ընդհանուր ղեկավարությամբ, կադրերի, հաստիքների ու ֆինանսական հատկացումների միավորման սկզբունքով:

Երկրի մասսայական գրադարանների ցանցի կենտրոնացման աշխատանքները ճիշտ վարելու համար, ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությունը (ՍՍՀՄ ֆինանսների մինիստրության հետ համաձայնեցված) 1975 թվականին հաստատել է կանոնադրություն «Պետական մասսայական գրադարանների կենտրոնացման մասին»: Մասսայական, մասնագիտական, գիտական գրադարանների խոշորացումն ու կենտրոնացումը բնակչության գրադարանային-մատենագիտական սպասարկման բարելավման հիմնական միջոցներից է: Գրադարանային ցանցի վերակառուցման նպատակն է այնպես կազմակերպել ու ղեկավարել գրադարանների գործունեությունը, որ հնարավոր լինի առավելապես բավարարել ընթերցողների պահանջները:

1974—1976 թվականներին երկրում ստեղծվել են 3 հազարից ավելի գրադարանների կենտրոնացված համակարգեր, որոնցից 21-ը մեր հանրապետությունում— 3-ը՝ քաղաքային (Կիրովական, Դիլիջան, Լենինական), 18-ը՝ շրջանային (Արարատ, Արտաշատ, Թալին, Շամշադին, Կրասնոսելսկ, Հոկտեմբերյան, Եղեգնաձոր և այլն): Մինչև 1980 թ. կստեղծվեն 4 քաղաքային, 36 շրջանային և մեկ մանկական ինքնուրույն գրադարանների կենտրոնացված համակարգեր, որոնք կմիավորեն 1.235 մասսայական (շրջանային, քաղաքային, մանկական, գյուղական և ակումբին կից) գրադարաններ:

Ակներև է կենտրոնացված համակարգերի առավելությունը չմիավորված գրադարանների նկատմամբ: Նախորդ տարիների համեմատ, զգալիորեն բարեփոխվել են դրանց աշխատանքները բնորոշող հիմնական ցուցանիշները— գրքերի շրջանառությունը, ընթերցողների միջին ընթերցողությունն ու հաճախումը:

Դպրոցականների գրադարանային-մատենագիտական սպասարկման, նրանց գեղագիտական ու բարոյական դաստիարակության գործում իրենց խոշոր ավանդն ունեն Խնկո-Ապոր անվան հանրապետական մանկական գրադարանի ղեկավարությամբ գործող 81 քաղաքային և շրջանային մանկական, 1.370 դպրոցական գրադարանները, որոնք նպաստում են երեխաների գիտելիքների հարստացմանը, նրանց աշխարհայացքի ձևավորմանը, ուսումնադաստիարակչական ողջ պրոցեսի բարելավմանը:

***

Արժանավայել գործերով դիմավորեցին գրադարանային աշխատողները ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյա հոբելյանը: Գրքի պրոպագանդիստները խանդավառությամբ ընդունեցին Հիմնական օրենքի 27-րդ հոդվածը, որտեղ մասնավորապես ասված է. «Պետությունը հոգ է տանում հոգևոր արժեքները պահպանելու, բազմապատկելու և դրանք սովետական մարդկանց բարոյական ու գեղագիտական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման համար լայնորեն օգտագործելու մասին»:

ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությանը կից պետական միջգերատեսչական գրադարանային հանձնաժողովի որոշմամբ, դեռևս 1977 թ. հունվարի 1-ից, կազմակերպվեց գրադարանների աշխատանքների համամիութենական հասարակական մեկամյա ստուգատես, ուր պրոպագանդվում է հատկապես մեծ Հոկտեմբերի համաշխարհային պատմական նշանակությունը, լենինյան կոմունիստական կուսակցության ու սովետական պետության հերոսական պատմությունը, սովետական բազմազգ ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթները, հայրենասիրությունը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունն արտացոլող գրականությունը:

Գրադարանային աշխատողները համակողմանի պրոպագանդում են կուսակցության արտաքին քաղաքականությունը, մասսայականացնելով հանուն խաղաղության ու ժողովուրդների համագործակցության ծավալած ՍՄԿԿ հետևողական պայքարն արտացոլող գրքեր, ինչպես և այնպիսի գեղարվեստական ստեղծագործություններ, ուր ներկայացված են կոմունիստների, մեր ժամանակակիցների սխրանքները, նվիրվածությունը լենինիզմի, մեծ Հոկտեմբերի ամենահաղթ գաղափարներին, ցույց է տրված, թե ինչպես են կենսագործվում կուսակցության XXV համագումարի առաջադրանքները:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը ևս Հայաստանի գրադարանային աշխատողների մշտական ուշադրության առարկան է. ՍՍՀՄ ժողովուրդների միասնական ընտանիքում, Պրոլետարական ինտերնացիոնալիզմը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման մարտական զենքն է և նման այլ թեմաներով գրադարաններում պարբերաբար կազմակերպվում են զեկուցումներ, զրույցներ, դասախոսություններ, գրքերի քննարկումներ:

Հանրապետության բոլոր գրադարաններում ջանում են ընթերցողների սպասարկումը կազմակերպել ըստ նրանց մասնագիտական, հանրակրթական և տարիքային առանձնահատկությունների, սիստեմատիկաբար ուսումնասիրել նրանց պրոֆեսիոնալ նախասիրությունները, ամենուրեք արմատավորել սպասարկման շերտավորված եղանակը, կազմել գրականության հանձնարարական, մատենագիտական ցանկեր: Կազմակերպվում են գրադարանների ստուգատեսներ, դրանց գործունեության գաղափարական մակարդակի առավել բարձրացման նշանաբանով:

Կուսակցությունն ու կառավարությունը բարձր են գնահատում գրադարանների՝ կուլտուրլուսավորական այդ կարևոր օջախների, աշխատողների ծառայությունները: «Հանրապետության վաստակավոր գրադարանավարի» պատվավոր կոչման են արժանացել 180 հոգի, 14-ը պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, 260-ը՝ պատվոգրերով, 110-ը՝ «Կուլտուրայի աշխատողի գերազանցիկի», «Սոցիալիստական մրցության հաղթողի», «Սոցիալիստական մրցության հարվածայինի» կրծքանշաններով: Իրենց լավագույն աշխատանքով աչքի են զարնում Երևանի Ավ. Իսահակյանի անվան քաղաքային կենտրոնական, Ստեփանավանի քաղա-

քային մանկական գրադարանները, Ղափանի շրջանի Դավիթ-Բեկ գյուղի գրադարանը, Կիրովականի, Դիլիջանի, Արարատի և Արտաշատի գրադարանների կենտրոնացված համակարգերը, ինչպես նաև Էջմիածնի, Արթիկի շրջանային, Երևանի № 3 քաղաքային մանկական և գրադարանային այլ հաստատություններ:

ՀԿԿ Կիրովականի, Դիլիջանի, Լենինականի քաղաքային, Հոկտեմբերյանի, Արարատի, Գորիսի, Թումանյանի, Ղուկասյանի շրջանային կոմիտեները և կուլտուրայի տեղական օրգանները զգալիորեն բարելավել են գրադարանային գործի ղեկավարությունը, շատ բան է արված գրադարանների նյութատեխնիկական բազայի ամրապնդման, գրքի շրջանառության, կադրերի մասնագիտական ու քաղաքական պատրաստականության բարձրացման ասպարեզում:

Հանրապետությունում գրադարանային գործի հետագա զարգացման ու կատարելագործման մարզում մեծ ավանդ են ներդնում Ալ. Մյասնիկյանի անվան հանրապետական գիտական խոշոր գրադարանը և Խնկո-Ապոր անվան հանրապետական մանկական գրադարանը: Գրադարանագիտության, մատենագիտության, հայ գրքի պատմության և գիտամեթոդական օգնության հանրապետական այդ կենտրոնները մշակում, ուսումնասիրում, ընդհանրացնում և մասսայականացնում են գրքի պրոպագանդման առաջավոր փորձը՝ սեմինար-պարապմունքների, գիտագործնական կոնֆերանսների, մեթոդական նյութերի ժողովածուների, տեղեկամատենագիտական գրականության հանձնարարական ցանկերի և գրադարանագիտական առանձին աշխատությունների հրատարակման միջոցով:

Ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում աշխատող մասնագետների գրադարանային սպասարկման մարզում շնորհակալ գործ են կատարում գիտատեխնիկական ինֆորմացիայի սիստեմի տեխնիկական գրադարանները, որոնց գիտամեթոդական ակնբախ օգնություն են ցույց տալիս հանրապետական գիտատեխնիկական գրադարանը, գիտությունների ակադեմիայի ֆունդամենտալ, առողջապահության հանրապետական գիտաբժշկական, գյուղատնտեսության, հանրապետական գիտագյուղատնտեսական հաստատությունների, պետական համալսարանի գիտական գրադարանները:

***

Անվիճելի են հաջողությունները գրքի պրոպագանդման ասպարեզում, մասնավորապես՝ ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի «Աշխատավորության կոմունիստական դաստիարակության և գիտատեխնիկական առաջընթացի գործում գրադարանների դերի բարձրացման մասին» (1974 թ. օգոստոսի 1) որոշումից հետո: Չնայած դրան, գրքային ֆոնդերի ռացիոնալ օգտագործման, բնակչության գրադարանային սպասարկման կազմակերպման դրվածքը դեռևս լիովին չի համապատասխանում գաղափարական աշխատանքների վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի, ինչպես և ՀԿԿ Կենտկոմի՝ 1976 թ. հոկտեմբերյան պլենումի որոշումներից բխող խնդիրներին:

ՀԿԿ ԿԿ՝ 1976 թ. հոկտեմբերյան պլենումում, անդրադառնալով դաստիարակչական աշխատանքի ուժեղացման մարզում հանրապետության կուսկազմակերպության խնդիրներին, ՀԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Դալլաքյանն իրավամբ նշեց, որ կուլտուր-լուսավորական հիմնարկությունների մեծ մասի գործունեությունը դեռևս չի համապատասխանում աշխատավորների կոմունիստական դաստիարակության աճած պահանջներին, որ այդ հիմնարկությունները պետք է դառնան կուլտուրայի իսկական օջախներ, կոմունիստական դաստիարակության կենտրոններ:

Այդ ամբողջովին վերաբերում է նաև գրադարանների գործունեությանը: Անբավարար են կոմպլեկտավորվում և օգտագործվում տպագիր արտադրանքի հարուստ ֆոնդերը:

Տարիների ընթացքում, հատկապես մասսայական գրադարաններում, կուտակվել են մեծ քանակությամբ հնացած, ոչ պրոֆիլային, գրավաճառ կազմակերպությունների ցանցում չիրացված, ընթերցողական շրջանառության մեջ ևս չընդգրկվող գրականություն: Գրադարանային կոլեկտորին հատկացվող առանձին գրքերի օրինակները սահմանափակ են և, բնականաբար, չեն բավարարում գրադարանների նվազագույն պահանջները:

Անհամեմատ ցածր է բարձր պահանջարկ ունեցող գրքերի (գիտահանրամատչելի, ուսումնական, հասարակական-քաղաքական, առանձին մատենաշարերի, հատկապես մանկապատանեկան գրականության) տպաքանակը: Անհրաժեշտ է առաջիկայում ավելի ամրապնդել հրատարակչությունների և գրադարանային հաստատությունների, ընթերցողների համագործակցությունը՝ թողարկվող տպագիր արտադրանքի, թեմատիկ պլանների, տպաքանակների սահմանման հարցում:

Գրքային ֆոնդն ազատել արդիականությունը կորցրած գրականությունից, ստեղծել գրքափոխանակության ֆոնդեր և կազմակերպել սակավ պահանջարկ ունեցող գրականության պահպանման սիստեմ— ավանդատու գրադարաններ (որոնց կանոնադրությունը և այդպիսի գրադարանների ցուցակը հաստատված է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի՝ 1975 թ. որոշմամբ):



Հանրապետության շատ գրադարաններում դեռևս չեն ուսումնասիրվում ընթերցողների նախասիրությունները: Կազմակերպվող մասսայական միջոցառումները, ցուցադրական ագիտացիան չեն շաղկապվում տվյալ ձեռնարկության, կազմակերպության առջև դրված կոնկրետ սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրների հետ: Մատենագիտության պրոպագանդման գործում ինչպես հարկն է չեն օգտագործվում մասսայական ինֆորմացիայի միջոցները՝ մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն:

Գրքային հարստությունների արդյունավետ օգտագործմանը խանգարում են գրադարանների գերատեսչական անջատվածությունը, գիտամեթոդական, գիտահետազոտական և գիտամատենագիտական հրատարակչական գործունեության բնագավառներում դրանց աշխատանքների ոչ լիարժեք կոորդինացումն ու կոոպերացումը:

Շատ թերություններ հետևանք են այն բանի, որ տեղական կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական որոշ կազմակերպություններ (Սևանի, Կալինինոյի, Ապարանի, Իջևանի և այլն) պատշաճ հոգատարություն չեն ցուցաբերում գրադարանների նյութատեխնիկական բազայի ամրապնդման, ցանցի ճիշտ տեղաբաշխման ու կարգավորման, կադրերի ընտրության ու դաստիարակության, գրքի պրոպագանդայի կատարելագործման խնդրում: Գրադարանային հաստատություններն անբավարար են ապահովված ժամանակակից տեխնիկական միջոցներով (բազմացնող-պատճենահանող, հաշվիչ մեքենաներ, մասնագիտացված կահույք, ավտոտրանսպորտ, կապի միջոցներ և այլն):

Տասներորդ հնգամյակում կարևոր խնդիրներ, անելիքներ ունեն գրադարանային գործի կազմակերպիչներն ու աշխատողները. անհրաժեշտ է ընդլայնել գրքային ֆոնդերից օգտվողների շրջանակը, կատարելագործել աշխատանքների կազմակերպման մեթոդները, որպեսզի ավելի ու ավելի շատ մարդկանց մատչելի դառնան գրադարաններում կենտրոնացված հարստությունները: Ստեղծել գրադարանների շրջանային և քաղաքային կենտրոնացված միավորումներ, բարելավել կադրերի պատրաստման ու վերապատրաստման գործը: Այդ ամենի իրականացմանը կնպաստի ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1977 թ. հունվարին ընդունած որոշումը «Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությանը կից պետական միջգերատեսչական գրադարանային հանձնաժողովի կազմակերպման մասին»: Հանձնաժողովը կոչված է՝ տասներորդ հնգամյակում բարելավելու գրադարանների գործունեությունը աշխատավորության կոմունիստական դաստիարակության և ինֆորմացիոն սպասարկման, դրանց գիտամեթոդական և գիտահետազոտական աշխատանքների ղեկավարման բարելավման մարզում:

ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և ՀԱՄԿԽ-ի նախագահությունը 1976 թ. դեկտեմբերի 24-ին որոշում են կայացրել «Բնակչությանն սպասարկող ոլորտի աշխատողների և կազմակերպությունների աշխատավարձի և աշխատանքի վճարման նոր կարգի մասին», որի համաձայն 1977—1980 թվականներին կուլտուր-լուսավորական հիմնարկություններում աշխատավարձը պետք է սահմանվի ըստ աշխատանքի հիմնական ցուցանիշների, աշխատողների կրթության ու մասնագիտական ստաժի. աշխատավարձի այդ նոր կարգի գործադրումը կնպաստի բնակչության գրադարանային սպասարկման ճիշտ կազմակերպմանը, կբարձրացնի գրքի պրոպագանդիստների գործունեության արդյունավետությունը:

Կոմունիստական կուսակցության ու կառավարության հոգատարության մի նոր արտահայտություն է այդ, որին հանրապետության գրադարանային աշխատողները կպատասխանեն իրենց առավել պարտաճանաչությամբ ու գործիմացությամբ, իրենց ջանքերը կներդնեն՝ գրքերի միջոցով մոբիլիզացնելու աշխատավորությանը՝ կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի նախանշած սոցիալ-տնտեսական վիթխարի խնդիրները, ակտիվ մասնակցելու կոմունիստական հասարակարգ կառուցող մարդու դաստիարակության մեծ ու պատասխանատու գործին:

# Պատմում են ցուցանմուշները

Վ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ տարածման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործուն միջոց են մեր թանգարանները, որոնք գիտալուսավորական մեծ աշխատանք են ծավալում սովետական ժողովրդի լայն մասսաների շրջանում, համակելով նրանց ջերմ հայրենասիրությամբ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության առաջին իսկ օրերին Վ. Ի. Լենինը լուսավորության ժողովրդական կոմիսարիատին ցուցում տվեց վճռական միջոցներ ձեռք առնել թանգարաններում գտնվող կուլտուրական արժեքները պահպանելու նպատակով: Լենինի առաջարկով ժողովրդական սեփականություն համարվեցին գեղարվեստական ու պատմական բոլոր հավաքածուները, ազգային կուլտուրայի հուշարձանները:

1918 թ. հունվարին, Սովետների համառուսաստանյան III համագումարում որոշում ընդունվեց երկրում թանգարանային գործը զարգացնելու մասին: Համագումարը նշեց, որ անհրաժեշտ է պահպանել անցյալից ժառանգած կուլտուրական վիթխարի արժեքները, կազմակերպել թանգարաններ՝ այդ ամենն ի սպաս դնելով ժողովրդի հոգևոր պահանջների բավարարմանը:

Իսկ ՌԿ(բ)Կ VIII համագումարում 1919 թ. մայիսին ընդունված ծրագրում ասված էր. «...բացել և աշխատավորներին մատչելի դարձնել արվեստի բոլոր գանձերը, որոնք ստեղծվել են նրանց աշխատանքի շահագործման հիման վրա և մինչև այժմ գտնվել բացառապես շահագործողների տնօրինության տակ»:

Եվ ծավալվեց թանգարանաշինության գործը. Եթե մինչև հեղափոխությունը երկրում կար միայն 180 թանգարան, ապա 1977 թվականին դրանց թիվն անցավ հազարից, իսկ թանգարան հաճախողների թիվը հասնում է տարեկան 130 միլիոնի: Նորանոր թանգարաններ ստեղծվեցին ազգային հանրապետություններում, որտեղ ցարիզմի ժամանակ դրանք հատ ու կենտ էին:

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո, 1921 թվականի սկզբներին, հեղկոմի հատուկ դեկրետով հիմնադրվեց Հայաստանի պատմության պետական թանգարանը: Հայ ժողովուրդը տեր դարձավ ո՛չ միայն իր քրտինքի, ձեռքի ու մտքի աշխատանքի արդյունքին, այլև սկսեց ժողովել իր նախորդ սերունդների ստեղծած մշակութային արժեքների բեկորները: Լազարյան ճեմարանից, Նոր-Նախիջևանի թեմական դպրոցից, Թիֆլիսի հայոց ազգագրական ընկերությունից, Էջմիածնի մայր տաճարից, Սանահինից և այլ վայրերից նորաստեղծ թանգարան էին բերվում հայկական կուլտուրայի պատմական արժեքավոր շատ նմուշներ...

Հանրահայտ են հանրապետության լուսավորության ժողովրդական կոմիսար Ասքանազ Մռավյանի ջանքերը մայր թանգարանի հարստացման գործում: 1924 թ. հունիսի 4-ին ՌՍՖՍՀ ժողկոմխորհին գրած իր նամակում նա հայտնում է, որ Հայաստանի կառավարությունը սովետական կարգերի հաստատման առաջին օրից Երևանում ստեղծեց պետական թանգարան՝ պատկերասրահով, ուր ներկայացված են հիմնականում հայ մեծ նկարիչների, քանդակագործների ստեղծագործությունները: Այնուհետև Մռավյանն առաջարկում է Մոսկվայի և Լենինգրադի թանգարանային ֆոնդից Հայաստանին հատկացնել որոշ քանակությամբ գործեր պետական թանգարանը հարստացնելու նպատակով:

Պետության ձեռնարկած մի շարք միջոցառումների շնորհիվ թանգարանը տարեցտարի հարստանում է արժեքավոր ցուցանմուշներով: 1925—1926 թվականներին անհրաժեշտ գնումների համար թանգարանին հատկացվում է 750 ռուբլի, որը երեք տարում հասնում է 10.000-ի: Կազմակերպված հնագիտական աշխատանքների ու պեղումների միջոցով, որոնք ղեկավարում էին հմուտ գիտնականներ Ե. Լալայանը, Ալ. Քալանթարը, Ե. Բայբուրթյանը, Ստ. Լիսիցյանը և ուրիշներ, թանգարանային ֆոնդը հարստանում էր նորանոր նյութերով: Արդեն 1935 թվականին որոշ բաժիններ անջատվեցին պատմության թանգարանից, և ստեղծվեցին պետական պատկերասրահ, հեղափոխության և գրականության թանգարաններ:

Պատմության թանգարանում աշխատում էին մշակույթի այնպիսի ճանաչված գործիչներ, որպիսիք էին՝ Մարտիրոս Սարյանը, Վրթանես Ախիկյանը, Երվանդ Լալայանը, Երվանդ Շահազիզը, Կարո Ղափադարյանը, Մորուս Հասրաթյանը, Վազգեն Չալոյանը, Ռուբեն Դրամփյանը և ուրիշներ:

Հայաստանի պատմության պետական թանգարանի հնագիտական իրերի թիվն այժմ անցնում է 65 հազարից, ազգագրականինը հասնում է 14 հազարի, դրամանմուշները 65 հազարից ավելի են: Հավաքածուների մեծագույն մասը զուտ հայկական և հայաստանյան է:

Թանգարաններ են կազմակերպվել նաև Լենինականում, Կիրովականում, Դիլիջանում, Ստեփանավանում և հանրապետության այլ քաղաքներում:

1960 թվականի նոյեմբերի 30-ին՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակին, բացվեց հեղափոխության թանգարանը, որն իր մեծությամբ երկրորդն է մեր հանրապետությունում: Հարուստ է նրա էքսպոզիցիան: Ներկայացված են գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի դիմանկարները, նրանց աշխատությունները: Այցելուների ուշադրությունն է գրավում Ստ. Շահումյանի թարգմանությամբ 1904 թ. լույս տեսած Կոմունիստական կուսակցության մանիֆեստը: Լուսավորող քարտեզը ցույց է տալիս Կոմունիստական կուսակցության մանիֆեստի հրատարակության վայրերը երկրագնդի տարբեր քաղաքներում: Տարբեր լեզուներով հրապարակված թերթերն ու լուսանկարներն արտացոլում են Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գործունեությունն առաջին ինտերնացիոնալի, «Կապիտալ»-ի ստեղծման, ֆրանս-պրուսական պատերազմի և Փարիզյան կոմունայի տարիներին:

Այստեղ ցուցադրված է նաև այն նամակի պատճենը, որ գրել է Մարքսը Էնգելսին Կապիտալի վերջին էջը գրելուց հետո:

Հաջորդ բաժնում քարտեզների, դիագրամների, փաստաթղթերի ու գեղարվեստական նըկարների միջոցով ցույց է տրված կապիտալիստական հարաբերությունների հաստատումը Ռուսաստանում, ուր ուժեղացող շահագործման հետևանքով հետզհետե վատթարանում էր բանվորների ու գյուղացիների վիճակը: Բանվորների ծանր կյանքն է պատկերված Ն. Վերխոտուրովի «Վերջնահաշիվը» գծանկարում:

Ռուսական նոր զարգացող արդյունաբերության անհրաժեշտ էին պղինձ, բամբակ, սպիրտ...: Զանազան վավերագրերով, ցուցանմուշներով ցույց է տրված, թե ինչպես էր Կովկասը մասնակցում ռուսական արդյունաբերության զարգացմանը: Պղնձարդյունաբերության հիմնական կենտրոններն էին Ալավերդին, Ղափանը: Ալավերդու բանվորների չարքաշ աշխատանքն է ներկայացրել Ա. Հունանյանը «Հին Ալավերդին» գծանկարով: Հետաքրքրությամբ են դիտվում նաև հայ բանվորների ծանր կյանքը արտացոլող վավերանկարները (Զաչուռի թունելի շինարարությունը, աշխատանքը Ղափանի և Ալավերդու հանքերում և այլն): Լավ է ձևավորված հեղափոխական-դեմոկրատներ Վ. Գ. Բելինսկուն, Ա. Ի. Գերցենին, Ն. Ա. Դոբրոլյուբովին, Ն. Գ. Չերնիշևսկուն նվիրված ստենդը, ուր ցույց են տրված նաև «Կոլոկոլի» և «Հյուսիսափայլի» համարները. այստեղ զետեղված են և հայ ականավոր հեղափոխական-դեմոկրատ Մ. Նալբանդյանի նկարն ու աշխատությունները:

Մի այլ ցուցատախտակ ներկայացնում է Ժնևում կազմակերպված «Աշխատանքի ազատագրություն» խումբը, դրա անդամներ Գ. Պլեխանովին, Վ. Իգնատովին, Վ. Զասուլիչին և այլոց, որոնք լայն աշխատանք ծավալեցին Ռուսաստանում մարքսիզմի տարածման նպատակով:

Հետաքրքրությամբ են դիտվում Վ. Ի. Լենինի երիտասարդական տարիները և հեղափոխական գործունեության սկիզբն արտացոլող ցուցանմուշները: Էքսպոզիցիայում առանձին տեղ են գրավում Պետերբուրգի՝ Վ. Ի. Լենինի գլխավորած «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» գործունեությանը վերաբերող փաստաթղթերի ֆոտոպատճենները և այլ նյութեր: Այստեղ ցուցադրված են Վ. Ի. Լենինի լուսանկարը «Պայքարի միության» անդամների հետ, հրապարակված թռուցիկները, Իլյիչի առաջին աշխատությունները: Ահա և Ռուսաստանի մարքսիստական խմբակների անդամներ, հայ մարքսիստներ Բ. Կնունյանցի, Ի. Լալայանցի և այլոց լուսանկարները:

Թանգարանի շատ նյութեր ներկայացնում են նաև հեղափոխական շարժման վերելքը Անդրկովկասում: Հայ իրականության մեջ մարքսիզմի գաղափարների տարածման գործում մեծ է Լենինի զինակից, ականավոր հեղափոխական Ս. Գ. Շահումյանի դերը: 1899 թ. Ջալալօղլում նա ստեղծեց մարքսիստական խմբակ, որի անդամներն էին՝ Անուշավան Թումանյանը, Սեդրակ Հարությունյանը, Աշոտ Թումանյանը, Սերգո Իսրաելյանը և ուրիշներ, որոնցից շատերը հետագայում ընդգրկվեցին ՌՍԴԲԿ շարքերը:

Այցելուները, հատկապես դպրոցականները,

ուսանողներն ուշադրությամբ են դիտում «Իսկրա»-ին նվիրված ցուցատախտակը: Այստեղ ներկայացված են «Իսկրա»-ի շուրջը համախմբված Ի. Բաբուշկինի, Կեցխովելու, Ն. Կրուպսկայայի, Յա. Սվերդլովի, Ս. Սպանդարյանի, Ե. Ստասովայի, Ստ. Շահումյանի լուսանկարները և «Իսկրա»-ի առաջին համարը, ուր աչքի է զարնում Վ. Ի. Լենինի Մեր շարժման կենսական խնդիրները առաջնորդող հոդվածը:

Ցուցադրված է նաև «Իսկրա»-ի 4-րդ համարը՝ Վ. Ի. Լենինի Ինչի՞ց սկսել հոդվածով, ուր տրված է մարքսիստական կուսակցության ըստեղծման կոնկրետ պլանը: Սրահի կենտրոնում Բաքվի կոմիտեի ընդհատակյա «Նինա» տպարանի մակետն է. այս տպարանում վերատպվում էին «Իսկրա»-ի համարները և տարածվում Ռուսաստանում:

1901 թ. ստեղծվում են ՌՍԴԲԿ Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի լենինյան իսկրայական կոմիտեները: Իսկ 1902 թ. Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ա. Զուրաբյանի, Ս. Խանոյանի նախաձեռնությամբ ձևավորվում է «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը», որը հետագայում ձուլվում է Թիֆլիսի կոմիտեի հետ:

1903 թ. Թիֆլիսում հրավիրվում է Կովկասյան սոցիալ-դեմոկրատական բանվորական կազմակերպությունների առաջին համագումարը, որն ընտրում է ղեկավար օրգան՝ ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտե: Այդ կոմիտեի կազմում տարբեր ժամանակներում ընտըրվում են Ա. Զուրաբյանը, Մ. Ցխակայան, Բ. Կնունյանցը, Ա. Ծուլուկիձեն, Մ. Բոչորիձեն, Ստ. Շահումյանը, Վ. Բաբրովսկին, Ն. Ալաջալովան և ուրիշներ, որոնց նկարները ևս ցուցադրված են այստեղ: Ահա Կովկասյան միութենական կոմիտեի օրգան «Պրոլետարիատի կռիվ» թերթի մոնտաժը՝ վրացերեն, հայերեն, ռուսերեն:

Ցուցանմուշների մեկ այլ սրահում ներկայացված է 1905—1907 թթ. ռուսական առաջին հեղափոխության, ստոլիպինյան ռեակցիայի և հեղափոխական շարժման նոր վերելքի ժամանակաշրջանը, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ ցարիզմի տիրապետության տակ հեծող աշխատավորների մղած հերոսական պայքարն արտացոլող մի շարք դրվագներ:

Նույն ցուցասրահում այցելուն կգտնի հետաքըրքրական նյութեր, որոնք կօգնեն պատկերացնելու 1905 թ. հեղափոխական շարժումների ընթացքն Անդրկովկասում և Հայաստանում: Բոլշևիկների հերոսական գործունեությունն է ներկայացված Ա. Դավթյանի «Հոկտեմբերյան քաղաքական գործադուլը Ալեքպոլի դեպոյում» կոմպոզիցիոն մեծ կտավում, ինչպես և Թիֆլիսի բանվորների՝ 1905 թ. հոկտեմբերի 14-ի հզոր ցույցը պատկերող լուսանկարում:

Չնայած պարտություն կրեց 1905—1907 թթ. ռուսական առաջին հեղափոխությունը, բայց այն խարխլեց ցարիզմի հիմքերը: Բազմաթիվ վավերագրեր, կոմպոզիցիոն ու գրաֆիկ նկարներ և սխեմա-քարտեզներ ներկայացնում են բոլշևիկների ղեկավարությամբ պրոլետարիատի ծավալած պայքարը ցարիզմի և բուրժուազիայի դեմ 1907—1917 թվականներին:

1917 թ. փետրվարի 27-ին Ռուսաստանում հաղթանակեց բուրժուադեմոկրատական հեղափոխությունը, տապալվեց Ռոմանովների 300-ամյա միապետությունը:

Ցուցափեղկերից մեկում ցուցադրված է Վ. Ի. Լենինի Նամակներ հեռվից հոդվածաշարը, որտեղ պրոլետարիատի առաջնորդը բնութագրում է այդ հեղափոխությունը, դրա շարժիչ ուժերը, նշում, որ հեղափոխությունը դեռևս ավարտված չէ, այն պետք է հասցնել հաղթական վախճանի:

1917 թ. ապրիլի 3-ին, երկարատև էմիգրացիայից Ռուսաստան է վերադառնում Վ. Ի. Լենինը: Ցուցափեղկի կենտրոնում Լենինի հըռչակավոր Ապրիլյան թեզիսների նախնական ինքնագրերի ֆոտոպատճենն է: Ցուցադրված են նաև «Ընթացիկ մոմենտի մասին» բանաձևի մեքենագրված լիտոպատճենը, ագրարային հարցի վերաբերյալ բանաձևի ձեռագիր լուսապատճենը՝ Իլյիչի ուղղումներով:

Ներկայացված են նաև «Կավկազսկի ռաբոչի», «Բակինսկի ռաբոչի», «Սոցիալ-դեմոկրատ» և բոլշևիկյան այլ թերթեր, որտեղ տպագրված են Ստ. Շահումյանի, Ս. Կասյանի և այլոց հոդվածները, ժամանակավոր կառավարության հակահեղափոխական քաղաքականության դեմ ուղղված կոչերը:

1917 թվականի հոկտեմբերի 10-ին և 16-ին Լենինի ղեկավարությամբ Պետրոգրադում տեղի է ունենում ԿԿ-ի պատմական նիստը, որտեղ ընդունվում է լենինյան բանաձևը՝ զինված ապըստամբության վերաբերյալ: Թանգարանում ցուցադրված է այդ բանաձևի պատճենը:

Հոկտեմբերի 24-ին լույս 25-ի գիշերը Պետրոգրադում սկսվեց բանվորների, զինվորների, նավաստիների զինված ապստամբությունը: Պատմական այդ խոշոր իրադարձությանն են նվիրված «Ձմեռային պալատի գրոհը» կոմպոզիցիոն նկարը և «Ավրորա» հածանավի մակետը: Սմոլնիում բացվեց Սովետների համառուսաստանյան II համագումարը: Առանձին ցուցափեղկերում և ցուցասեղաններում զետեղված են այդ համագումարում Վ. Ի. Լենինի հռչակած դեկրետները «Խաղաղության մասին», «Հողի մասին», ինչպես նաև ռազմահեղափոխական կոմիտեի կոչը՝ ուղղված «Ռուսաստանի քաղաքացիներին»:

Դահլիճում ցուցադրված լուսավորված սխեմա-քարտեզը պատկերում է սովետական իշխանության հաղթական երթը:

1918 թվականի ապրիլի 25-ին կազմվեց Բաքվի ժողովրդական կոմիսարների խորհուրդը, որն առաջին սովետական կառավարությունն էր Անդրկովկասում: Ահա Բաքվի ժողկոմխորհի անդամների՝ Ստ. Շահումյանի, Պ. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Ի. Ֆիոլետովի, Գ. Կորգանովի, Յա. Զևինի, Ա. Կարինյանի և այլոց լուսանկարները: Ցուցադրված են նաև Բաքվի ժողկոմխորհի հրապարակած դեկրետները նավթարդյունաբերության և Կասպյան նավատորմի ազգայնացման վերաբերյալ:

1918 թվականի սեպտեմբերի 20-ին, Ախչակումայի ավազուտներում, անգլիական ինտերվենտների կողմից գազանաբար սպանվեցին Բաքվի 26 կոմիսարները: Նրանց վերջին խոսքերն էին. «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար», «Կեցցե՜ կոմունիզմը»:

Այցելուները հուզմունքով են դիտում թանգարանում Բրոդսկու՝ «26 կոմիսարների գնդակահարությունը» նկարի գրավյուրան կես բրինձի հատիկի վրա, որի հեղինակն է Է. Ղազարյանը:

Մի շարք ցուցանմուշներ պարզորոշ պատկերացում են տալիս այն մասին, թե մեր կուսակցության ղեկավարությամբ սովետական երկրի աշխատավորներն ինչպիսի՜ հերոսական պայքար են մղել օտարերկրյա ինտերվենտների և ներքին հակահեղափոխական ուժերի դեմ: Ներկայացված է 1918 թ. հունվարի 15-ին Լենինի ստորագրած դեկրետը «Բանվորագյուղացիական կարմիր բանակ կազմելու մասին», ապա՝ քաղաքացիական կռիվների հերոսներ Մ. Տուխաչևսկու, Վ. Բլյուխերի, Ս. Բուդյոննու, Ա. Եգորովի, Վ. Չապաևի, Ն. Շչորսի, Ս. Լազոյի, Գ. Կոտովսկու, Ա. Պարխոմենկոյի և ուրիշների լուսանկարները:

Այցելուները հետաքրքրությամբ են դիտում 24-րդ երկաթյա դիվիզիայի, նրա հրամանատար Գայի հետ առնչվող լուսանկարները, նրա սուրը...

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության ալիքը տարածվեց նաև Հայաստանում: Հայաստանի աշխատավորները 11-րդ բանակի օգնությամբ 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատեցին սովետական իշխանություն: Այստեղ ցույց է տրված «Մայիսյան ապստամբությունը Հայաստանում» սխեմա-քարտեզը, որտեղ նըշված են այն վայրերը, ուր տեղի են ունեցել քաղաքացիական կռիվները: Ահա և Հայաստանի հեղկոմի դեկլարացիան սովետական կարգերի հաստատման մասին:

Ա. Միրզոյանի պատրաստած դիոգրամը ներկայացնում է «Կարմիր բանակի մուտքը Երևան 1920 թվականին»: Այս բաժնում ցուցադրված են Մայիսյան ապստամբության ղեկավարներ Ս. Ալավերդյանի, Բ. Ղարիբջանյանի, Ս. Մուսայելյանի, Ղ. Ղուկասյանի և այլոց դիմանկարները: Ահա հեղկոմի կազմը՝ականավոր հեղափոխական-լենինյանի՝ Սարգիս Կասյանի ղեկավարությամբ: Մի այլ մեծադիր նկարում պատկերված է այն պահը, երբ Հայաստանի հեղկոմի նախագահ Ս. Կասյանը սովետական կարգերի հաստատման լուրն է ավետում պրոլետարիատի մեծ առաջնորդին: Դիտելով թանգարանի հաջորդ սրահներում ցուցադրված հարուստ նյութերը՝ այցելուները վառ պատկերացում են կազմում 1920—1976 թթ. մեր երկրում զարգացած սոցիալիզմի կառուցման մասին:

Հեղափոխության թանգարանի կոլեկտիվը 1976 թվականից ձեռնամուխ եղավ XXV համագումարին նվիրված «Ամեն ինչ մարդու համար» խորագիրը կրող շարժական ցուցահանդեսի կազմակերպմանը, որը ջերմ ընդունելություն գտավ մեր հանրապետության հասարակության կողմից: Այն ցույց է տալիս սովետական ժողովրդի նվաճումներն ու հաջողությունները XXIV—XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում: Հեղափոխության թանգարանը վերջին տարում կազմակերպել է նաև մի շարք այլ շրջիկ ցուցահանդեսներ՝ նվիրված պրոֆեսիոնալ հեղափոխականներ, մեծ Լենինի զինակիցներ Ս. Կասյանի, Ա. Մյասնիկյանի, Ս. Կիրովի և ուրիշների ծննդյան տարելիցներին:

Ուշագրավ էր ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ծննդյան 70-ամյակին նվիրված ցուցահանդեսը:

Ինչպես կուլտուր-մասսայական շատ այլ հաստատություններ, թանգարանները ևս աշխատավորության քաղաքական-գաղափարական դաստիարակության օջախներ են, հեղափոխական թանգարանը՝ առավել ևս: Այն նպաստում է երիտասարդության հայրենասիրական դաստիարակությանը, համակում հեղափոխական նախնիների լուսավոր գաղափարներով, անցյալի լավագույն ավանդույթները պահպանելու ցանկությամբ:

1976 թվականի ընթացքում Հայաստանի հեղափոխության թանգարան են հաճախել 208.348 մարդ: Կոլեկտիվ այցելություններ են կատարում բանվոր-ծառայողները, կոլտնտեսականները, արտասահմանից և մեր Միության տարբեր վայրերից եկած զբոսաշրջիկները:

Հայաստանի պատմության և հեղափոխության թանգարանների գիտամասսայական բաժիններում համախմբված են բարձրագույն կըրթությամբ բանիմաց աշխատողներ, որոնք բացատրությունները վարում են հայերեն, ռուսե-

րեն, գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն: Այդ բաժինների միջոցով թանգարանում կազմակերպվել են 1.200 ընդհանուր, 80 թեմատիկ դասախոսություններ:

«Հայպետնախագիծ» ինստիտուտի աշխատողների համար 1976 թ. փետրվարին Հեղափոխության թանգարանում կազմակերպվեց զեկուցում «Արդյունաբերության զարգացումը 1976—1980 թթ. մեր հանրապետությունում» թեմայով: Իսկ Շահումյանի շրջանի աշխատավորները հանդիպում ունեցան ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավորներ Ա. Խաչատրյանի և Վ. Իսկանդարյանի հետ:

Թանգարանների գիտամասսայական բաժինը սերտ կապի մեջ է Երևան քաղաքի կուսակցական և կոմերիտական շրջկոմների հետ: Համատեղ կազմակերպվում են քաղխմբակի պարապմունքներ, հանդիպումներ անվանի մարդկանց հետ: Թանգարանն օգնում է դասատուներին՝ ավելի մատչելի դարձնելու ծրագրային նյութը, նպաստում դպրոցականների համակողմանի զարգացմանը, խելացի հանգստի կազմակերպմանը: Այդ նպատակով իսկ ավելի են սերտանում կապերը ուսուցիչների, կոմերիտական և պիոներական կազմակերպությունների հետ: Շատ հաճախ թանգարաններում են հանձնվում կոմերիտական տոմսերը, ընդունվում պիոներական կազմակերպության շարքերը: Այսպես, 1977 թ. փետրվարին կոմերիտմիության Սպանդարյանի շրջկոմի հետ կազմակերպվեց կոմերիտական տոմսերի հանձնում շրջանի առաջավոր ձեռնարկությունների երիտասարդ բանվորներին:

Հանդիպումներ են տեղի ունեցել № № 1, 25, 112, 132-րդ դպրոցների աշակերտների հետ: Բաժինը համագործակցում է և Երևանի ԲՈՒՀ-երի, դրանց ՍՄԿԿ պատմության ամբիոնների հետ: 1976 թ. իրենց սեմինար պարապմունքները թանգարանում են անցկացրել Երևանի պետական համալսարանի, պոլիտեխնիկական, մանկավարժական, գեղարվեստաթատերական, ֆիզկուլտուրայի ինստիտուտների ուսանողները:

Մասսայական միջոցառումներում մեծ տեղ է հատկացված ռազմաշեֆական աշխատանքներին: Կազմակերպվել են սահմանապահների, զինակոչիկների հանդիպումներ պատերազմի վետերանների, անվանի մարդկանց հետ:

Հայաստանի պատմության և հեղափոխության թանգարաններն ակտիվ մասնակցեցին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակին նվիրված, ինչպես և «Վրաստանը, Ադրբեջանը և Հայաստանն այսօր» և այլ ստուգատեսների, ուր հատուկ ստենդների միջոցով լուսաբանված են իններորդ հնգամյակի արդյունքները և նշված 1976—1980 թթ. ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունները:

Օրեցօր մեծանում է այցելուների թիվը: Բովանդակալից է տպավորությունների գիրքը, որտեղ ամփոփված են բազմահազար այցելուների շնորհակալական խոսքերը՝ ուղղված այն երախտավորներին, ովքեր պայքարել են հանուն սոցիալիստական հասարակարգի կառուցման, հանուն սովետական իշխանության հաղթանակի:

«...Միայն մարդկային ամբողջ զարգացմամբ ստեղծված կուլտուրան ճշգրիտ գիտենալով, միայն նրա վերամշակմամբ կարելի է կառուցել պրոլետարական կուլտուրա»— գրել է Վ. Ի. Լենինը: Թանգարանները ևս կոչված են լայնորեն ցուցադրելու մեր կուլտուրայի պատմական հարստությունները, դրանով իսկ օգնելով լենինյան այս պատվիրանի կատարմանը:

Սակայն, տեղ չլինելու պատճառով, դեռևս ցուցադրվում է թանգարանի ֆոնդերում գտնըվող նյութերի շատ փոքր մասը: Մինչդեռ թանգարանի հարստությունները պետք է լայնորեն ցուցադրվեն, դրանով իսկ օգնելով աշխատավորներին՝ լավ հասկանալու անցյալն ու ըմբռնելու ներկան, գնահատելու նախորդ սերունդների կատարածը և ճշգրիտ որոշելու իր անելիքներն ու նպատակները:

# ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ

Խ. Ա. ԱՎԱԳՅԱՆ

ՀԱՐՈՒՍՏ ՈՒ ՀԵՏԱՔՐԱՔՐԱԿԱՆ է այսօրվա գյուղի առօրյան: Այն բոլոր թելերով կապված է ժամանակի խնդիրների հետ, իր ծանրակշիռ լուման ունի նոր կյանքի արարման գործում: Բազմապիսի, հրատապ են նրան հուզող պրոբլեմները՝ միջտնտեսային կոոպերացման և արդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության առավել մասնագիտացում ու համակենտրոնացում, գյուղական բնակավայրերի հեռանկարների ճշգրտում, առաջավոր փորձի ուսումնասիրում ու տարածում, գյուղատնտեսական ընթացիկ աշխատանքների առավել օպերատիվ ու արդյունավետ կազմակերպում, հողի աշխատավորի կենցաղում, հոգեբանության մեջ կատարվող փոփոխություններ...

Սովետական Հայաստանի աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին կուսակցության ու կառավարության որոշումը մեր հանրապետությունում ռոոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին:

Այս ամենը լայն ու անպարփակ ասպարեզ է բացում լրագրողի համար, որից պահանջվում է բանիմացություն, պատասխանատվություն և, անշուշտ, ստեղծագործական մոտեցում, հմուտ գրիչ:

Հայ գրողներից ու փորձառու լրագրողներից շատերը լավ գիտեն գյուղը և կարող են խորատես հայացքով, ուրույն և հրապուրիչ ձևով արծարծել այդ բնագավառին վերաբերող թեմաները: Բայց լինում է, ինչպես ասում են՝ դեպքից-դեպք: Ասպարեզը, իբրև կանոն, թողնվում է «ամեն ինչի մասին գրող» մարդկանց, որոնց բանիմացությունը մակերեսային է, գրածը՝ զերծ ինքնատիպությունից, ուշագրավ հարցադրումներից: Եթե հավատաս դրանց հեղինակներին, պիտի կարծես, թե այսօր գյուղում չկա և ոչ մի լուրջ պրոբլեմ, դժվարություն, մնում է միայն վերացնել «առանձին», «մասնակի» թերությունները և ամեն ինչ հրաշալի կլինի: Մինչդեռ կուսակցության XXV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մենք ռեալիստներ ենք: Մենք քաջ գիտենք, որ գյուղատնտեսական արտադրության որակական վերափոխումը պահանջում է ժամանակ, աշխատանք, հսկայական ներդրումներ: Առավել ևս, որ մի շարք, հիմնականում օբյեկտիվ-պատմական բնույթի պատճառներով մենք միայն վերջին ժամանակներս ենք սկսել մեծ միջոցներ հատկացնել այդ ճյուղի համար» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 73):

Բնական է, այդ ամենն իր արտացոլումը պետք է գտնի շրջանային մամուլի էջերում:

Գյուղի մասին առհասարակ քիչ չի գրվում: Բայց նեղ, սահմանափակ է հրապարակվող նյութերի թեմատիկան, շոշափվող հարցերի շրջանակը: Խիստ սակավ են պրոբլեմատիկ, ընդհանրացնող հոդվածներն ու ակնարկները և բովանդակալից այլ հրապարակումները: Հանդիպում ենք և ինֆորմատիվ-նկարագրական շատ նյութերի, որոնց տեսակն ու ժանրը հաճախ դժվար է որոշել: Բանը, իհարկե, ժանրի անորոշությունը չէ, այլ բովանդակության աղքատությունը, մատուցման ձանձրալի ձևը, պարզունակ ոճն ու լեզուն, որ վանում են ընթերցողին:

Չնայած բազմիցս հրապարակավ ձաղկվել են մամուլում սպրդած լեզվական արատները, սակայն տակավին անտեսվում է մայրենի լեզվի անսպառ հարստությունը, ոտնահարվում են լեզվաոճական կանոնները, տեղ են գտնում

գործ, ոչինչ չասող արտահայտություններն ու սին գեղեցկախոսությունը:

Ահա, մեր ձեռքի տակ են շրջանային մի քանի թերթերի 1977 թվականի ամառային ամիսների համարները: Փնտրում ենք գյուղի առօրյան, բերքահավաքի ընթացքը լուսաբանող նյութեր:

«Լուսարձակ»-ում (Սպիտակ) Ե. Օհանյանն իր Գյուղը և նրա մարդիկ ակնարկատիպ հոդվածն (2-ը հուլիսի 1977 թ) սկսում է շատ հեռվից «Ղարսը թողած բոցե կրակների մեջ, շատերի հետ գաղթի ճամփան բռնեց նաև Նազար Ղազարյանը, ապաստան գտավ Գյումրիում»:

Այնուհետև հեղինակը մոտենում է մեր օրերին՝ «Շենացել են այգիներն ու դաշտերը», «աշխատում են նվիրումով, պայքարում վաղվա գալիքի վրա», «մեզ ռուսը փրկեց... կենսախինդ ու լիաթոք ասում է կոլտնտեսության հովիվ Ղևոնդ Ղևոնդյանը և պատմում իր տեսածի ու կատարածի մասին»: Իհարկե, նրա «տեսածի ու կատարածի» մասին էլ մենք ոչինչ չենք իմանում, բացի այն, որ «1929 թվականից... հովիվ եմ»: Նույն ձևով էլ ակնարկում պարզապես հայտարարվում են ուրիշ կոլտնտեսականների «գործերը», իրար կողքի շարվում անուններ ու զբաղմունքներ և այդ ամենը եզրափակվում է մի զորեղ ու սպառիչ բնորոշումով. «Նրանց աչքերում արև կա...»:

Ա՜յ քեզ ակնարկ:

Նույն թերթում (14 հուլիսի) Ոտքերը շաղոտ են ռեպորտաժում Ս. Մանուկյանը հրճվալից հավաստիացնում է, թե աղջիկներն անմիջապես հավաքում են տղամարդկանց քաղած խոտը, իսկ վարորդները «ջանում են օրվա հավաքածը անմիջապես տեղափոխել»:

Իսկ ընթերցողը շվարում է. եթե սովորական խոտի մասին է խոսքը և սիլոսի կամ սենաժի համար չեն տեղափոխում (այդ մասին ոչ մի ակնարկ), հապա ինչո՞ւ են ջուրը թափում հնձվորների ողջ աշխատանքը. չէ՞ որ գերանդու բերանից թաց-թաց հավաքված ու անմիջապես տեղափոխված խոտը կփտի, կփչանա...

Նույն թերթի հուլիսի 19-ի համարում զետեղված է Խոտն առատ է ռեպորտաժը: Այստեղ էլ առատ են այսպիսի գոհարները. «Աշխատանքային փառքով առլեցուն մարդը», «Քանի գնում հնձի կամպանիան լարված բնույթ է է կրում», «դաշտ են դուրս եկել հոբելյանական տարվա համար (!) լիարժեք անասնակեր կուտակելու վճռականությամբ», «մարդիկ հոգնաբեկ, օրվա աշխատանքով փառաբանված (!) տուն են վերադառնում»:

«Փարոս»-ի (Ստեփանավան) հուլիսի 30-ի համարում կարդում ենք. «Դոհար շաղ է իջել դաշտերին ու արևագալի տաք քնքշություն: Վաղ արթնացած հովը թողնում է ծառերի կանաչահանդերձ սաղարթներն (!) ու սուրում հասկավորված արտի միջով: Իսկ դիմացի լեռան գագաթի թուխպերը դեռ նոր են հրաժեշտ տալիս իրենց գիշերային օթևանին ու արևի առաջին ճառագայթների հետ ձգվում դեպի երկինք...»:

Ի՞նչ է այս. «Գյուղի առավոտը» թեմայով աշակերտական անհաջող շարադրությո՞ւն: Ո՜չ: Պարզվում է, ակնարկ է՝ նվիրված... խոտալյուր պատրաստող ագրեգատի աշխատանքին...

Իսկ եթե ճիշտն ասենք՝ թղթակցի (Ս. Սիմոնյան) «գրական» նկրտումների անզուսպ, անհարկի զեղում:

Ընթերցողին շատ չի ուրախացնում նաև «Շիրակ» թերթը (Ախուրյան): Այստեղ, օրինակ, կարող են Կուտակենք մեկուկես տարվա կեր ընդհանուր խորագրի ճիշտ ներքևում դնել Երկու տարվա անասնակեր կուտակելու համար վերնագիրը, Հայ գյուղը և կոոպերացումը շարքից տպագրել մի նյութ, որտեղ չես գտնի այդ լուրջ հարցի էությանը վերաբերող որևէ ուշագրավ դիտարկում կամ խոհ:

Ճոռոմաբանելու էքստազով համակված, չափի զգացումը կորցրած որոշ հեղինակներ «արտահայտվելու» ազատ ասպարեզ են գտնում նաև «Դիլիջան» թերթի էջերում: Տաք օրեր Թեղուտում (2-ը հուլիսի, Մ. Անանյան) հրապարակման մեջ կարդում ենք. «Եկել է այն վճռական շրջանը, երբ հողագործի արևահար ճակատից ընկնող քրտինքի յուրաքանչյուր կաթիլ պետք է դառնա անասնակերի կիլոգրամներ, տոննաներ, ապա նաև՝ գյուղատնտեսական մթերքների առատություն»:

Շատ չէ՞ «յուրաքանչյուր կաթիլի» համար:

Նույն թերթում (16 հուլիսի) հոդվածագիրը գրում է «Արյունը սրտիս մեջ թունդ է առնում, խլրտում է հոգիս: Հին-հին հուշեր են ծիլ տալիս՝ նարգիզի ու մեխակի բուրմունքով, հովտաշուշանի ճերմակ մաքրությամբ...»: Եվ կըթվոր կանանց, անասնապահների մասին հենց այնպես, «ոտքի վրա» մի քիչ խոսելուց հետո վերստին անցնում է լիրիկային. «Թանձրանում է մութը, թանձրանում են տպավորություններս: Այն ամենը, ինչ կես ժամ առաջ տեսա ու զգացի, հուշ են դառնում ու խառնվում հին-հին հուշերիս: Այդ հուշերը նարգիզի բուրմունք ունեն, հովտաշուշանի ճերմակ մաքրություն, որոնք միշտ կպատմեն հարազատ սարերի, հարազատ մարդկանց մասին»:

Իներտ գեղեցկախոսությունը կցվում է ուզածդ նյութին: Օրինակ, ասենք, աշակերտական բրիգադը մասնակցում է կարտոֆիլի բերքահավաքին, իսկ Ս. Հովսեփյանը դրան նվիրված իր ինֆորմացիան հարկ է համարում զարդարել այսպիսի տողերով. «Առավոտ է: Բնության անտես վրձինը աշխարհի վրա դանդաղ աշուն է նկարում: Պախրասարի գագաթից արևը հանդարտ դեպի դաշտերն է իջնում, ու բաց դաշտերում մեկից բացվում է աշնան օրը» (7-ը հոկտեմբերի):

Նյութը «գեղեցկացնելու» նույն մարմաջով «Վերելք» (Եղեգնաձոր) թերթի հուլիսի 14-ի համարում Ս. Կարապետյանը բարբառում է. «Մի երկու օրից օջախները կվառվեն յայլաղում, ծուխը կկախվի երկնքից՝ պառավ կնոջ սպիտակ ծամթելի նման (!): Կյանքը կեռա այստեղ, ուր երկինքը վեր է թռել սարերի բարձրության ահից և որտեղ սարերից եկած ձնհալի ջրերը մամռագորգեր են հյուսում քարափներն ի վեր»:

Իսկ թերթի հուլիսի 23-ի համարում Հայրենի գյուղիս մեկ օրը ակնարկում Ն. Մարտիրոսյանը խորախորհուրդ նկատում է. «...Այդ խաչքարից թե ներքև նայես, կանաչ ծառերի մեջ կտեսնես 150 առանձնատուն: Գուցե և ավելին կլիներ՝ քառակին, բայց նրանք ցրվել են մեր լայնարձակ երկրով մեկ և իրենց շրջապատում պահպանում են քարագլխեցու անցյալի ճակատագիրը, գեղեցիկ ներկան, գալիք ապագան»:

Դե՜ եկ ու կռահիր, թե ովքե՞ր և ինչո՞ւ են ցրվել և ինչպե՞ս պիտի իրենց շրջապատում պահպանեն այդքան բան...

Նույն ակնարկում հնձվորներից մեկը «մտածում է, թե իմ կտրած ծաղիկների վրա մեղուն իր ամռան երգով է եկել, ու ես կտրում եմ նրա երգազրույցը»:

Կարծում ենք՝ սա ոչ թե հնձվորի, այլ հեղինակի պարապ մտածումն է:

Նրանց աշխատանքային օրը... մայրամուտից հետո փոքրիկ թղթակցության մեջ (26 հուլիսի) հանդիպում ենք այսպիսի ռեբուսի. «Վաղուց ավարտվել է մայրամուտը: Մանուշակաթույր մշուշ է լցվել կորնգանի դաշտը, խառնվել է վարդագույն ծաղիկներին: Երկու կոմբայններ հեռվում (!) շարունակում են ձևել այդ գեղեցիկ տեսարանը (!): Սակայն հոգ չէ,— մի ուրիշ տեղ (!) պատկերը ավելի կհարստանա: Դա ավելի անհրաժեշտ է»:

Ընթերցողից նախապես ներողություն խնդրելով, ուզում ենք ամբողջովին մեջբերել նաև մի «զուտ» ստեղծագործություն, որ տպագրված է «Վերելք» թերթի օգոստոսի 27-ի համարում, Մեր դպրոցականների ստեղծագործություններից ընդհանուր խորագրի տակ:

«Արևը փայլում էր պայծառ երկնքում: Շոգը ինձ ստիպեց նստել մի ծառի տակ և մտքով թերթել կյանքից գողտրիկ էջերը: Հանկարծ իմ ուշադրությունը գրավեց մի հետաքրքիր տեսարան: Ծառի ճյուղերի արանքում հսկա սարդոստայն կար: Որտեղից որտեղ սարդոստայնի մեջ հայտնվեց մի ճանճ: Մինչ նա իզուր ճիգ էր թափում ազատվելու թակարդից, վրա հասավ սարդը, որը, կարծես, հենց դրան էր սպասում: Հարձակվեց որսի վրա հանգիստ, սառնարյուն: Չէր շտապում: Դանդաղ ուսումնասիրում էր իր զոհին: Նա հաստատ գիտեր, որ նման մենամարտերը միշտ էլ ավարտվում են իր հաղթանակով: Մինչդեռ ճանճը թպրտում էր անզորությունից: Անհավասար պայքարը կարճ տևեց: Ճանճի համար ամեն ջանք ապարդյուն անցավ: Սարդը վարպետորեն քամեց նրա մի կաթ արյունը (!), հեռացավ՝ զոհի իր «բախտից»: Ճանճն անշարժացավ թակարդում: Երկնքում փայլում էր արևը, իսկ սարդը շարունակում էր հյուսել իր ցանցը՝ անհոգ, անտարբեր, բնության զարմանահրաշ օրենքներին անտեղյակ»:

Եթե սրա հեղինակը մեծահասակ լիներ, կարելի կլիներ խոսել բազմանշանակ անմտության մասին, բայց քանի որ դպրոցական է, մեր խոսքը պիտի ուղղել թերթի խմբագրությանը. շա՞տ «հետաքրքիր տեսարան է սարդի կողմից ճանճի «մի կաթ արյունը» քամելը, և արդյոք «իզուր ճիգ» չի՞ «թափվում» դպրոցականների նման ստեղծագործությունները խրախուսելու նպատակով:

Երբեմն էլ այս ու այն կարևոր հարցը, խնդիրը շոշափող թղթակցությանն են կցվում նման շատախոսություններ, որոնք շատ բան են փչացնում:

Այսպես, «Աշխատանք» (Ամասիա) թերթի օգոստոսի 6-ի համարում զետեղված Սկսվում է աշխատանքային օրը ռեպորտաժում արծարծվում է ցեղական կովերի կաթնատվության հարցը:

Հեղինակի՝ «Ցեղական կովերի կաթնատվությունից գո՞հ եք» հարցումին կթվորուհիներից մեկը խուսափողական պատասխան է տալիս. «առայժմ ոչ, այսինքն՝ առանձին կովեր կան... Բայց ընդհանուր առմամբ յուրաքանչյուր կովի կաթնատվությունն սպասվածից դեռ ցածր է»... Իսկ մեկ ուրիշը՝ Յուրիկը, «ավելի մանրամասն է բացատրում» նրա և ուրիշների կարծիքը. «Այսօրվա արդյունքներից կթվորուհիները գոհ չեն, զուցե նրանք իրավացի են, որ մեր պայմաններին ընտելանալուց հետո միայն ցեղական անասունների կաթնատվությունը կարող է բարձրանալ: Կապրենք, կտեսնենք»:

Այսպես է դիտարկվում պրոբլեմը: Իսկ փոխարենը՝ «Հիմա աշխատանքային օրը շատ վաղ է սկսվում, որովհետև ամռանը, վաղ առավոտյան հովին, հաճելի է դաշտում աշխատելը: Մարդիկ ձգտում են մինչև ցերեկվա շոգը գործի մեծ մասն ավարտել: Չնայած արևի կիզիչ ճա-

ռազայթների տակ գործը կանգ չի առնում, բայց ընդմիջումներ հաճախ են լինում, դե, իհարկե, դրանք էլ պետք են: Ճաշելը, հանգստանալը, գործիքները, մեխանիզմները կարգավորելը նույնպես անհրաժեշտ են» և այլն, և այլն...

Իսկ «Արարատ» (Արարատ) թերթը կարողանում է նման ձևով «ինքնատիպ» դարձնել անգամ 50 հազար տոննա խաղող արտադրելու՝ շրջանի աշխատավորությանստանձնած պարտավորության կատարման ընթացքին նվիրված խորհրդակցության ինֆորմացիան (15 սեպտեմբերի):

Թերթը հավաստում է, որ շրջկոմում հրավիրված խորհրդակցության խնդիրն էր վերջին անգամ մանրակրկիտ ստուգել և ճշտել «բերքահավաքի հետ կապված բոլոր հարցերը»: Սակայն ինֆորմացիան մեզ ներկայացնում է «բոլոր հարցերից» միայն մեկը. «Մոտավոր հաշվումները ցույց են տալիս, որ եթե այգեկութի ժամանակ յուրաքանչյուր վազի վրա թողնվի, միջին հաշվով, նույնիսկ մեկ ողկույզ, ապա շրջանի 3.500 հա խաղողի այգիների հաշվով կորուստը կկազմի ոչ պակաս քան... 1.700 տոննա»:

Այս ինքնահաբեկումից հետո արվում է այսպիսի ընդհանրացում. «Մի խոսքով՝ սեղմ ժամկետ, որակ, խանդավառություն, պարտականություն (!), պատասխանատվություն և ինքնապատասխանատվություն (!) — ահա սրանք են այն անհրաժեշտ գումարելիները, որոնց առկայության դեպքում արդյունքում կարելի է ակընկալել բաղձալի գումարը»:

Եվ եզրափակվում է այսպես. «Կանցնի 2—3 շաբաթ ևս՝ կրքերը կհանդարտվեն (!)... զուշակություններն աստիճանաբար տեղի կտան ռեալությանը, և լիահույս ենք, որ առայժմ դեռևս մշուշով պատված 50.000 թիվը վերջապես կազատվի անորոշության կապանքներից...»:

Իրոք որ մշուշոտ է ու անորոշ...

Բայց ինչի՞ց է այս ամենը:

Ի թիվս այլ պատճառների՝ նաև քննադատության և օգնության պակասից: Մեր թերթերի էջերում հազվադեպ են հանդես գալիս գյուղատնտեսության բնագավառի ղեկավարները, անվանի գիտնականները, իսկ արտադրության ոլորտում աշխատող մասնագետների, տնտեսությունների ղեկավարների գրած ամեն մի տողից զգում ես խմբագրության աշխատակցի «ոճը», լեզվամտածողությունը:

Ո՞ւմ են պետք այդ տիպի հարմարեցվածկոկված հրապարակումները: Դրանք ջրի երկու կաթիլի պես նման են իրար:

Մամուլը լուրջ ուժ է, կուսակցության հատու զենքն ու ակտիվ օգնականը նաև գյուղատընտեսության նոր վերելքի համար ծավալվող համաժողովրդական պայքարում: Բայց այդ զենքից պետք է կարողանալ օգտվել: Ճապաղ արտահայտություններով լի նյութերը, իմաստազուրկ ճամարտակությունները, շռայլ գովեստները, մտքի ու գրչի պարապ մարզանքները վնասում են գործին և գցում ո՛չ միայն տվյալ հեղինակի կամ խմբագրության, այլև առհասարակ մամուլի հեղինակությունը:

Սին գեղեցկախոսության դեմ պետք է պայքարել ամենայն վճռականությամբ:




Адрес редакции: 375033. Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 01275 Պատվեր 58 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.900 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 27/I-1978 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ — Մեծ Հոկտեմբերը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հոկտեմբերը մարդկության նոր առավոտն է: *ԵՊՀ հրատ., 1977:*

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ — Անդրկովկասի բանվոր դասակարգը և բոլշևիկյան կազմակերպությունները առաջին համաշխարհային պատերազմի տարիներին *(1914—1917 թթ. փետրվար): ԵՊՀ հրատ., 1977:*

Լ. ԽՈՒՐՇՈՒԴՅԱՆ — Սովետական Ռուսաստանը և հայկական հարցը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ — Ինդուստրիալ Հայաստան: *«Հայաստան» հրատ., 1977:*

Սովետական պետության և իրավունքի հիմունքներ: *Ե., «Լույս» հրատ., 1977:*

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ — «Մեղու» հանդեսը արևմտահայ լուսավորական-դեմոկրատական շարժման մեջ: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Ա. ՄԱՆԱՍՅԱՆ — Գիտություն և աշխատանք: *Ե., ԳԱ հրատ., 1977:*

Ս. ՌԱՇԻԴՅԱՆ — Ակնարկներ աշակերտների կոմունիստական դաստիարակության մասին: *Ե., «Լույս» հրատ., 1977:*

ՀՐ. ԱՃԱՌՅԱՆ — Հայերեն արմատական բառարան: *Հ. Գ: Լ—Ջ: ԵՊՀ հրատ., 1977:*

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ — Լեգենդար պլացդարմ: *«Հայաստան» հրատ., 1977:*

**Владимир Ильич Ленин.** Биографическая хроника. 1870—1924. Т. 8. Ноябрь 1919 — июнь 1920. М., Политиздат, 1977.

Б. Пономарев — **Избранное.** Речи и статьи. М., Политиздат, 1977.

**Проблемы международной политики КПСС и мирового коммунистического движения.** М., Политиздат, 1977.

**Во имя мира на земле.** Советский Союз в борьбе за мир и сотрудничество народов. Книга вторая. 1975—1977 гг. М., Политиздат, 1977.

**Социалистический образ жизни и вопросы идеологической работы.** По материалам Всесоюзной научно-практической конференции в Киеве (18—20 мая 1977 г.). М., Политиздат, 1977.

Т. Усубалиев — **Дружба народов — наше бесценное завоевание.** М., Политиздат, 1977.

В. Романюк — **Соревнование и план.** (Встречное планирование на предприятиях). М., Политиздат, 1977.

В. Иванов — **Центры партийной пропаганды.** М., Политиздат 1977.

**Решения партии и правительства по хозяйственным вопросам.** Сборник документов. Т. 2. Ноябрь 1975 г. — июнь 1977 г. М., Политиздат, 1977.

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿԱՌԱՎԱՐՈՒՄ Է ՖԻԶԻՈԼՈԳԻԱԿԱՆ ՊՐՈՑԵՍՆԵՐԸ

Միջազգային «Էլեկտրո—77» ցուցահանդեսում ներկայացվել է սովետական մասնագետների ստեղծած և առայժմ նմանը չունեցող «Էլեկտրատեխնիկա—77» բլոկամոդուլային էլեկտրոնային սիստեմը։ Այն հավաքում է ինֆորմացիա և ստացված տեղեկությունների հիման վրա ակնթարթորեն ընդունում միակ ճշգրիտ լուծումն ու իրացնում այն։

Սիստեմը նախատեսված է բժշկության մեջ՝ ախտաբանության, վիրաբուժության, վերակենդանացման, վերականգնման բաժանմունքներում օգտագործելու և գիտահետազոտական աշխատանքների համար։

«Էլեկտրատեխնիկա—77»-ում ներկայացված արյունազտիչ (հեմոսորբցիա կատարող) տարբերակը, հավաքելով անհրաժեշտ տեղեկություններ արյան շարժման և ձևափոխական չափերի մասին, ապահովում է ֆիզիոլոգիական պրոցեսների ավտոմատ կառավարումը, կարգավորում կալիումի, կալցիումի և մագնիումի խտությունն արյան մեջ, ինչպես նաև զարկերակային ճնշումը, կատարում մի շարք այլ գործողություններ։

## ԸՄՊԵԼԻՔ՝ ԹԱՆԻՑ

Թարմ սերուցքից կարագ հարելիս միշտ զատվում է թան։ Էստոնացի դիետաբանները թարմ թանին ավելացնում են մի փոքր յուղազերծ կաթ, խառնուրդը պաստերիզացնում, սառեցնում, ապա թթվեցնում են կաթնաթթվային մանրէներով։ Ստացվում է հաճելի թարմացուցիչ և միաժամանակ բուժիչ ըմպելիք երեխաների և մեծահասակների համար։ Թթվեցրած թանը պարունակում է մարդու օրգանիզմին անհրաժեշտ բոլոր ամինաթթուները և լեցիտին արժեքավոր նյութը, որը խթանում է մանկան օրգանիզմի աճն ու զարգացումը, նպաստում արյան մեջ խոլեստերինի պարունակության կանոնավորմանը և կասեցնում աղերի կուտակումը արյունատար անոթների պատերին։

## ԽԱՂՈՂԱՀԱՎԱՔ ՄԵՔԵՆԱ

Խաղողի բոլոր սորտերը բաժանվում են երկու տեսակի. սեղանի՝ գեղեցիկ ողկույզներով, և տեխնիկական, որից ստանում են հյութեր, գինիներ։Վերջինիս բերքահավաքն անհրաժեշտ է կատարել ճիշտ ժամկետում՝ ոչ ուշ և ոչ շուտ, կարճ ժամանակամիջոցում. դրանով է մեծապես պայմանավորված արտադրանքի որակը։ Սեզոնային նման սեղմ ժամկետ պահանջող գործի համար աշխատող ձեռք գտնելը միշտ դժվար է։

Խաղողագործներին օգնության կհասնի Նովոչերկասկ քաղաքի Յա. Ի. Պոտապենկոյի անվան համառուսաստանյան խաղողագործական և գինեգործական գիտահետազոտական ինստիտուտի փորձարարանախագծային բյուրոյի ստեղծած «Դոն—1» մեքենան։

Ինքնագնաց սայլակավոր շասսիի վրա սարքավորված է հարմարանք, որը քաղում է խաղողի ողկույզները, մաքրում փոշուց և փոխադրում հատուկ բունկեր։ Մեքենայի միջին արտադրողականությունը ժամում 0,51 հեկտար է։

## ՊՈԼԻԳՐԱՖԻԱԿԱՆ ՆՈՐ ՄԵՔԵՆԱ

Յարոսլավլի պոլիգրաֆ կոմբինատում առաջին արտադրանքը տվեց հայրենական ամենախոշոր տպագրական ագրեգատը՝ օֆսեթ ռոտացիոն ՊՈԿ—94 մեքենան։ Այն ժամում կարող է թողարկել 25 հազար տպագրված թերթ— նախկին մեքենաներից երկու անգամ ավելի։ Ռիբինսկի պոլիգրաֆիական մեքենաների գործարանում ստեղծված նոր ագրեգատի առավելություններից է նաև արտադրանքի բարձր որակը. այն միաժամանակ կարող է տպագրել թղթի երկու գլանափաթեթների վրա։